ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԾԲ.

# ՀԱՅԵՐԷՆ

ԵՒ

# ԴՐԱՑԻ ԼԵԶՈՒՆԵՐԸ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1907.

# ՀԱՅԵՐԷՆ

ԵՒ

# ԴՐԱՑԻ ԼԵԶՈՒՆԵՐԸ

ԳՐՈՖ. ԴՈԿՏ. ՀՈԼԳԷՐ ՊԵԴԵՐՍԸՆԻ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԹՈՎՄԱՍ ԿԷՏԻԿԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1907.

# ԱԶԴ

Պրոֆ. Հոլգէր Պեդերսըն Հայերէնագէտին այս “խորաքնին գործը[1]„, ինչպէս կ'անուանէ զայս Հ. Յ. Տաշեան (տես ՀԱ. 1906, էջ 289), Նախապէս լոյս տեսաւ “Հանդէս Ամսօրեայ„ ուսումնաթերթին մէջ[2], որմէ ալ առնլով կը հրատարակենք իբրեւ “Ազգային Մատենադարանի„ ԾԲ հատոր:

Այս ուսումնասիրութիւնը Հայագէտին առաջին աշխատասիրութիւնը չէ, որ “Ազգ. Մատենադարանի„ հատորներուն մէջ կ'առնուի: Արդէն քանի մը տարի յառաջ անոր մէկ կարեւոր երկն[3] ալ այս կարգին մէջ մտած էր. եւ ո՛չ ալ վերջինը՝ վասն զի Հայերէնագէտին նոր երկասիրութիւններէն մէկուն թարգմանութիւնն[4] ալ ընդ մամլով է:

Մասնագիտօրէն գրուած հատորիկս՝ մեր ազգին մէջ լեզուաքննութեամբ հետաքրքրուողներուն աւելի

---

[1] Ուսումնասիրութեանս տիտղոսն է. **Armenisch und die Nachbarsprachen** եւ լոյս տեսած է KZ. մասնագիտական թերթին XXXIX հատորին մէջ, էջ 334—484:

[2] “Հանդէս Ամսօրեայ„ 1905, էջ 1, 37, 150, 276, 399.— 1906, էջ 20, 68, 105, 130, 193, 235, 279:

[3] “Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան„. թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան, 1904. Ազգ. Մատեն. ԽԷ: — Տես նաեւ Հայերէնագէտիս կենսագրութեան մասն եւ հայերէն աշխարհաբար գրած յօդուածը — ՀԱ. 1903, Թ. 5:

[4] Les pronoms démonstratifs de l'ancien arménien — “Հին հայերէնի ցուցական դերանունները„. տ. ՀԱ. 1906, էջ 289, 339, 368 եւ շարունակութիւնը:

դիւրամատչելի ընելու համար՝ կարելին ըրինք, աւելցընելով բառերու, նիւթերու, համառօտագրութեանց եւն ցանկերը, նշանագրերու եւ մասնագիտական բացատրութեանց մեկնութիւնները եւն: Հոս անկեղծ ու մեծաւ շնորհակալութեամբ կը յիշենք մեր բարեկամ հայերէնագէտ Հեղինակին այն աջակցութիւնն եւ խնամքը, որ ցոյց տուաւ գործոյս հայ. թարգմանութեան միջոցին՝ նորանոր ու շահեկան ծանօթութեանց եւ մասերու յաւելմամբը ճոխացընելով, փոխելով ու փոփոխելով այլեւայլ մասերը. այնպէս որ երկասիրութեանս գերմաներէն բուն բնագիրը կրնայ ոչ-ամբողջական նկատուիլ եւ կամ հայերէն թարգմանութիւնը գերմ. բնագրին սրբագրուած հրատարակութիւնն ըսուիլ: Կը ցաւինք միայն որ աղբերաց ցանկն ալ (bibliographie) չկրցանք կազմել աննպաստ պարագաներու եւ տեղւոյ դժուարութեան պատճառաւ:

Կ. Պոլիս, 28/Գ. 1907:

ԹԱՐԳՄԱՆԻՉԸ

# ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆՔ

ՀԱ. — «Հանդէս Ամսօրեայ» ուսումնաթերթ, Վիեննա։

Հայ. քեր. — Տե՛ս Arm. Gram.

**Arm. Gram.** — **Hübschmann**, Armenische Grammatik, Leipzig, I. Teil 1895. II. Teil 1897.

BB. — Beiträge zur Kunde der indogermanischen Sprachen, herausgegeben von Bezzenberger und Prellwitz. Göttingen.

PBr. B. — Beiträge zur Geschichte der deutschen Sprache und Literatur. Herausgegeben von H. Paul, W. Braune (und E. Sievers). Halle.

ff. — Տե՛ս եւ յաջորդ էջերը։

IF. — Indogermanische Forschungen, Zeitschrift für indogermanische Sprach- und Altertumskunde, herausgegeben von K. Brugmann und W. Streitberg. Strassburg.

IF: Anz. — Anzeiger für indogermanische Sprach- und Altertumskunde, Beiblatt zu den indogermanischen Forschungen. Herausgegeben von W. Streitberg. Strassburg.

KZ. — Zeitschrift für vergleichende Sprachforschung auf dem Gebiete der indogermanischen Sprachen, begründet von A. Kuhn. Gütersloh.

MSL. — Mémoires de la Société de linguistique de Paris.

WZKM. — Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes. Wien.

ZDMG. — Zeitschrift der deutschen Morgenländischen Gesellschaft. Leipzig.

Ը

| | |
|---|---|
| աբխազ. | աբխազերէն |
| ալբ. | ալբաներէն |
| անգղ. | անգղիերէն |
| ասոր. | ասորերէն |
| ասուր. | ասուրերէն |
| աւեստ. | աւեստական լեզու |
| բուլղ. | բուլղարերէն |
| գաղ. | գաղղիերէն |
| գերմ. | գերմաներէն |
| գոթ. | գոթական լեզու |
| դան. | դանիերէն |
| թաթար. | թաթարերէն |
| թրք. | թրքերէն |
| իտալ. | իտալերէն |
| իր. | իրերէն |
| իրլ. | իրլանդերէն |
| լակ. | լակերէն |
| լատ. | լատիներէն |
| լեհ. | լեհերէն |
| լետտ. | լետտերէն |
| լիտ. | լիտաւերէն |
| կալմ. | կալմիւքերէն |
| կըմր. | կըմրերէն |
| կիրգիզ. | կիրգիզերէն |
| կիւրին. | կիւրիներէն |
| կոյբալ. | կոյբալերէն |
| հ. | հին |
| հայ. | հայերէն |
| հանգղ. | հին անգղիերէն |
| հբգ. | հին բարձր գերմաներէն |
| հբուլղ. | հին բուլղարերէն |
| հիւրկան. | հիւրկաներէն |
| հհիւս. | հին հիւսիսական կամ սկանդինաւեան լեզու |
| հհնդկ. | հին հնդկերէն, սանսկրիտ լեզու |
| հնդեւր. | հնդեւրոպական, հնդիկ-եւրոպական լեզու |
| հնդկ. | հնդկերէն |
| հնորվեգ. | հին նորվեգերէն |
| հշուեդ. | հին շուեդերէն |
| հպ. | հին պարսկերէն |
| հսլ. | հին սլաւերէն |

| | |
|---|---|
| մաճ. | մաճառերէն |
| մանջ. | մանջուերէն |
| մբգ. | միջին բարձր գերմաներէն |
| մոնգ. | մոնգոլերէն |
| յակ. | յակուտերէն |
| յուն. | յունարէն |
| նպ. | նոր պարսկերէն |
| նորվգ. | նորվեգերէն |
| շուեդ. | շուեդերէն |
| ոսետ. | ոսետերէն |
| ոսկ. | ոսկերէն |
| ուտ. | Ուտեաց գաւառական |
| ումբր. | ումբրերէն |
| չեխ. | չեխերէն |
| չուվ. | չուվաշերէն |
| պհլ. | պահլաւերէն |
| պր. | պրուշերէն կամ պրուսական լեզու |
| պրսկ. | պարսկերէն |
| ռուս. | ռուսերէն |
| սերբ. | սերբերէն |
| սլ. | սլաւերէն |
| սլով. | սլովեներէն |
| վրաց. | վրացերէն |
| տունգ. | տունգուզերէն |
| փռիւգ. | փռիւգերէն |
| օսմ. | օսմաներէն |
| օրխ. | օրխոններէն կամ օրխոնեան արձանագր. լեզ. |
| ֆինն. | ֆիններէն |
| ֆր. | ֆրանսերէն։ |

# ՁԱՅՆԱԿԱՆ ՆՇԱՆՆԵՐ

ä հմմտ. անգղ. hat
ö հմմտ. ֆր. peur
ə հայ. ը
å հմմտ. անգղ. all

—

ð հմմտ. անգղ. that
þ հմմտ. անգղ. thing
z հայ. զ
ž հայ. ժ
š հայ. շ

γ արդի յուն. γ
x հայ. խ

—

ʒ հայ. արեւել. ձ
ǯ հայ. արեւել. ջ
c հայ. արեւել. ծ
č հայ. արեւել. ճ

—

ŋ հայ. ն ճանճ բառին մէջ

' (կամ ˆ) բաղաձայն գրի մը վրայ՝ նշան փափկահնչիւն (կակուղ, ջանիման) արտասանութեան, զ. օ. š = ռուս. сюда բառին c, k̑ = հայ. արեւմտ. գ գեղին բառին մէջ (՛ ձայնաւոր գրի մը վրայ՝ շեշտի նշան)։

˰ գրի մը տակ՝ նշան անվանկ արտասանութեան, զ. օ. u̯ = անգղ. w, i̯ = հայ. -յ- բառամիջին։

° գրի մը տակ՝ նշան վանկական արտասանութեան։

Ծան. — Զանազան լեզուաց սովորական գրութեան համեմատ գրուած բառերուն մէջ՝ գրերը կրնան ունենալ ուրիշ նշանակութիւն (զ. օ. y իրանեան բառերուն մէջ = -յ-, թրքերէն բառերուն մէջ = ը կամ նման ձայն մը)։

# ՈՒՂՂԵԼԻՔ

---

Էջ 217, *տող* 8 Նularo *կարդա՛* Cularo.

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԵՐԷՆ
ԵՒ
## ԳՐԱՅԻ ԼԵԶՈՒՆԵՐԸ

*Ներկայ ուսումնասիրութեանս մէջ կը հանդիպինք քանի մը ձայնական մասնագիտական բացատրութեանց, որոնք մեկնութեան մը պէտք ունին:*

*1. Վանկական = sonantisch. Նիւթ բառին մէջի ւ տառն այսօրուան օրս “վանկական ձայնաւոր„ մըն է, իսկ ի տառն “անվանկ ձայնաւոր„: Բոհեմերէն vlk (գայլ) բառին մէջի l գիրը “վանկական բաղաձայն„ է, v եւ k “անվանկ բաղաձայններ„ են:*

*2. Ձայնեղ = sonor. բաղաձայններէն l, r (լ, ռ) n, m եւ նման ձայն ունեցողներն ձայնեղ բաղաձայններ (կամ ձայնեղներ) կը կոչուին. իսկ միւս բաղաձայնները՝ անձայնեղ բաղաձայններ:*

*3. Երգաձայնական = stimmhaft. “Անձայնեղ բաղաձայններէն„ զ. օր. գ, ժ, վ, b, d, g “երգաձայնական„ են, ընդ-*

Հակառակն ս, շ, ֆ, p, t, k՝ «երգածայնազուրկ»։

4. «Անձայնեղ բաղաձայնները» կը բաժնուին ա) փակ բաղաձայններու զ. օր. փ, պ, բ, թ, տ, դ, ք, կ, գ (Explosive, Klusile, Verschlusslaute, պայթուցիկներ). բ) բաց բաղաձայններու, զ. օր. ֆ, վ, ս, զ, շ, ժ, խ, հ (Spiranten, Frikative, Reibelaute, Հազազայիններ, անգղ. open consonants). գ) սկզբնափակ բաղաձայններու, զ. օր. ց, ծ, ձ, չ, ճ, ջ (Affricatae).

5. Նուրբ = tenuis (երգածայնազուրկ փակ բաղաձայններ). միջակ = media (երգածայնական փակ բաղաձայններ). թաւ = aspirata կամ aspirirt.

Մնացեալ ձայնական բացատրութեանց մեկնութեան կարիք չկայ։

Հեղինակին հայերէն չեզուած գրուածոց յառաջուածները՝ որոնք գերմ. բնագրին մէջ չկան, այս նիշ [...] փակագծի մէջ առնուած են։

Ա.

# ՀԱՅԵՐԷՆԻ ՁԱՅՆԱԿԱՆ ԴՐՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ ՆԱԽԱԿԱՐԳ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

§ 1. *Հնդեւրոպական միջակները հայերէն լեզուի մէջ՝ եթէ զուտ մասնական դէպքերն ի բաց առնունք, յօդաւորութեան ամէն դրից ու շրջապատութեան ամէն պարագայից մէջ ընդհանուր կանոնի մը կրնան վերածուիլ. այսինքն՝ ամէն տեղ նուրբ եղած են։ Այսպէս չէ միւս հնդեւր. փակ բաղաձայններուն համար։ Տակաւին ամէնէն պարզն է նուրբ-թաւերու հայերէնի մէջ ունեցած զարգացումը. թէեւ հոս ալ շրջապատութեան պայմանները անշուշտ ազդեցութիւն չունին, սակայն արտասանութեան յետսագոյն դրից զարգացումը միւսներէն տարբեր է։ Միջակ-թաւերը բազմազան երեւոյթներ կը ներկայացընեն. այնպէս որ ասոնց համար թէ՛ արտասանութեան դիրքն եւ թէ՛ շրջապատութեան պայմանները պէտք են նկատողութեան առնուիլ։ Բայց ամէնէն աւելի զանազան է հնդեւր. զուտ նուրբ տառերուն զարգացումը։ Այսու հանդերձ ի թերթին* KZ. XXXVIII, 200 ff. *փորձեցի ցուցընել թէ նաեւ բոլոր զուտ նուրբ տառերուն զարգացման առաջին փուլը՝ արտասանութեան ամէն դրից մէջ համանման եղած է։ Հնդեւր. զուտ նուրբերը՝ ըստ իս՝ նախ եւ յառաջ ամէն տեղ եղած են նուրբ-թաւ (ուսկից՝ որոշ պարագաներու բաց բաղաձայններ), սակայն առանց ամե- ւին հնդեւր. "նուրբ-թաւերու„ հետ խառնուել նոյնանալու։ Արդ՝ ասկէ կը հետեւի թէ ...եւր.* $q^{u}h$ *qh* k͡h *th ph չեն կրնար պարզ նուրբ-*

թաւեր եղած ըլլալ, այլ նուրբերէ եւ լիատեւ հ-է մը բաղկացած ըլլալու են։ Թէ՛ սոյն տեսակ խումբերը պարզ նուրբ-թաւերէն շատ տարբեր են՝ դիւրաւ կրնանք փորձելով համոզուիլ։ Նոյնպէս միջակ-թաւերը միատարր ձայներ չէին, այլ միջակներէ եւ լիատեւ երգաձայնական հ-է մը բաղկացած. հնդեւր. gh ճիշտ չեխերէնի k husti բառին մէջ գտնուող ghին պէս արտաբերուած պիտի ըլլայ (բոհեմերէնի երգաձայնական h տառին մասին հմմտ. Հեզ. Nordisk tidsskrift for filologi, 3. raekke, XI, 124)։ Հնդեւր. երգաձայնազուրկ h խմբերը հայերէնի մէջ երկար ատեն անփոփոխ մնացած են։ Հազիւ այն ժամանակները՝ երբ հնդեւր. պարզ նրբերն հայերէնի մէջ արդէն՝ ինչ ինչ պարագայից մէջ՝ բաց բաղաձայններու յանգած էին, որոնք մասամբ աւելի ալ ձայնաշրջած էին, հնդիկեւր. k͡h th ph վերածուեցան պարզ նուրբ-թաւերուն՝ ց, թ, փ։ Սակայն արտասանութեան յետագոյն դրից մէջ (հնդեւր. $q^{u}h$, qh) այս h ձայնի այսպիսի նուազում մը տեղի չունեցաւ. միայն թէ hի արտասանութեանս դիրքն իրմէ նախընթաց ձայնին շրջուեցաւ նմանաձայնութեամբ։ Այսպիսով յառաջ եկաւ kx, որմէ յետոյ պատմական ծանօթ խ։

§ 2. Անցողակի մտադիր կ'ընեմ հնդեւր. qhէ ծագած հայ. խ տառին մինչեւ ցարդ միտ չդրուած օրինակի մը. խօսիմ բային ինծի կ'երեւայ թէ նոյն է յուն. χαυχάομαι բային հետ. ի հարկէ ասոր համար ընդունելու է յունարէնի մէջ տառերու տեղափոխութիւն (χαυχ- փոխանակ *χαυκ-, հմմտ. Brugmann, Grundriss, I², 872)։ (Պրեւլվից զχαυχάομαι կը համեմատէ լիտ. szaũkti "պոռալ" բառին հետ. եթէ ասիկա ուղիղ է, այն ատեն լիտուերէնի մէջ ալ գրի տեղափոխութիւն պէտք է ընդունիլ, եւ կամ ընդհակառակն ենթադրելու է հնդեւր. *k͡augh- արմատ մը, որ յունարէնի եւ լիտուերէնի մէջ անխտիր պահուած

ըլլայ, իսկ հայերէնի մէջ տառերու տեղափոխութիւն կրած. սակայն եւ ինձ ակներեւ չ'երեւար թէ χαυχάομαι եւ szaũkti իրարու հետ առնչութիւն ունենան: Ուրիշները szaũkti բայը համեմատած են հին հնդկ. çocati (այրէ, թախծի) բառին հետ, որ նոյնպէս ակներեւ-համոզիչ չէ: Հայ. խօ-սիմ բային նկատմամբ Թագրուպանեան "Հանդէսի„ մէջ (ՀԱ, 1903, էջ 381) ուրիշ առաջարկութիւն մ'ըրած է, որուն համաձայն խօսիմ՝ պատճառական նշանակութեամբ՝ յուն. χοέω, հին բուլղ. čuti (իմանալ) բառերուն հետ աղերս ունենայ: Սակայն այս մեկնութեան [եւ Շ ե ֆ տ ե լ ո վ ի ց ի BB. XXVIII, 282 տուած մեկնութեանն (խօսիմ: գոթ. hugjan "խորհիլ„)] նպաստաւոր չէ ձայնաւորաց դրութիւնը:)

§ 3. Յառաջագոյն միտեալ էի ընդունելու թէ հնդեւր. զուտ նուրբերն եւ միջակ-թաւերը հայերէնի մէջ զուգընթացաբար զարգացած ըլլան. վասն զի ինչ ինչ դիպաց մէջ թէ՛ այս միջակ-թաւերն եւ թէ՛ հնդեւր. զուտ նուրբերը հայերէնի մէջ իբր բաց բաղաձայններ յերեւան կու գան: Բայց այս զուգընթացութիւնք շա՛տ սահմանափակ է: Միջակ-թաւերը սակաւաթիւ դիպաց մէջ միայն՝ բաց բաղաձայններ կ'ըլլան: Իսկ հնդեւր. $g^uh$ gh եւ dh ամենեւին ալ բացուած ըլլալու չեն. (Բ ո ւ գ գ է KZ. XXXII, 37 ff. թէեւ երկու ձայնաւորի միջեւ գտնուող dh կը համարի ղ եղած, սակայն ապահովապէս առանց իրաւանց. հմմտ. ստ. § 43): Անշուշտ g̑h եւ bh երկու ձայնաւորի միջեւ կ'ըլլան ղ եւ –, բայց ոչ ւ, ր, ն (մ) տառերէն վերջը, եւ կամ ոչ բառի մը սկիզբը. (ընդ հակառակն՝ k̑ այս ամէն դրից մէջ · կ'ըլլայ, իսկ p բառասկզբան՝ հ): Ու եթէ մօզի աղերս ունի յուն. μοσχίον, μόσχος բառերուն հետ, որուն վրայ հաւնի թէ կարելի ըլլայ տարակուսիլ [Շ ե ֆ տ ե լ ո վ ի ց BB. XXIX 56 անիրաւի մօզին ալ. mez "զուարակ„ բառին հետ

(որուն մասին հմմտ. Gustav Meyer, Et. Wtb. էջ 276) կը համեմատէ], այն ժամանակը -zg̑h- ալ ղ եղած է. ասոր հակառակը -sk̑- իբր ց յերեւան կու գայ: Ուստի կ'երեւայ թէ k̑ բաց բաղաձայն եղած էր այնպիսի ժամանակ մը՝ երբ s (z) հնդեւր. քմայկաններուն առջեւ տակաւին գոյութիւն ունէր. ընդհակառակն g̑h հազիւ բացուած է, երբ s (z) այս դիպաց մէջ արդէն կորսուած էր (աննմանաձայնութեամբ սկզբնափակ բաղաձայնին վերջին տարեր հետ:)

§ 4. Հայ. — տառին հնդեւր. bhէն ծագելուն օրինակ մըն է աւելում, յուն. ὀφέλλω (աւելել), յաւելում, յուն. ὀφέλλω (աւելցընել), հմմտ. տակաւին աւելի, աւելորդ, առաւելում: Յունարէնէն ասոր կը վերաբերի տակաւին՝ ὄφελος, ὠφελέω եւ յամենայն դէպս նաեւ ὀφείλω, ուստի ὀφείλειν τινί τι ըստ ինքեան կը նշանակէ ի բնէ "առաւելել զոք իւիք." (յաւելուլ ումեք ինչ:) Յոյն բառերուս հին ստուգաբանութիւնները կրնան տեսնուիլ ստուգաբանական բառագրոց մէջ. զանոնք չեմ յիշեր հոս, վասն զի ինծի ամենեւին համոզիչ չեն երեւար: Հնդեւր. o սկզբնատառը բաց վանկի մէջ պէտք է որ հայերէն լեզուին մէջ կանոնաւորապէս ո գիրը տայ. (տ. Հեղինակիս գրածը՝ ի KZ. XXXVI, 98 ff.) [Արկադ. Fοφληκόσι ձեւին մէջ (Brugmann, Griech. Gramm. 3 150) F տառը նախնական չէ. — Հայերէն յաւելում բային հետ թերեւս աղերս ունենայ նաեւ հին սկանդ. afl "զօրութիւն", afla "ստանալ", դան. avl "կուլթք, արդիւնք", avle "ծնանել, մշակել", հբգ. avalōn "աշխատիլ" (որուն մէջ v տառը հնդեւր. bh է ծագած կրնայ ըլլալ, հմմտ. v. Bahder IF XIV 260), fr-avili "հպարտ", իռլ. uall սեռ. uailbe "հպարտութիւն" (որուն մէջ ual- հնդեւր. *obhl-է ծագած կրնայ ըլլալ, թէեւ բառին հոլովումը առեղ-

ծաւածական է)․ իսկ Հայերէն —ել—ն բային հետ թերեւս աղերս ունենայ հին սկանդ. afl "դարբնոց"].

§ 5. Ի բաց առեալ այն դէպքերը, ուր gh եւ bh բաց բաղաձայններ եղած են, միւս տեղերը հնդեւր. միջակ-թաւեր յերեւան կու գան հայ. գ, ձ, դ, բ (ասոնց վրայ աւելցընելու է նաեւ Ջ՝ գի մը քմականացեալ ձեւը). այստեղ ես առ ժամս հայ. նշանները պարզապէս գրեցի, առանց ամենեւին անոնց ուղիղ արտասանութիւնը ճշդրտել ուզելու։ Այսօր, արեւելեան հայերէն գաւառականին գ, ձ, դ, բ (g, ʒ, d, b) գրերը արեւմտեան հայերէն բարբառին մէջ k, c, t, p կ'արտասանուին։ Ընդ հակառակն հնդեւր. միջակներէ ծագած ձայները (հին հայ. կ, ծ, տ, պ) այսօր Արեւելեան-Հայոց լեզուին մէջ k, c, t, p կ'արտաբերուին, իսկ Արեւմտեան-Հայոց բարբառին մէջ g, ʒ, d, b։ Վերջին դէպքիս մէջ կը բաղձայի արեւելեան հայերէնի արտասանութիւնը պարզապէս հին հայերէնի հետ նոյն բռնել եւ ըստ այնմ արեւմտեան գաւառաբարբառին մէջ ձայնաշրջում մ'ընդունիլ։ Յամենայն դէպս այս ձայնաշրջումը մեծ չէ, վասն զի ըստ Ն. Ֆինկի ըսածին (F. N. Finck, Lehrbuch der neuostarmenischen Literatursprache, p. 4) "արեւելեան հայերէնի կ, ծ, տ, պ ձայներն՝ ըստ լսաբանական արդեանց՝ միջին տեղ մը կը բռնեն (երգաձայնազուրկ) b, d, g ձայներու եւ ռոմանական ու սլաւ նուրբերուն միջեւ". իսկ ասոր հակառակը՝ եթէ լսելիքս զիս չի խաբեր, արեւմտեան հայերէնի կ, ծ, տ, պ ձայները ռոմանական կամ սլաւ միջակներէն աւելի նուազ երգաձայնական են։ Բայց արդ՝ եթէ արեւելեան արդի հայերէնի արտասանութիւնը՝ հնդեւր. միջակ-թաւերն ալ ի նկատի ունենալով՝ հին հայերէնի արտաբերութեան հետ նոյն համարէինք եւ ըստ այնմ արեւմտեան հայերէնի մէջ միայն ձայնաշրջում մ'ընդունէինք, այն ատեն խնդիր կը յառնէր թէ ինչպէս կարելի է, որ նրբերը՝ միջակ եւ

միջակները նուրբ կ'ըլլան, առանց նախ այս ձայնա-փոխութեան կատարուելու միջոցին՝ ձայներու իրարու խառնուելու։ Ըստ իմ կարծեացս՝ ասիկա պարզապէս անկարելի է. միջին ատրիճաններ ընդունիլը բացարձակապէս օգուտ չունի։ Միակ միջոցն է ընդունիլ թէ հին Հայերէնի այն ձայները՝ որոնք գ, ձ, դ, բ գրերով կը գրուին (եւ որոնք ի մէջ այլոց յուն. γ, δ, β ձայները տառադարձելու կը գործածուին,) իրապէս անփոփոխ միջակ-թաւերը կը ներկայացնեն, ուրեմն իբր gh, ʒh, dh, bh (ջ տառն ալ ըստ այսմ իբր ǯh) արտաբերուելու են։ Արդի արեւելեան Հայերէնի մէջ (երգաձայնական) h կորսուած է, իսկ արդի արեւմտեան Հայերէնի մէջ այն խմբերն երգաձայնազուրկ եղած են, որով երգաձայնազուրկ h ալ կորսուած է։ Սակայն h ձայնը արեւելեան Հայերէնի մէջ ամէն տեղ հետակորոյս եղած չէ. ինչ ինչ դէպքերու մէջ՝ նուրբ-թաւեր ծագում առած են, այսինքն՝ անորոշ կանոնի մը համաձայն՝ բառամիջին եւ բառավերջին, բայց ոչ բառասկզբան։ Տես Finck, Lehrbuch եւն p. 7f.. Tomson, Историческая грамматика современнаго армянскаго языка города Тифлиса, էջ 65—68. Այսպէս ըստ Տոմսոնի նուրբ-թաւ կը գտնուի՝ օրինակի աղագաւ այն բառերուն մէջ՝ որ կը համապատասխանեն հին հայ բառերուս Խաչատուր (բայց ոչ Խաչ. սակայն Ֆինկ ճիշտ Խաչը յառաջ կը բերէ իբր + հնչելու օրինակ), մարգարէթ, պատարագ, աջող, արջ, փորձեմ, աղձ, արդար, Աստուծոյ ուղտ (կրկին դին համար), որբ, երբ եւն։ Անձնեւին պէտք չէ կարծել թէ վերջնատառին ունեցած դիրքն այս զարգացման իբր հիմ ըլլայ, վասն զի միջնատառի օրինակները ժխտել կարելի չէ։ Աւելի կրնայ հակառակ ճամբան բռնուիլ եւ ընդունուիլ թէ զարգացումը միայն միջնատառին տեղի ունեցած ըլլայ։ Վասն զի վերջնատառ նուրբ-թաւերու բազմաթիւ դէպքերը դիւրաւ կը

հասկցուին հին հայ. միջակներէն (միջակ-թաւերէն) ծագած՝ իբր նմանակազմութիւններ, ինչու որ անոնց մեծագոյն մասը հոլովելի բառեր են։ Ուստի ձայնական օրինաց համաձայն կ'ըլլար Ռոգ բառը գ (g) հնչմամբ, իսկ Ռոգա—որը՝ + հնչմամբ։ Փինկի՝ Ռոգ բառին մէջ հաւաստած + հնչումն ընդհակառակն նմանակազմութիւն մ'ըլլալու է Ռոգի սեռականին կամ Ռոգա—որ բառին նմանութեամբ կազմուած։ Բնախօսօրէն դիւրահասկանալի կ'ըլլար՝ թէ ինչպէս դժուարահնչիւն կրկնաձայնները (միջակ-թաւեր) ճիշտ բառամիջին երկայն ատեն անփոփոխ մնացած ըլլան եւ այսպէս ուրիշ բախտ մ'ունեցած՝ քան բառասկզբան եւ բառավերջին մէջ։ Եւ այս ենթադրութիւնս թերեւս ուրիշ գաւառաբարբառով մ'ուղղակի կ'ապացուցուի։ Մսերեանցի (Հայերէն բարբառախօսութիւն Ա. Этюды по армянской діалектологіи, I.) Նկարագրած Մշոյ արեւելեան բարբառին մէջ՝ հին հայերէնի նուրբ-թաւերը միայն բառասկզբան եւ բառավերջին մնացած են, իսկ բառամիջին զուտ նուրբերու փոխուած են։ Սակայն հին հայերէնի միջակ-թաւերը Մշոյ բարբառին մէջ յերեւան կու գան բառի մը սկիզբը՝ իբր միջակ, ընդհակառակն բառի մը մէջն եւ վերջը՝ իբր զուտ նուրբեր։ Եթէ Մշոյ բարբառին զարգացումն ըստ կարելւոյն միւս արեւելահայ բարբառներուն մերձեցընել ուզուի, կրնայ ընդունուիլ միջնատառի համար՝ միջակ-թաւերու փոխանցում մը նուրբ-թաւերուն, որոնք միեւնոյն ատեն հին հայ. նուրբ-թաւերուն հետ զուտ նուրբ եղած ըլլան։ Այն ատեն Մշոյ բարբառին համար պէտք կ'ըլլայ միայն վերջնատառին նկատմամբ մասնաւոր զարգացում մ'ընդունիլ.
լայ ձայնական օրինօք, ըլլայ նմանակազմութեամբ։ Բաց աստի քանի մ'ուրիշ արեւմտեան րբառներու մէջ ալ կը տեսնուին նուրբ-թաւեր հին հայերէնի միջակ-թաւերու տեղը բռնած.

ոյսպէս Կարնոյ բարբառոյ խմբին վերաբերող դասաւորութեան մը մէջ՝ զոր Տոմսոն իւր «Լեզուաբանական Հետազօտութիւնք» (Tomson, Лингвистическія изслѣдованія I) գործին մէջ կը նկարագրէ. Տոմսոնի (էջ 15—17) յիշած օրինակներէն յառաջ կը բերեմ հետեւեալքն՝ որ կը համապատասխանեն հին հայերէն բառերուն՝ պօղտօնել, օրօղ, օղ (նաեւ հին հայ. սեռ. օղյ), դօդօրել (միջնատառ դին համար), օրբէնալ։ Նախորդ ը տառի մ՚այս զարգացման նպատակը՝ աններեւ չէ։ Լեհահայոց բարբառին զուտնութեր՝ կը գտնենք հին հայ. ուրդուր, ուրդի, թուրիր, թուրջ եւն բառերուն համապատասխանող բառերուն մէջ, իսկ նուրբ-թաւը՝ հին հայ. պղտանել բային համապատասխանողին մէջ։ Կ. Պոլսոյ բարբառը՝ հին հայ. միջակ-թաւերուն տեղ նուրբ-թաւեր ունի, թէ ձայնաւորէ եւ թէ ը տառէն վերջը, զ. օր. հին հայ. որբենալ, պղտանել բայերուն մէջ։

§ 6. Միայն արդի բարբառները չեն որ ստիպեն զմեզ ընդունելու թէ հին հայերէնի միջակները իրականին միջակ-թաւ էին։ Նոյն իսկ հին հայերէնի մէջ ալ կրնանք թերեւս ասոր նշաններ գտնել։ Նաեւ հին հայերէնի մէջ կը տեսնուի թէ միջակները՝ շատ աւելի մերձաւոր խնամութիւն մ՚ունին նուրբ-թաւերուն հետ՝ քան թէ զուտ նուրբերուն։ Շատ ծանրակշռութիւն չեմ դներ գէմ-ք (բզմ.), սեռ. գմոյ բառին վրայ, թէեւ առանց տարակուսի ծագած է *ghēmāէն, եւ լիտ. gomurỹs նոյնանիշ բառին հետ աղերս ունի. (Հնդեւր. ē : ā փոխանակման մասին տես Հեղինակին գրածն ի KZ. XXXVIII, 404, թէպէտ եւ Miežinis այս բառը կը թարգմանէ լեդդ. gůmursով, որ Ulmannի եւ Brascheի քով չի գտնուիր մինչդեռ ասոնց քով կը տեսնուի gahmurs «շնչափող» բառը. Miežinisի գրած ů ձայնը նոյն է Bielensteinի õ եւ ů գրածին հետ, իսկ Ulmann

ah գրածը նոյն է Bielensteinի â գրածին). դարձեալ քիմք բառը կապակցութիւն ունի հբգ. goumo, հին անգղ. góma, հին հիւս. gómr բառերուն հետ, եւ թերեւս նաեւ յուն. χήμη (յօրանջել, տեսակ մը խեցեմորթ) բառին հետ, եթէ կարելի ըլլայ [Mansionի (Les gutturales grecques էջ 181—182) համաձայն] այս բառս անջատել այն նոյնանիշ բառերէն՝ որոնք հնդեւր. g̑h- կը ցուցընեն: Ուրեմն ք- տառը հոս գ-էն յառաջ եկած է՝ յաջորդ -քին հետ նմանաձայնելով: Բայց թէ այս նմանաձայնութիւնը գ եւ ք ձայներուն մերձաւոր խնամութիւն մ'իբրեւ կարեւոր պայման մը կը պահանջէ, բնականաբար կրնայ տարակուսական ըլլալ: Ասոր հակառակն աւելի որոշիչ է քուն, որուն գէ ծագած ք տառը յաջորդ ուին ազդեցութեամբը յառաջ եկած է. արդ թէեւ ու կրնայ պատճառ եղած ըլլալ երգաձայնի կորստեանն, բայց դժուարաւ նաեւ թաւանալուն. ուստի կ'երեւայ թէ ի սկզբանէ անտի իսկ թաւութիւնը գ տառինն էր: Համմտ. սակայն աստիկեան այբուբենի մէջ յերեւան եկող χσ, φσ (փոխ. ξ, ψ:) [Նոյնպէս հին հնդկ. լեզուի մէջ փոխ. kš, ps նաեւ khš, phs կը գտնուի, որուն զիս թղթի մը մէջ մտադիր ըրած է Մէյէ (տես Wackernagel, Altindische Grammatik, I, § 113), ուստի եւ քուն բառին համար իմ տուած մեկնութիւնս, թէեւ կրնայ ուղիղ ըլլալ, սակայն շատ ծանրակշռութիւն չի կրնար ունենալ]:

Բայց որովհետեւ այս գ տառը հնդեւր. vէն ծագած է, առջեւնիս կ'ելլէ այն գլխաւոր առարկութիւնն իմ այս դրութեանս դէմ, որ ինծի ալ երկար ժամանակ կասկած կու տար: Ըստ ինքեան զարմանալի չէ որ հնդեւր. gh կամ $g^{u}h$ մը հայենի մէջ տակաւին իբր gh մնացած ըլլայ. կեղտենի մէջ ալ պէտք է որ այս խմբերուն երգա-
յնական hն երկար ատեն անփոփոխ մնացած
այ՝ ըստ Օստհոֆի քննութեանց Osthoff, IF.

IV, 264—294, հմմտ. ի մասնաւորի էջ 292 եւն.) Նոյնպէս Հայերէնի հետ ըստ իմիք խիստ մերձաւոր-ազգակից փռիւգերէնի մէջ միջակ-թաւերը բաւական անագան ժամանակ մ'ալ անփոփոխ մնացած էին (Kretschmer, Einleitung in die Geschichte der griech. Sprache, p 229)։ Բայց Հին Հայերէնի ոչ ամէն միջակներն ալ (որոնք ըստ իմ տեսութեանս իբրեւ միջակ-թաւեր համարուելու էին) հնդեւր. միջակ-թաւերէն ծագում առած են։ Նշանաւորագոյն զարտուղութիւնը կը կազմէ ճիշտ այս հնդեւր. ծագած ջ տառը։ Այս ջին զարգացման ընթացքն եղած ըլլալու է անշուշտ այսպէս u̯ : γu̯ : gu̯ : ջ։ Հոս պէտք եմ ընդունիլ որ կամ gu̯ այն կերպով gh եղած է որ u̯ ձայնը նախ (արտաբերելու առեն) շրթունքի կլորութիւնը կորսնցուցած է, որով այսպէս կը փոխուէր կ'ըլլար γ մը, եւ այս γն ալ այն ձայնաշրջութեամբ՝ զոր չեխերէնի եւ փոքր ռուսերէնի համար ընդունելու ենք (չ. hora, փոքր ռուս. horá 'լեռ, = հին բուլղ. gora) երգաձայնական h մ'եղած պիտի ըլլայ։ Եւ կամ պէտք եմ ընդունիլ որ այն զարգացմամբ ուղղակի երգաձայնական գ մ'առաջ եկած է՝ առանց յաջորդող γի կամ hի, եւ վերջէն այս երգաձայնական զուտ գը լեզուին մէջ յաճախադէպ ghի շրջեցաւ նմանափոխութեամբ։ Նման է կըմ-րերէնի մէջ k͡s- qs-է ծագած սկզբնատառ ch, որ chw եղած է նմանափոխութեամբ այն յաճախադէպ սկզբնատառ chwի՝ որ ծագած է svէ։ (Տես Հեղի-նակիս գրածն ի KZ. XXXVIII, 389)։ Այսպիսի նմանափոխութիւն մը ամէնէն հաւանական ճամ-բան է այն տեսակ դէպքերու մէջ, որ (ի մաս-նաւորի ր ու ն գրերէն ետքը) հին հայ. ղ եւ գ մը հնդեւր. նուրբէ մը ծագած է (հնդեւր. t եւ ç qᵘէ նախապէս յառաջ եկած ƀ ու +ի եւ պատմա-կան ղ ու գի միջեւ դրուելու են՝ իբր միջին ան-դամ՝ |ʔ, x եւ ծ̃, γ բաց բաղաձայններ, որոնց վրայ

վարը պիտի խօսինք)։ Եւ կամ պէտք է ընդունիլ որ ǯ, γ նախապէս dǯ, gγ եղած ըլլան։ Եւ որովհետեւ բոց բաղաձայնին փակումը նախորդ ձայնին ազդեցութեամբն եղած է, ըստ ինքեան անսովոր բան մը չէր ըլլար՝ եթէ այս փոխանցումը նախ բաղաձայնին տեւողութեան առաջին կիսուն հանդիպած ըլլար. dǯ, gγէ համեմատաբար դիւրաւ dh, ghի կը հասնուէր։ Բնականաբար որեւէ դժուարութիւն մը յարուցանել չեն կրնար բացարձակապէս այն փոխառեալ օտար բառերն, որոնք իրենց բնիկ լեզուին մէջ զուտ միջակ ունին, իսկ հայերէնի մէջ՝ ըստ իմ տեսութեանս, միջակ-թաւեր ունենալու են։ Եթէ հայերէնի մէջ զուտ միջակ չէր գտնուեր, այն ատեն պարզապէս անկարելի էր օտար այն բառերը ճշգրտիւ ներկայացընել։ Ուստի քանի նման մեկնուելու են՝ Թշնամի, նպ. *dušman*, Թշնամանք, նպ. *dušnām* եւ Թշուառ աւեստ. *dušxᵛarənah-*.

Ժամանակ մը՝ ես ինծի դէմ նոր դժուարութիւն մը յարուցած էի, ընդունելով թէ բառամիջի միջակ-թաւերուն զարգացումը հնդեւր. զուտ նուրբերուն զարգացման հետ զուգընթաց ըլլայ. (բայց հմմտ. § 3)։ Այն ատեն հնդեւր. *gᵘh*, *gh*, *ǵh*, *dh*, *bh* եւ ասոնց համապատասխան հայ. գ, ջ, դ, բ ձայներուն միջեւ՝ իբր բառամիջի միջին անդամ՝ միշտ բաց բաղաձայն մը դրուելու էր։ Ուստի եւ օրինակի համար՝ հայ. -գ- ծագած ըլլալու էր -γ-է եւ -րջ- (որջք-, յուն. ὄρχις) -rz-է։ Բնախօսօրէն անիկա կարելի էր։ Թէպէտ եւ հայերէն լեզուն -rs- անփոփոխ պահած է (հարսն, որում՝ ըստ Բադրուպանեանի՝ ՀԱ. 1903, էջ 222 *porkāmiէ.

համամիտ եմ Բադրուպանեանի՝ եթէ առով դեւր. "հարցանել„ իմաստով արմատը կ'իմաայ) [Շեֆտելովիցի BB. XXVIII, 282 (որում՝ հնդկ. *arçasānā-* "փնտռող„) եւ BB. XXIX,

52. (որս։ յուն. ὄρχυς "ցանց") տուած մեկնութիւնները չեմ ընդունիր], բայց այսու հանդերձ -rz- շատ դիւրաւ կրնար -րձ- եղած ըլլալ. այսպէս նաեւ լեհերէն bardzo "շատ" ծագած է barzo, թէպէտ -rs- անփոփոխ կը մնայ (piersi "կուրծք")։ Եւ այն՝ թէ -rz- հայերէնի մէջ կը փոխանցի -րձ-ի, աներկբայ կը տեսնուի՝ պարսկերէնէ փոխառեալ քանի մը բառերու մէջ. դերզոյ, հանդերզ, որզոյ, վարզ, տես Հիւբշմանի Persische Studien, p. 222 ff. Հայ. քեր. Ա, 140, 245, 425, Հեղինակիս գրածը՝ KZ. XXXVIII, 194). Հմմտ. այս մասին § 16։ Սակայն այն թէ հնդեւր. միջակթաւերուն եւ հայ. միջնատառ միջակներուն միջեւ նախ բաց բաղաձայն մ'ընդունելու է՝ հնարաւոր, բայց ոչ ստիպողական ենթադրութիւն մըն է։ Մանաւանդ թէ այսպիսի կարծիք մը թերեւս այլեւայլ տեսակէտներով նոյն իսկ անհաւանական է։ Եւ եթէ այսու ամենայնիւ ուղիղ է այս կարծիքն, այնատեն ընդունելու է որ այս գուշակաբար ընդունուած բաց բաղաձայններն ոչ թէ պարզ միջակներու փոխուեցան զարգացմամբ, այլ միջակթաւերու (մասամբ պարզ ձայնապէս, մասամբ՝ ինչպէս վերն ակնարկեցինք՝ աւելի յաճախադէպ ձայներու հետ նմանափոխութեամբ։) Վասն զի արդի հայերէն լեզուի զարգացումը չի մեկնուիր, եթէ միջակ-թաւեր չընդունինք։

§ 7. Այս տեսութեանս դէմ առարկութիւն մը չէ որ հայերէնի միջակները՝ ղուտ նուրբի մը հետ երկրորդապէս հանդիպելու ժամանակ՝ ոչ թէ նուրբ թաւեր կ'ըլլան, այլ ղուտ նուրբեր. այսպէս՝ յգոեմ եւ յկոեմ (գին հոս մասամբ անփոփոխ մնալուն պատճառն է յգեմ նոյնանիշ բայարմատին հետ կապուիլը.) Հմմտ. յուն. γραπτός, γράφωէն եւն Ծունր-ի սեռ. ծնգաց ձեւերէն պէտք է հետեւցընել, որ միջակ մը նաեւ նուրբ-թաւի մ'առջեւը ղունուրբ կ'ըլլայ. աւելի զարմանալի է ծունկ-ս հայ

ցականը։ Քոոն բառէն կը տեսնուի թէ նաեւ բառասկզբին նմանաձայնութիւն մը կրնայ տեղի ունենալ, որ կրնար արտասովոր երեւալ, վասն զի հոն առաջին երկու բաղաձայններու մէջ՝ որ երկրորդապէս իրարու կը հանդիպին, ը մը կ՚արտաբերուի։ Պէտք է ընդունիլ, որ հնագոյն ժամանակները այս ըին տեղ հոն միայն դադար մը կար. (հմմտ. Հեռլինակիս գրածը՝ KZ. XXXIX, 237)։ Բառասկզբին աննմանաձայն գօ, բօ, գփ եւն կ՚երեւայ թէ հոն միայն տեղի ունի, ուր ստուգաբանական գիտակցութիւն մը կար։ Ուստի՝ օրինակի աղագաւ, ներեալ է հայ. պտուղ, սեռ. պտղոյ, ծագած ըսել հնդեւր. *bhidu-lo-m ձեւէն՝ որ կապ ունի նոյնպէս լտ. findō եւն բառերուն հետ, ինչպէս հին հնդկ. *phála-m "պտուղ" ունի phalati (կը ճաթի, կը հերձու) բային հետ։ Բայց թէ առաջին երկու բաղաձայնին մէջ եղած ձայնաւորն, որ կորսուած է, ՝ի էր (եւ ո՛չ թերեւս u), ի հարկէ ապահով չէ։

§ 8. Հնդեւր. զուտ նուրբերուն հայերէնի մէջ ունեցած զարգացումը մեկնաբանելու համար անհրաժեշտ կարեւոր է հնդեւր. բաղաձայններու խմբերուն վրայ խօսիլ։ § 9—21 պիտի խօսիմ այն խմբերուն վրայ՝ զոր կը կազմեն փակ բաղաձայնները փակ բաղաձայններու, ռնգականներու, l եւ r տառերու հետ. (այս խմբերուն մէջ հնդեւր. նուրբերը նախ կը բացուին. երեք բաղաձայններէն միջինը կ՚իյնայ). §§ 23—35՝ կը յաջորդէ հնդեւր. նուրբերուն ինքնաբոյս զարգացումը. §§ 36—53՝ այն խմբերն՝ զոր կը կազմեն փակ բաղաձայններ եւ i̯, u̯, s կամ ատամնական + ատամնական (հոս նուրբերն չեն բացուիր. առանց բացառութեան կանոն մը չէ երեք բաղաձայններէն միջինին կորուստը). կրորդական (եւ ոչ ժառանգեալ) բաղաձայնները պիտի քննեմ՝ § 54 (եւ § 55)։

§ 9. Հնդեւրոպականին մէջ երկու փակ բաձայնէ բաղկացած խմբերուն ամէնէն սովորականը

բառասկիզբին եղած ըլլալու է անշուշտ pt-. յամենայն դէպս անիկա այն միակ խումբն է՝ որ հայերէնի մէջ ցարդ ստուգապէս ապացուցուած է։ Բուգգէ (KZ. XXXII, 39) իրաւամբ ընդունած է թէ pt- հայերէնի մէջ իբր Թ կ'երեւայ. սակայն իւր իբրեւ ապացոյց յառաջ բերած օրինակներէն դուրս վտարելու է արդի հայ. Թեպուր բառը, վասն զի "թեպուր" բառը հին հայերէնի փետուրէն ծագած է (փետուրն ալ փետեմէն)։ Ասկէ դուրս՝ Բուգգէի ապացոյցներուն դէմ ծանրակշիռ առարկութիւն մ'ըլլալու չէ. յամենայն դէպս Թուք, յուն. πτύω, պէտք չէ մեկնել Հիւբշմանի հետ (Հայ. քեր. Ա. 450) այն ոճով՝ որ յունարէնին τ տառը հաւասար դնենք հնդեւր. i̯ կամ jh, եւ հնդկականին ṭh ձայնը (šṭhīvati "թքանէ") յառաջ եկած ըսենք pt։ Հնդեւր. արմատին բառասկիզբն էր յամենայն դէպս spṭi̯- բնաձայնանկարը։ Իսկ Թեղի բառն յուն. πτελέα բառին հետ համեմատելը որեւէ առարկութիւն չի վերցըներ։ Սա համեմատութիւնը Թաքչիմ, Թաքնում, յուն. πτήσσω, անշուշտ դժուարութիւն մ'ունի՝ հայերէնի ք ձայնին պատճառաւ. սակայն Բուգգէ անշուշտ իրաւունք ունի, երբ այս ք տառը որեւէ նմանաձայնութեամբ մը ծագած կ'ըսէ գ (հնդեւր. gh) տառէն. (համմտ. յուն. πτωχός)։ Տարակոյս չունիմ թէ Բուգգէ՝ յուն. πέτομαι-ի հետ իւր համեմատած բառերուն (Թռչել) գոնէ մէկ մասն ուղիղ մեկնած է։ Հիւբշման (Հայ քերկ. Ա. 449) որ այս ամէնը բոլորովին անապահով կ'ուզէ համարիլ, իր զգուշաւորութեան մէջ յայտնապէս քիչ մը շատ յառաջ գացած է, որով եւ անզգոյշ եղած։

Հայերէնի մէջ նաեւ ղ ու ր ձայնեղ բաղաձայններուն առջեւն կորսուած է p, եւ այնչափ կանուխ՝ որ (p)r-ի առջեւն ալ միեւնոյն նախատառ յաւելուածը զարգացած է, ինչպէս նախնական r սկզբնատառի մ'առջեւ. (երեւիմ յուն. πρέπω)։

Ռնդականի մ'առջեւ ալ p կորսուած ըլլալու է. բայց այս մասին օրինակներ չեն գտնուած։

§ 10. Որչափ կրնանք վերստուգել՝ Հնդեւր. t, k̑, q, qᵘ ալ նոյն զարգացումն ունեցած են՝ զոր ունեցած է p իբրեւ առաջին անդամ բաղաձայններու խմբի մը՝ ինչպէս տեսնեցինք § 9. tr կը գտնուի երեք բառին մէջ, qr՝ թերեւս որոճել բառին մէջ, որուն նախատառ ս ձայնաւորը կրնայ նէ ծագած ըլլալ. (հմմտ. որոճ եւ երոճ). այն ատեն որոճել կրնայ խնամի ըլլալ հնդկ. krakara-s "կաքաւ" բառին. ի հարկէ բառամիջի կոկորդականը չի համաձայնիր. (որոճել բառին առջեւէն հնդեւր. g- մ'ինկած չի կրնար ըլլալ, ինչպէս կը գուշակէ Բուգգէ, IF. I, 444)։ ql- խումբ մը կը գտնուի լինիմ բային մէջ, ալբ. kle "էր" (KZ. XXXVI, 341)։ kl- կը գտնուէր օրինակի համար բառերուս մէջ՝ լսեմ, լուր, յուն. χλύω։ Սրունք բառէն՝ լատ. crūs, չի կրնար հետեւցուիլ թէ k̑ տառը r գրին առջեւ անփոփոխ մնացած է, վասն զի եթէ իրօք անփոփոխ մնացած ըլլար՝ այն ատեն գրի տեղափոխութիւն կը սպասուէր։ Նաեւ նկատողութեան առնելու է որ ս եւ r տառերուն մէջտեղը ը մը կ'արտասանուէր, եւ այս ը ձայնը ս կամ ի ձայնէ մը ծագած պիտի ըլլայ. ուրեմն k̑ōrus- կամ k̑ērus- ձեւ մ'ենթադրելու եւ ձայնաւորի նման փոխանակութիւն մ'ընդունելու ենք, ինչպէս որ լիտ. gérve, յուն. γέρανος, հայ. կռունկ (հնդեւր. *gēr.. կամ *gōr..), լատ. grūs բառերուն համար կ'ընդունինք։ Հմմտ. § 12. Հայերէն լեզուին մէջ տակաւին օրինակներ չեն գտնուած t k̑ q qᵘ ձայներուն համար ռնդականաց առջեւ. առ առաւելն անէծ՝ *k̑nid-st (ծ գիրն ուղղականէն միւս հոլովներուն անցած ըլլալու է). ս սկզբնատառը նախադիր մ'ըլլալու է, հմմտ. ամաչեմ՝ § 14, անարի = նարի, անաւար = նաւար (եթէ այս վերջին

երկու բառին մէջ՝ ժողովրդական ստուգաբանու-
թիւնը -ն- ժխտական չկայ)։ k̑- ընդունելու է անէծ
եւ κονίδες բառերուն մէջ՝ այլ. ϑενίի համա-
ձայն. բայց այլուստ ǵn- մըն ալ նոյն արդիւնքը
կու տար անշուշտ՝ ինչպէս k̑n- (ուրիշ հնարաւո-
րութիւն մը տես § 30՝ վերջը)։

§ 11. 9 եւ 10 հատուածներուն մէջ ներկայա-
ցուած բաղաձայններուն կորուստը՝ անշուշտ այն
կերպով տեղի ունեցած է, որ փակ բաղաձայնը
նախ եւ առաջ բաց բաղաձայնի փոխուած է որ կը
յիշեցընէ երանեան ծանօթ ձայնական օրէնքը։
Այս բանը անշուշտ հնագոյնն ըլլալու է այն երեւ-
ոյթներուն, որոնց հետեւութեամբ հայերէնի մէջ
բառասկզբի ամէն բաղաձայն-խումբ անհետ եղած
է։ Համեմատաբար աւելի կրտսերագոյն ժամանակի
է այն միւս օրէնքն ալ, որուն համեմատ անձայնեղ
բաղաձայնով եւ ր տառով խմբին մէջ՝ որ մինչեւ նոյն
ժամանակը անփոփոխ մնացած էր՝ գրի տեղափոխու-
թիւն տեղի կ՚ունենայ, եւ անկէ առջը ր գրէն յա-
ռաջ ձայնաւոր մը կ՚աւելցուի։ Սակայն այս օրէնքը
(Brugmann, Grundr. I ², 433) աւելի հնա-
գոյն ըլլալու է՝ քան պարսկերէնէ փոխ առնուած
հնագոյն բառերուն ժամանակը. վասն զի ասոնք
բառասկզբին գրի տեղափոխութիւն չեն ընծայեր.
խրատ աւեստ. *χratu-*, նպ. *χirad*, դրախտ նպ.
*diraχt* (ծառ), պհլ. *draχt*, հրաման հպ. *framānā-*,
նպ. *farmān*. այսու հանդերձ շատ հնարաւոր է որ
արդէն երաներէնի մէջ՝ նոր պարսկերէնին նորա-
բոյս ձայնաւորին* մէկ ծիլը գոյութիւն ունենար,
բաղաձայն-խմբերուն թոյլնալու ձեւովը։

---

* **Svarabhakti-vokal** մասնագիտական բա-
ցատրութեան իբր համազօր թարգմանութիւնը կը դնենք
«Նորաբոյս ձայնաւոր». իսկ **Svarabhakti**ի՝ «ձայ-
նաւորի մը բուսումն»։ Ցառաջագոյն այնպիսի դիպաց
մէջ, ուր **svarabhakti** մը տեղի ունեցած ըլլար (գ. օր.

Թէպէտ եւ մեր ստաղձը թերակատար է, սակայն պէտք ենք ընդունիլ որ ամէն հնդեւր. միջակ ղի առջեւ գրի տեղափոխութիւն ունեցած է (երկան, հհնդկ. grávan- „ճնշաքար") վասն զի հնդեւր. միջակներուն զարգացման կերպը հայերէնի մէջ առանց որեւէ դեգեւանաց է:

Աւելի զգալի են ստաղձի թերութիւններն՝ երբ ի նկատի առնունք հնդեւր. միջակ-թաւերը. վասն զի ասոնք հայերէնի մէջ միօրինակ կանոնի մը համեմատ զարգացում մ'ունեցած չեն: Ապահովապէս գրի տեղափոխութիւն եղած է խմբիս՝ lhr- (եղբայր) եւ հաւանականագոյնս նաեւ խմբիս՝ ghr- որ դժուարաւ այլազգ զարգացած է քան վրէ ծագած gr- երփիծ–ցանել բային մէջ, յուն. ρήγνυμι, լիտ. ráižau „կեղեքել" (Meillet, MSL, X, 281): [Շեֆտելովից BB 28, 295 գերփիծ–ցանել լիտ. grėžiu „ճեղքել" բային հետ կը համեմատէ. Թէպէտ եւ այն մեկնութիւնը հնարաւոր է, սակայն Մէյէի տուած ստուգաբանութիւնն աւելի հաւանական է]: Բառամիջի երեւոյթները (տես § 16) հաւանական կ'ընեն որ g̑hr-ով գրի տեղափոխութիւն կրած ըլլայ: Բայց ամենեւին կռուան մը չկայ, ուսկից կարելի ըլլայ նոյնը

---

Հոլանդերէն knijf „զմելին" բառէն ծագած գաղ. canif բառին մէջ) պարզապէս ձայնաւորի մը յաւելուած կամ ընդմիջարկութիւն կը համարուէր, բայց հիմայ տեսնուեցաւ որ այն ձայնաւորն յաւելուած կամ ընդմիջարկութիւն չէ, այլ քովի ձայնի մ'ազդեցութեամբն յառաջ եկած է (canif բառին a ձայնաւորը յաջորդ n ձայնէն յառաջ եկած է): Այս պատճառաւ հնդկերէն svara-bhakti բացատրութիւնը կը գործածուի, որ ըստ ինքեան կը նշանակէ "ձայնի բեկում" (իբրեւ թէ n ձայնը երկու ձայնի՝ այսինքն a ի եւ n ի բաժնուած ըլլար): Գերմ. կ'ըսուի նաեւ Vokalentfaltung = „ձայնաւորի յառաջազայութիւն կամ զարգացում" (իբր այն թէ a ձայնաւորը n ձայնէն յառաջ եկած զարգացած ըլլար):

հետեւցընել նաեւ dhr-ի համար։ Եթէ Երթք կը համեմատի յունական τρᾱχύς (բիրտ, վայրենի) բառին հետ, այն ատեն (ընդդէմ Պրելվիցի) հնդեւր. tr- կը հետեւցընեմ։ Երդնում բառին մասին՝ հմմտ. § 17 (հհնդկ. *dhruvá-s* "հաստատուն"?)։

Նուրբ-թաւերուն րի առջեւ ինչպիսի ձեւ մ'ունենալուն խնդիրն որոշելու համար՝ ամենեւին ատաղձ չկայ։ Առ առաւելն կրնար մտածուիլ թէ երթամ՝ հրամայականի երթ ձեւով՝ *thrā- միավանկ արմատաձեւէ մը ծագած ըլլայ։ Հմյ. երթամ եւ յուն. ἔρχομαι իրարու հետ կշռելը (Meillet, MSL X, 276) հազիւ թէ կարելի է՝ հայերէն բային խոնարհման, եւ ἔρχομαιի հաւանօրէն ուրիշ բառերու հետ կապ ունենալուն պատճառաւ (KZ XXXVII, 243։)

§ 12. Ըստ § 11ի շատ անստոյգ են սա համեմատութիւնները կրծեմ (կրծում § 50), հբուլգ. *gryzą* եւ կրճել, յուն. βρύχω։ Եւ կրծեմ բայէն անբաժին է -կուրծ սա բառիս մէջ՝ կոշտա-կուրծ = կոշտա-բեկ, որով այս երկու համեմատութեանց ամէնէն գրաւիչն իսկ բոլորովին նոր լոյս մը կ'առնու. այն համեմատութիւնը կրնայ միայն այն ատեն հաստատուն մնալ՝ երբ ենթադրութեամբ ընդունինք թէ երկու բաղաձայններու մէջ գտնուող րո- մը բաւական հին ժամանակներն իսկ գրի տեղափոխութիւն մ'ունեցած ըլլայ։ Արդ այսպիսի ենթադրութիւն մը ոչ կրնայ հերքուիլ եւ ոչ ալ ապացուցուիլ։ Եթէ այն գրի տեղափոխութիւնն ունեցած է -րո- խումբը, բայց ոչ նաեւ -րե- խումբը, այն ատեն ասոր պատճառն ըլլալու են ո- ձայնաւորին մասնաւոր առանձնայատկութիւնները։ Բայց արդ՝ որովհետեւ ո- ձայնաւորին ամէնէն աչքի զարնող պատահարներուն (կորուստ եւն) մէջ բախտակից է նաեւ ե ձայնաւորը, ուստի ինչ որ կ'ընդունինք -րո- խմբի համար՝ պէտք ենք

միանգամայն ընդունիլ -րէ- խմբի համար ալ։ Չի
կրնար ապահովապէս ապացուցուիլ որ -լու- եւ
-լէ- ալ ուրիշ բախտ ունեցած չըլլան, բայց եթէ
այն՝ զոր ունեցած են -րու- եւ -րէ-։ Սակայն եթէ
նաեւ ընդունուի այս կարծիքն եւ ըստ այնմ -րու-
խմբին՝ գրի տեղափոխութեամբ -ուր- ըլլալն միայն
այն ատեն իբրեւ հնարաւոր համարուի, եթէ մի-
եւնոյն օրէնքը կարենայ նաեւ -րէ-, -լու- եւ -լէ-
խմբերու վրայ ալ տարածուիլ, ասոր դէմ ցարդ
ստուգաբանօրէն մեկնուած հայերէն բառագան-
ձին մէջ որեւէ հակառակախօս բան մը չի գտնուիր։
Հակառակ չէ լու, լիտ. blusà, վասն զի գրի տեղա-
փոխութիւնը կրնայ կրտսերագոյն ըլլալ՝ քան երկա-
ձայնաւորաց մէջ եղած s տառին կորսուիլը. իսկ
լուանամ, յուն. πλύνω, իւր մէջ *pluv- արմատաձեւը
կը բովանդակէ, ուր v գիրը միայն յարակից-մակա-
բոյս ձայն մըն էր, որով հոս -lu- իբրապէս երկու բա-
ղաձայնի մէջ չէր գտնուեր։ Գրի տեղափոխութիւնը
կրնայ աւելի նոր ըլլալ՝ քան թէ ō եւ ē ձայներուն
փոխանցումն u եւ i ի ձայներուն։ Այս ենթադրու-
թիւնը կրնար գործածուիլ յօգուտ նաեւ դուրգն
բառին ձայնական ձեւը մեկնելու, զոր արդէն շա-
տոնց համեմատած են բառերուս հետ՝ յուն. τροχός
(անիւ, անիւ բրտի) իր. droch (անիւ). Հայ. բառիս
-ն- արմատն (սեռ. դրգան) պէտք է մեկնել այնպէս՝
ինչպէս է ոտն, յուն. πούς, այսինքն՝ պէտք է բա-
ղաձայնական արմատ մ՚ընդունիլ երկարման աստի-
ճանաւ (*dhrōgh-)։ Բնականապէս այն ատեն τρο-
χός բառին եւ τρέχω, θρέξομαι բայարմատին
համար հնդեւր. dh մը պէտք է ընդունիլ։ Այսու
հանդերձ անապահով ըլլալու է հհնդկ. dhrájati
"սահի, անցանէ" բառին հետ համեմատութիւնը
(V. Henry եւ Meillet, MSL, X, 276)։ Նշանա-
կութեան կողմանէ խնամի բառերու շարք մը, որոնք
հնդեւր. t կ'ենթադրեն, (գոթ. þragjan "վազել",
կըմր. tro "դարձ, շրջան" կրնան հոն վերաբերիլ

միայն, երբ հնդեւր. բաղաձայներու փոխանակութիւն մ'ընդունինք (հմմտ. հհնդկ. hṛd-, լատ. cor կամ հինհիւս. draga “քաշել”, լատ. trahō)։ Սակայն պէտք չկայ որ հայ. դ—րճն բառը գրի տեղափոխութիւն մը բովանդակէ իւր մէջը, այլ կրնայ հնդեւր. ձայնաւորի փոխանակութիւն մը տեղի ունեցած ըլլալ։ Պոգոդին (Pogódin, ի IF. Anz. VIII, 310) կը կարծէ թէ կարելի է որ ռուս. дорога “ճանապարհ” բառն ալ անոր հետ կապ ունենայ. սով. հնդեւր. *dhōrgh- արմատական ձեւ մը հաստատուած կ'ըլլայ։ Ռուս. բառին նշանակութիւնը (նաեւ չեխ. dráha, լեհ. droga “ճամբայ”) հնագոյն ըլլալու է՝ քան Հարաւային-Սլաւեանց քով. (սլով. drága “հուն, կապան, հովիտ”, սերբ. draga “ձոր”) եւ ազգակցայ բառերուն “անիւ” նշանակութեան հետ այն համեմատութիւնն ունենալու է, զոր լատ. orbita ունի orbisի հետ, կամ ռուս. колея “շաւիղ՝” ունի հինսլ. kolo “անիւ” բառին հետ։ Թերեւս նաեւ իր. drochet “կամուրջ” իրօք droch-sétէ, բայց ի հարկէ ոչ droch “յոռի” բառէն՝ ինչպէս տեղացի ստուգաբանք կը գուշակեն, այլ droch “անիւ” բառէն, ուստի “անուոյ ճանապարհ։” (Դիւրին էր ենթադրել թէ ռուս. дроги “սայլ” drózki “կառք” նոյնպէս կապ ունենան τροχόςի հետ, բայց անհնար է ապացուցանել, վասն զի дроги բուն յոգնակի ձեւ է дрога բառի, որ է “քեղիք, գերանն՝ որ առաջին առանցքը կը կապէ յետին առանցքին հետ.” ուստի յանդգնական է հոս “անիւ” նշանակող բառի մը հաւաքականը տեսնել, թէեւ բոլորովին անկարելի ալ չէ։ Մէյէ (Meillet, Notes d'étymologie grecque, Paris 1896, էջ 3) զdrogá կը կշռէ հինսլ. držati “ունել, բռնել” բային հետ, Falk եւ Torp (Etymologisk ordbog, p. 113) զdrogá կը համեմատեն նորվէգ. drag “ապաղէն, ձիու կազմած”

ՀՀիւս. *draga* «քաշել» բառերուն հետ, կցուելով նաեւ (անդ՝ p. 109) հինսլ. drągъ «ձող», սլով. drog.)։ — Եթէ Հիւբշման (Arm. Gram. I, 494) «սրսկեմ» բայն իրաւամբ բնիկ բառ կը համարի, եւ *k̑rēsq- կամ *k̑rōsq- ձեւէ յառաջացած կը մեկնէ, այն ատեն պէտք է ընդունիլ որ հոս ալ -րէ- կամ -րօ- տեղափոխուած՝ եղած է -էր- կամ -օր-, սակայն այս բառն աւելի հաւանաբար պարսկերէնէ փոխառութիւն մըն է։ Ի հարկաւորութեան կրնայ նաեւ «սրունք» մեկնուիլ *k̑rusn- (ն- արմատ) նախաձեւէն անցնելով այս միջին ձեւերէս՝ *k̑run-, *k̑urn-. յոքնականձեւ մը՝ որ կ'աւարտէր -ōnes (հայ. -ունք) կամ -ōna վերջաւորութեամբ՝ նմանակազմութեամբ կրնար եզակւոյ ձեւին հետ համաձայնած ըլլալ, եւ անդրադոյն նմանակազմութեամբ մը՝ յոգն. սեռականի ձեւը կազմուած ըլլալ ի հոլովման համեմատ։ Նմանն՝ բայց աւելի մանուածապատ ճամբով՝ կարելի էր նաեւ «կռունկ» բառը մեկնել իբրեւ *grun- (ն- արմատ) սկզբնաձեւէ մը ծագած։ Բայց աւելի պարզ է § 10ին մէջ տրուած մեկնութիւնը՝ Հնդեւր. ձայնաւորի փոխանակութեամբ։ [Հնդեւր. -*ru*- -*ri*- -*lu*- -*li*- խմբերուն հայերէնի մէջ գրի տեղափոխութիւն մ'ունեցած ըլլալը, թէպէտ եւ ցարդ չի կրնար հերքուիլ, սակայն շատ յանդուգն ենթադրութիւն մըն է. որովհետեւ Հիւբշմանի քով գտնուած կրծեմ եւ կրճել բայերուն ստուգաբանութիւնը շատ տարակուսական է. կրծեմ բային համար ուրիշ մեկնութիւն մը տես § 50՝ վերջը. իսկ կրճել բային յուն. *βρύχω* բային հետ ունեցած կապակցութիւնն ալ՝ շատ կասկածելի է. զ*βρύχω* հբուլգ. *gryzą* բային հետ կը նոյնացընեն Fick, Vgl. Wtb. I[4] 410, Prellwitz, Et. wtb. էջ 54, Zupitza, Die germanischen Gutturale էջ 82, Mansion, Les gutturales grecques էջ 113։ Իսկ Շեֆտելովիցի

BB XXIX 54—55, 25, 29, 49 XXVIII 309 *-ru-* *-lu-*է ծագած *-ur-* *-ul-* խումբերուն. համար տուած բազմաթիւ օրինակներն՝ առանց բացատրութեան, սխալ են]։

§ 13. Առաջին հայեցուածքով իսկ կը տեսնուի որ բառասկզբի միւս ամէն բաղաձայն խումբերն ալ՝ որոնց առաջին տարրն էր միջակ, միջակ-թաւ կամ նուրբ-թաւ, նոյնպէս անհետ եղած են։ Արդէն հնդեւրոպականին մէջ այնչափ քիչ էին երկուփակ բաղաձայնէ կազմուած խումբերը (bd- եւն) որ շատ լաւ կարելի է մտածել թէ այս ամէն բառերը Հայերէնի մէջ բոլորովին կորսուած ըլլան, այնպէս որ զուր աշխատանք մ'ըլլայ հոս օրէնքներ փընտռելը։ Սակայն այն խումբերը՝ որոնց վերջին անդամը *l*, *r* կամ *m*, *n* մըն էր, այնչափ յաճախադէպ էին, որ մեծ յոյս կայ թէ ժամանակաւ կարելի պիտի ըլլայ անոնց հայերէնի մէջ առած ձեւն ցուցընել։ Հիւբշման (Arm. Gram. I, 453) լու- բառը ծագած կ'ըսէ **bhlusā* ձեւէն։ Բայց եթէ համեմատութեան առնուի նաեւ ալբ. *plešt*՝ այն ատեն պէտք է նոյնչափ հաւանական համարել նաեւ հայ. *plusā նախաձեւ մըն ալ. եւ *l*է յառաջ եղած bhի մը կորուստն անհաւանական կը դառնայ՝ երբ նկատողութեան առնուի նոյն ձայնին *r*ի մ'առջեւն եղած ատեն ունեցած ձեւը։ Չի կրնար ցուցուիլ թէ *l*ի եւ ռնգականաց քով անձայնեղ բաղաձայններուն որեւէ տեղափոխութիւն տեղի ունեցած ըլլայ. եղջիւր բառին մէջ կրկին *r*- ձայներու աննմանաձայնութիւնը կրնայ տեղի ունեցած ըլլալ տառի տեղափոխութենէն ետքն ալ (Brugmannի, Grundriss, I², 433 ըսածն՝ այն ոճով անճիշդ է, յամենայն դէպս։). [Փոխառութիւններէն (գ. օ. հողեկ+ ասոր. חבלא) չի հետեւիր որեւէ բան բուն հայերէն բառերուն համար՝ որոնց մէջ այս փոխառութիւններուն ատեն հնդեւր. *l*-խումբերը թերեւս արդէն այլակերպուած էին. իսկ

Շեֆթելովիցի BB XXIX 38, XXVIII 298 որք եւ ողջունիւն բառերուն համար տուած ստուգաբանութիւնները (լատ. flēre "լալ", լիտ. żlėjà "վերջնաշաղ՝ այգ") ուղիղ չեն (ջ տառը ż-ի չի կրնար համապատասխանել. որք բառին մասին տես Հիւբշման Հայ. Քեր. Ա. 481). ուղր բառը ըստ Շեֆթելովիցի BB XXIX 69 սանսկ. udru "մի-ստապատ ուղտ" բառէն ծագած է. բայց ուրիշ մեկնութիւն մը տես Մէյէի քով (Esquisse էջ 109)]։ Իրաց այս գրից մէջ ինծի անհաւանական չ'երեւար որ միջակի, միջակ-թաւի, նուրբ-թաւի մը եւ լ, ն, մ տառերուն միջեւ ձայնաւորակազմութիւն մը տեղի ունեցած ըլլայ եւ այս նորաբոյս ձայնաւորին որպիսութիւնը նոյն ըլլալու է անոր հետ, զոր կը տեսնենք հնդեւր. r̥, l̥, n̥, m̥ ձայներուն քով, այսինքն՝ a. Այս կերպով շատ դիւրաւ կը մեկնուի տալ բառը՝ զոր արդէն Բուգգէ (KZ, XXXII, 27) յուն. γάλως, լատ. glōs նոյնանիշ բառերուն հետ փորձեց միացրնել։ Բառիս նախնական ուղղական ձեւն անշուշտ էր *g͡lōs եւ *gl̥lōs, ուր ō ծագած էր ou է որուն տեղ միւս հոլովներուն մէջ կրնայ -ou̯- եղած ըլլալ։ Հայցական *gl̥lōm ձեւ մը հայերէնի մէջ *cal եղած ըլլալու է։ Բուգգէ կը համարի թէ այս c տառը՝ համապատասխանող արականին փոյէր յուն. δαήρ ազգեցութեամբը փ եղած ըլլայ։ Իրը աւելի պարզ մեկնութիւն կը գտնէ, եթէ g͡lōm ձեւէն յառաջ բերենք. c (= ts) իր վերջին տարրը l գրին առջեւ կորսնցուցած պիտի ըլլայ. ասկէ ետքը տեղի կ'ունենայ ձայնաւորի մը բուսումը, եւ շատ վերջերն իրենց ազդեցութիւնն ըրին վերջաձայնի օրէնքները։ Բայց պայծառ ու մեկին չէ թէ ինչու -ի- արմատ (յք. սեռ. տալից) եղած է բառը։ Բայց բաւական բացայայտ է թէ ըստ ձայնական օրինաց սպասուած հոլովումը (եզ. սեռ. *տալով եւն) պէտք էր այլափոխուիլ։ Հմմտ. արտ՝ § 16։

§ 14. Հնդեւր. զուտ նուրբերը բառամիջին ալ բաց բաղաձայն եղած են այն դիպաց մէջ՝ զոր տեսանք բառասկզբան համար։ Բայց յետոյ այս հագագայինները ձայնաւորի փոխուած են։ Ահա օրինակներ pt խմբի համար՝ եօթն. անօթի ծագած *ṇ̥-qoupti- ձեւէ՝ ազգակից հբուլգ. kypěti, ռուս. кипѣть (եռալ) լատ. cupiō (ուր pէն ծագած ւ տառը նախորդ ուին հետ ի մի ձուլուած է)։ Նոյնպէս թօթափեմ՝ կրկնաւոր ձեւ թափեմ բայի։ Կրկնաւորի ուրիշ ձեւ մըն է թաթաւեմ, հին. topiti (թաթխել, մխրճել), որուն երկրորդ թ գիրը ձայնական օրինաց համաձայն ծագած չէ։ Յամենայն դէպս նոյնպէս թեթեւ բառին՝ որ ըստ Բուգգէի (KZ, XXXII, 40) կապ ունի յուն. πτερόνի հետ, -թ- բաղաձայնը՝ զուտ ձայնական օրինաց համաձայն չէ։ Սակայն ասոր վրայ զարմանալու չէ, վասն զի հայերէնի մէջ կրկնաւորներով յարդարուած բառակազմութիւնը մինչեւ այսօրուան օրս կենդանի մնացած է (թեթեւ բառն ալ հոս կը վերաբերի?)։ Ձայնական օրինաց համաձայն չէ նաեւ թիթեռն. եթէ πέταλονի հետ կապակցութիւն ունենայ։ -qt- ընդունած եմ թ՝ բութ բառին մէջ, ալբ. butε (= փափուկ), իրլ. bocc (կակուղ) (KZ, XXXVI, 341). հոս q՝ նաեւ ւ եղած եւ իւր նախորդ ուին հետ ի մի ձուլուած ըլլալու է։ Ուրիշ օրինակ մըն է աղօթք, սեռ. աղօթից, յարակից՝ աղաչեմ, կատ. աղաչեցի եւ ամօթ, սեռ. ամօթոյ եւ յարակից ամաչեմ, կատ. ամաչեցի (խնամի գերմ. *Schmach, schmähen, schmachten?*)։ Յամենայն դէպս նման կերպով մեկնելու է նաեւ ծանօթ, յոգն. սեռ. ծանօթից (ածական), նաեւ գոյականաբար՝ ծանօթս տալ (որ յամենայն դէպս բառիս հնագոյն գործածութիւնն է)։ Ասիկա բայանուն (nomen actionis) մըն է *-ti-* վերջաւորութեամբ ճանաչեմ բայէ՝ որուն ն տառն ի հարկէ միայն ներկայական էր (կոր. ծանեայ։) Հնդեւր. qէ ծագած

այս -չ- տառը՝ այն ներկայակերտ տարրն է, որ ՍԿ մը վերջը ըստ Հայ. ձայնական օրինաց՝ իբր «» յերևան կու գայ. (լսեմ կատ. լուայ, յուն. ἔκλυον եւն). միևնոյն տարրը կը գտնուի՝ փռիւգ. αδδακετ, յուն. ἔθηκε, լատ. faciō ձևւերուն մէջ: Ի հարկէ -չ- տառին կը հանդիպինք նաև ինչ ինչ գիրաց մէջ, ուր կրնայ գուշակուիլ թէ այս -չ-ին առջև կորուսած ձայնաւորն ա ըլլալու էր. բայց աւելի նորագոյն անդրադարձացումն է, որ յայտնի կը տեսնուի նաև անկէ՝ որ նոյն ներկայակերտն ուրիշ ներկայակերտի մը հետ կը խառնակի կամ կը փոխանակուի, այսպէս՝ մեղանչեմ, կատ. մեղայ, կորնչիմ, կատ. կորեայ (բայանուն կորուստ), մարտնչիմ, կատ. մարտեայ, երկնչիմ, կատ. երկեայ, թաքչիմ եւ թաքնում (բայանուն թաքուստ), փախչիմ եւ փախնում (բայանուն փախուստ), ցասնում եւ ցասչիմ. իսկ հանգչիմ բային մէջ չ տառին առջև յամենայն դէպս է մը կար (բայանուն՝ հանգիստ). հմմտ. տակաւին մատչիմ, հատչիմ (հմմտ. հատանեմ), կառչիմ (ռ է հոս՝ կորուսած ն տառի մը պատճառաւ.) կարեմ, այսինքն "կար կարել" բայէ. հմմտ. ռուս ВЯЗНУТЬ ·խրիլ՝ մնալ, իսկ вязать "կապել" եւ — հայկական խնդիր առնելով հանդերձ — յուն. πάσχω, πείσομαι, ἔπαθον, πέπονθα չէզոք բայերու յատուկ ժամանակաց կազմութեամբ, իսկ հհնդկ. *badhnāmi* 'կապել, գերմ. *binden* եւն. նոյն արմատէն եւ նոյն իմաստի զարգացմամբ՝ նաև լատ. *offendō* "ընդհարկանիլ, բախել", *infensus* (թշնամի, դառնացեալ). defendō ի բնէ "քակել", ապա՝ "պաշտպանել" եւն): Պէտք է հրաժարիլ այժմ յառաջագոյն արտայայտած այն տեսութենէն՝ թէ հայերէնի այս -չ- ներկայակերտը պէտք ըլլայ -sq-է ծագած մեկնել: Բայական ընդլայնման աւելի մեծագոյն խոտորում մը չունի ծանօթ՝ քան օրինակի համար լատ. factio.

Ըստ այսմ վրիպական էր իմ տեսութիւնս կ—թն, կէթ, կթեմ բառերուն մասին, որոնցմէ թերեւս բոլորովին տարբեր է կ—թ, կթեմ (= այգեկութք ընել) (KZ, XXXVIII, 201 ff.)։ Ասոր հակառակը կընայ հիմայ հայ. Ն—թի կշռուիլ յուն. νήφωի հետ, եթէ նաեւ այս νήφω աղերս ունենայ գերմ. *nüchtern* բառին հետ։ Եթէ յուն. φ տառը միջակ-թաւի մը ներկայացուցիչն է, այն ատեն Ն—թի բառէն պէտք է հեռացընել թէ $g^{u}h$ (bh)+t՝ ուրիշ վերջնական արդիւնք չի տար բայց եթէ $q^{u}$ (p)+t [եւ ph+t, զոր թերեւս իրաւամբ Ն—թ—ֆէմ բայիս մէջ կը գտնէ Շեֆտելովից BB XXIX 36].

Նախնաբար -k͡t- խումբը կար ո—թ թուականին մէջ։ Ընդհանրապէս կ'ընդունուի թէ *o͡ktō ձեւը միւս "եւթն" թուականին ազդեցութեամբը նախ *optō եղած է, եւ ասկէ ծագած է՝ ըստ Բուգգէի՝ *ovtʻ, *uvtʻ, ո—թ, մինչդեռ ըստ Բարթոլոմէի աստիճանաբար զարգացման կարգն է՝ *ovtʻ, *outʻ, *oitʻ, այնպէս որ ո— ձայնական օրինաց համաձայն ըլլայ միայն հոլովներուն մէջ (սեռ. ո—թից)։ Սակայն այն թէ Բարթոլոմէի ըսած այս աստիճանաբար զարգացման կարգը միայն ուղիղն ըլլայ (Հիւբշմ. I, 484) բոլորովին խախուտ կարծիք մըն է։ Ե—թն թուականը ցոյց կու տայ թէ երկրորդական երկբարբառ Ե— մը oi չէ եղած եւ նոյնպէս երկրորդական ou երկբարբառի մը համար ալ այնպիսի զարգացում մը պահանջելու իրաւունք չունինք։

Ուստի Բուգգէի այն կարծիքը՝ թէ ou եղած է ո—, լիովին հաւանական է. այս կողմանէ *optō-մեկնութիւնն ամենեւին արգելք չունի։ Բայց ըստ ինքեան այն ալ կարելի էր, որ յամենայն դէպս կարեւոր *outʻ նախաձեւը՝ ոչ թէ *optōէն ծագած ըլլայ, այլ ուղղակի *o͡ktōէն։ Վասն զի այս զար-

գացումն եղած է՝ ի հարկէ, այնպիսի ժամանակ մը, երբ հնդեւր. k͡ տակաւին հայ. ս եղած չէր, բայց զգալապէս հեռի էր նոյն վերջակէտին հասնելէ: Այն ատեն ոչ թէ բաց բաղաձայն, այլ սկզբնափակ բաղաձայն, ոչ s-ակերպ, հապա š-անման ձայն մ՚եղած պիտի ըլլայ: Այս փակ բաղաձայնը միւս ամէն դրից մէջ տակաւին անփոփոխ մնացած էր, իի առջեւ բաց բաղաձայն՝ այսինքն ś կամ š եղած էր: Արտասանութեան դրից նկատմամբ բաց բաղաձայններն աւելի դիւրաւ կը յեղափոխուին՝ քան փակ բաղաձայնները, եւ ամէնօրեայ սովորական երեւոյթ մըն է ś կամ š ձայնի մը յեղափոխուելով χ ձայն մ՚ըլլալը: Այսպիսի փոխանցման — š-է (գրուած sk, sj) χի անցնիլը — սկիզբը կ՚երեւայ շուետերէնի մէջ (Jespersen, Fonetik, էջ 244), իսկ սպաներէնի (Jesperseո, էջ 250) եւ սլաւերէնի (Հեղինակիս գրածը՝ IF, V, 74) մէջ նման փոխանցում մ՚արդէն կատարուած է լրիւ: Երգաձայնական h (նախնական γ) տառը չեխ. hříbě (մտրուկ), հին սլաւ. žrěbę բառերուն մէջ՝ ճիշդ յիշեալ ձայնաշրջութիւնը ցոյց կու տայ, միայն թէ այս ձայնաշրջութիւնն ինքնաբոյս չէ, այլ աննմանաձայնութեամբ յառաջ եկած է. հմմտ. Gebauer, Historická mluvnice, I, 518, որ իրաւամբ կը համեմատէ գաւառական chčestí փոխ. štěstí, ռուս. счастье (բախտ): Արդ՝ եթէ *ok͡tō նախաձեւին մէջ նման ձայնափոխութիւն մը տեղի ունեցած էր՝ այն ատեն այն χէն յընթացս ձայնաշրջութեան պէտք էր որ ս մը ծագէր: Միայն կը մնայ այն խնդիրը թէ արդեօք χի այս ձայնափոխուիլը նկատելու է իբրեւ ինքնաբոյս, թէ յաջորդ ōին ազդեցութեամբը կատարուած: Եթէ այս երկու կարելիութեանց վերջինն ընդունինք, դժուարութիւն մը չ՚ելլեր անկէ՝ որ նման խումբ մ՚այլազգ զարգացած է քուոր, սեռ. քուէր բառին մէջ. վասն զի հոս կը յաջորդէր ē, e ձայնաւ-

որը (θυγάτηρ, հայց. θυγατέρα)։ Ուստր ալ (որ բստ Հիւբշմանի IF. Anz. XV, 59 նմանութիւն ունի հին անգղ. suhterga "հօրեղբօրորդի" բառին հետ) միեւնոյն ձեւագիտական կազմութիւնն եւ միեւնոյն ձայնական պայմաններն ունեցած պիտի ըլլայ, զորոնք ունէր դուստր։ Իսկ երաստանք բառին մէջ՝ եթէ կապ ունի յուն. πρωκτός բառին հետ, -k͡t- խմբին կը յաջորդէր վանկական ր̥ մը։

§ 15. Հնդեւր. ձուլ ռնգայինները բառամիջին ձայնաւորի փոխուած են նաեւ r, l, n, m ձայներուն առջեւ։ Հնդեւր. -pr-ի համար կը սպասուէր -աւր- եւ այս -աւր-ը յերեւան կ'ելլէ թերեւս հաւրան բառին մէջ. վերջաւորութիւնն այնպէս է՝ ինչպէս է ձի-ան (ն- արմատ, ձի), էշ-ան (ն- արմատ, էշ). Հաւրանշուշտ նմանութիւն ունի սա բառերուն հետ՝ լատ. caper "նոխազ", հին հիւս. hafr "քաղ, քօշ", իր. caera "ոչխար"։ Նոյնութիւնը բնականապէս կախում ունի անկէ՝ թէ արդեօք հ կրնա՞յ համապատասխանել հնդեւր. qի մը, որուն վրայ վարը պիտի խօսինք։ Կ'երեւայ թէ -pn- մը յերեւան կու գայ քաւն (սեռ. քաւնոյ) բառին մէջ, համմտ. հին հիւս. tafn "զոհ", լատ. daps, յուն. δεῖπνον δαπάνη (աւելին տես՝ Johannes Schmidt, Pluralbildung, էջ 199 եւ հետեւ.)։ Նոյնպէս է *su͡opno-է ծագած քուն բառին մէջ, համմտ. քունեմ, Meillet, Journal asiatique 1903, էջ 495։

Քանի մը որոշ դիպաց մէջ -tr- եղած է -աւր-. այսպէս՝ արաւր լատ. arātrum, հաւր (սեռ. տր. *patraiէ ծագած), յաւրու (խորթ հայր)։ Սակայն այս անցումը տեղի ունեցած ըլլալու է գոնէ յաջորդող a կամ o ձայնաւորի մ'առջեւ (այս պատճառաւ դժուար է որ ելէր բառին մէջ գտնուի φιτρός ի պարունակած վերջաւորութիւնը, այլ աւելի՝ -ro- կամ -rā- վերջաւորութիւնը, որ Հայերէնի մէջ մեծ դեր խաղացած է։) Յայտնի չէ

թէ առաջակողմեան ձայնաւորաց առջեւ ուրիշ ձեւ մըն ալ առած է. այրեմ աղերս ունի աւեստ. ātar- «հուր» բառին հետ, բայց կ'ընդունուի սովորաբար թէ յառաջ եկած է այլ եւս անգոյ *air գոյականէ մը՝ որ ծագած էր *ātērէ (այսպիսի ենթադրութիւն մը բացարձակ հարկաւոր է «այրանամ» բային համար, եթէ այս բառն այս տեղւոյ վերաբերի։) [Աղաւրէ բառին պատճառաւ հաւանական է, որ -tr-է ծագած -ւրը յաջորդող ձայնաւորներէն անկախ ըլլայ, տես Hübschmann Հայ. քեր. Ա, 414։]

Դժուար է մեկնել մօրուք բառը՝ համեմատելով հին հնդկ. çmaçru- «մօրուք», ալբ. mjekrε «մօրուք.» լիթ. smakrà «ծնօտ» իր. smech «ծնօտ» բառերուն հետ։ Ամէնէն լաւն է ընդունիլ *smak̂ru- սկզբնաձեւ մը, որուն a ձայնը՝ հայկ. նորութեան մը համաձայն (հմմտ. թոռն, քեռն) յառաջ եկած է e ձայնէ մը (թերեւս նաեւ o ձայնը՝ մօրուք փոխանակման ձեւին մէջ. սեռ. մօրուաց *movrvaç ձեւէն՝ աննմանաձայնութեամբ)։ Տարակոյս չկայ թէ րին առջեւ՝ ձայնաւորի վերածուած բաղաձայնը նախապէս աւելի k̂ մըն էր՝ քան թէ q. հոս ալ k̂ ճիշդ այնպէս ըլլալու է, ինչպէս տեսանք ոսկր բառին մէջ, տ. § 14։ Բայց չեմ գիտեր թէ -k̂re-, -k̂ri- ինչ ձեւ առած են։ Եթէ հարսն՝ որ պատմական ժամանակներէն ն- արմատ մըն է, նախնապէս -no- վերջաւորութեամբ կազմուած անցեալ դերբայ մ'եղած է, վերահաստատուած պիտի ըլլայ k̂. երկու բաղաձայնի միջեւ կորսուած կ'ըլլար՝ տ. § 20։

Կ'երեւայ թէ հնդեւր. -$q^{u}r$- բոլորովին ուրիշ արդիւնք մը կու տայ։ Այս խումբը կը գտնուէր լեարդ բառին մէջ, հհնդկ. yákr̥t։ Թէպէտ եւ Zupitza (Gutturale, էջ 14) կ'ուզէր փոխ. -$q^{u}$ի՝ հայերէնի եւ գերմաներէնի համար -p- նշանակել,

բայց միտ չէր դներ, որ Հայերէնի մէջ միջատառ -ք- մը չի կորսուիր ձայնաւորաց միջեւ կամ ձայնեղ ու փակ բաղաձայններու առջեւ։ Թէ լեարդ բառն իրօք զ^u ունեցեր է՝ թերեւս ապացուցուի նոյն իսկ Կաւկասեան լեզուաց օգնութեամբ։ Այս բարբառները կը բովանդակեն իրենց մէջ բոլորովին հնդեւր. դրոշմը կրող բառերու մեծ քանակութիւն մը, որոնք անշուշտ մեծաւ մասամբ Հայերէնէ առնուած են։ Այս բառերուն կարգին կրնայ վերաբերիլ նաեւ կիւրին. lăq «լեարդ», յոգն. lăger։ Ասի փոխ առնուած պիտի ըլլայ այնպիսի ժամանակ մը՝ երբ զ^u տակաւին ձայնաւորի փոխուած չէր, այլ գոնէ γ ձայնի աստիճանին վրայ կը գտնուէր։ γէն մինչեւ a եղած ճամբան կարճ է, հմմտ. կըմր. hela «որս», իռլ. selg (տ. Zupitza, BB. XXV, 104)։ Նախնական հոլովման համաձայն՝ լեարդ բառին -դ ձայնը՝ ըստ օրինաց էր միայն ուղղականին մէջ. -q^ur-էն -որ-ի փոխանցումը տեղի ունեցած ըլլալու է նախնապէս ուրիշ հոլովի մը մէջ։ Սակայն այն ատեն եա տարածուած է միւս բոլոր հոլովման ձեւերուն մէջ. յետոյ այս եա եւս միւս ամէն եա-ի պէս ոչ-վերջավանկին մէջ եղած է ե (սեռ. լերդի)։ — Չեմ կրնար վճռել թէ -qr-, -q^ur- խումբը տուե՞ր է տարբեր արդիւնք մը՝ ուրիշ պայմաններու մէջ (զ. օր. առաջակողմեան ձայնաւորաց առջեւ)։

§ 16. Այն՝ γի առջեւ անձայնեղ բաղաձայն ունեցող խմբերը, որոնց առաջին տարրը ձայնաւորի փոխուած չէր, յետոյ գրի տեղափոխութիւն կրած են։ Բրուգմանի քով (Grndr. I², 433) կը յիշուին օրինակներս հնդեւր. -dr-է ծագած -րտ-ի, եւ հնդեւր. -g^ur-է յառաջ եկած -րկ-ի համար։ ցանցառ տեսնուած հնդեւր. -br- ալ պէտք էր հայ. -րդ- տալ։ Ասոր հակառակը հնդեւր. -ḡr- կու տայ հայ. -րտ-։ Վասն զի արտ սեռ. արտոյ՝ որմէ են արտաւս եւ արտա- նախադաս մասնիկը,

աղբրս ունին յուն. ἀγρός, հհնդկ. ájra-s "արտ, մարգ" բառերուն հետ (Meillet, MSL, IX, 150)։ Մեյէ հոս տ տառը առեղծուածային կը գտնէ։ Այս տ ձայնը՝ գրի տեղափոխութենէն յառաջ ծագած է անով՝ որ ծր (tsr) խումբին իբր միջին տարրը կորսնցուցած է. հմմտ. տուլ, § 13։ Դառնալով գիտենք թէ հնդեւր. -bhr- եղած է -րբ, եւ -ĝhr-՝ -րձ-։ Մերձ բառին մէջ կը գտնուի -ĝhr-, յուն. μέχρι (Meillet, MSL, VII, 165:) Մերձենամ բառէն յայտնի է թէ մերձ բառին վերջաձայնը ձ մըն էր նախնաբար. Մերձենամի վերջաւորութիւնը -ենամ ծագած է -*ենամ, այս ալ -*ջնամ նախաձեւէն։ Դիւրաւ կը լուծուի արտ եւ մերձ բառերուն միջեւ տեսնուած առերեւոյթ հակասութիւնը, եթէ ընդունուի թէ հնդեւր. ĝh արդէն գրի տեղափոխութենէ յառաջ՝ ջի վրայէն ղ ձայնին փոխուած էր. ուստի գրի տեղափոխութեամբ յառաջ եկած է *մերղ, եւ ապա ըստ օրինաց § 6 մերձ։ Գալով -bhr- խմբին, արգելք մը չկայ ընդունելու թէ -bhr-՝ գրի տեղափոխութենէ յառաջ՝ բաց բաղաձայն β տառին ձայնն ունէր. միայն թէ բաց բաղաձայնը ձայնաւորի փոխուած չէր (ինչպէս որ այս հանդիպած է -pr-ի). Դիտել կու տամ որ § 3. հատածին մէջ այն եզրակացութեան հասած եմ, թէ հնդեւրոպական միջակ-թաւերը՝ հնդեւր. նըրբերէն շատ առաջ՝ բաց բաղաձայններու փոխուած են (ցորչափ որ ատոնք անփոփոխ մնացած չեն)։ Մինչեւ հիմայ վաւերական փաստ մը չէ գտնուած -dhr- խմբին համար։ -ghr- խումբը յերեւան կ'ելլէ ծոյր (սեռ. ծոյրէց) բառին մէջ, եթէ միայն ծոփ բառին հետ խնամութիւն ունենայ, ինչպէս որ Բուգգէ կ'ընդունի (KZ. XXXII, 43)։ Եթէ ասիկա ուղիղ ալ է՝ ասկէ դեռ չի հետեւիր թէ -ghr- խումբն ինչպէս զարգացած ըլլայ յետակողմեան ձայնաւորաց առջեւը։ [§ 43 հատածին համաձայն ծոյր բառը կրնայ *cari-է ծագած

ըլլալ. ուստի ընդունելի է թէ -ghr- խումբը՝ arի փոխուած եւ -ghēն ծագած a տառը նախորդ aին հետ ի մի ձուլուած է. Հմմտ. -$q^{u}r$ է ծագած (urը § 15] — Տակաւին օրինակը չէ գտնուած նուրբ-թաւ + r մը բառամիջին. արփ (ի-արմատ), արփ-ի, արփի շատ կը յիշեցընէ լատ. aprīcus "արեւոտ" բառը (որ հաւլիւ թէ որեւէ կապ մ'ունենայ aperiōի հետ), որուն հետ կապել կ'ուզուի նաեւ Aprīlis ամսանունը: Լատիներէն p փոխանակ ph՝ հոս ամենեւին արգելք չի յարուցաներ: Բայց անկարելի կ'ըլլար այս ստուգաբանութիւնն, եթէ արփ պէտք ըլլար միացընել երփն բառին հետ. Հմմտ. երփն բառին մասին § 19:

Միջնատառ -nr- խումբին եւս գրի տեղափոխութիւն կը կրէ. առն (սեռ. տրակ., ուղ. այր ձեւէն) կը համապատասխանէ յուն. ἀνδρί կամ *anrai տրականաձեւին: Յամենայն դէպս նաեւ հին -mr- խումբին տեղափոխութիւն ունեցած է, բայց ատոր օրինակ մը դեռ չէ գտնուած. (Բուգգէի KZ, XXXII, 13 համր բառին նկատմամբ ըրածը չեմ ընդունիր:) Իսկ -vr- կ'ըլլայ ր. այսպէս՝ նոր, եղբօր սեռ. եղբայր ուղղականէն. (Հմմտ. ատոր հակառակ երկիծուցանեմ՝ § 11):

Ըստ ինքեան ր խմբերուն գրի տեղափոխութիւնն աւելի հին ըլլալու է՝ քան պարսկերէնէ փոխառեալ հնագոյն իսկ բառերը. ասկէ է դարաւշ եւ դրաւշ ձեւերուն մէջ եղած տատանումը: Պարսկերէնէ փոխառեալ բառերուն մէջ տեղի ունեցած գրի տեղափոխութիւնները (աշխարհ աւեստ. xša-ϑra-, շնորհ աւեստ. xšnaoϑra-, թերեւս նաեւ [illegible] = [illegible]՝ այսինքն ժամանակաւ որ նոյն նշանակութիւնն ունէր՝ զոր ունի ապա-՝ ապա-շնորհ բառին մէջ. դարձեալ օրհնեմ, աւեստ. āfrīnāmi եւն) հնագոյն օրինաց տեսակ մը հետեւորդ ազդեցութիւնը կը ցուցընեն, որով բարձուած էր որեւէ ձայնախումբ մը՝ ուր անձայնեղ բաղաձայնի ր կը յաջորդէր:

§ 17. Միջակի, միջակ-թաւի կամ նուրբ-թաւի օրինակները շատ ցանցառ են՝ *l*, *n*, *m* տառերուն առջեւ։ Եթէ անդունդք, սեռ. անդնդոց աղերս ունի սա բառերուն հետ հին սլ. *dъno* „գետին", լիտ. *dúgnas* „գետին", իռլ. *domun* „աշխարհ", *fudomain* խորունկ", կըմր. *dwfn* „խորին", այն ատեն -*bhn*- եղած է -ուն- (բնականապէս նկատողութեան չեն կրնար առնուիլ գերմ. բով ձեւերը, զոր օրինակ՝ հհիւս. *djúpr*, գերմ. *tief*)։ Ուստի եւ -*bhn*- հանելու էր այն հետեւանքին, որուն հասած է -*pn*-։ Աստ հակառակն հնդեւր. -*u̯n*- թերեւս ն եղած է. երկան, հհնդկ. *grāvan*- „ճնշաքար". Համմտ. *u̯r* է ծագած ր՝ § 16. տարբեր է -m̥n է յառաջացած -ուն վերջաւորութիւնք (KZ, XXXVIII, 217, միջնանդամ -քն)։ Բուն բառը կրնայ բովանդակել -*dhn*- կամ նաեւ -*ndh*- (§ 18)։ Համմտ. տակաւին ընդ-ում բային մասին ըսուածը՝ § 50։

Ինչ ինչ դիպաց մէջ կ'ուզէի ձայնաւորի զարգացում մ'ընդունիլ։ Ռնգական ներկաներու քննութիւնը զիս աստ կը մօտեցընէ։ Ես միշտ այն մտաց վրայ եմ թէ ռնգական ներկայի նախահընդեւր. տիպերը ապառած են յիրականին հհնդկ. օրինակներով՝ *yunájmi*, *gr̥bhṇāmi* *çr̥ṇōmi*։ Թէպէտ եւ կարելի չէ բոլորովին ալ ուրանալ՝ թէ փոխանակ -*nā*- -*neu*- ձեւերուն կրնան հնդեւր. -*n̥nā*-, -*n̥neu*- ձեւեր ալ գտնուիլ. սակայն կ'երեւայ թէ ասոնք շատ քիչ տարածուած էին։ Աստ օրինակներ հայերէնի մէջ ալ կան, այսինքն այն՝ որ -նէմ -նում -նամ, անընդմիջական կերպով կ'աւելնան արմատին վրայ. առնէմ, կատ. առառէ (երբ ր եւ ն բաղաձայններուն միջեւ ու կամ է ձայնաւոր մը կորսուի՝ ր տառն անփոփոխ կը մնայ կամ ռ ձայնին չի փոխուիր. գարուն, սեռ. գարնան). յառնէմ, յուն. ὄρνυμαι, ուրանամ յուն. ἄρνυμαι, ջեռնում, ընկենում, դառնամ, կատ. դարձայ, բառ-

նամ, կամ. Քուրջէ (յ տառին անկմամբ կամ կորուս-
մամբ՝ ր եւ ն ձայնեղ բաղաձայններուն միջեւ. Քոռ-
նամ անշուշտ աղերս ունի գոթ. briggan բառին
հետ՝ որ *bherĝh- արմատ մ'ենթադրել կու տայ.
հմմտ. հհիւս. springa «ցատքել», յուն. σπέρ-
χομαι. այս ստուգաբանութիւնը տուած էր արդէն
իմ գործիս մէջ՝ Aspirationen i Irsk, էջ 194. ընդ-
հակառակն Stokes Sprachschatz էջ 186 *brig-
gan* բառը կը կցէ կըմր. *he-brwng* «առնել-
բառին հետ, որուն կը հաւանի նաեւ Zupitza,
Gutturale 204. Նոյն Zupitza ի KZ, XXXVI,
65՝ կ'ուզէր երկու ստուգաբանութիւններն ալ
միացընել: Բրուգման ի IF, XII, 154 եւ
հետեւ. բառձն ինձի բոլորովին անհաւատալի
կ'երեւայ. ես սոսկ կը համարիմ միայն հայկական
բառին գերմաներէնի հետ ունեցած նմանութիւնը):
Ուրիշ փաստ մըն է զգենում (զգեստ), կցուելով
ἕννυμαι բային հետ: Եւ վերջապէս կրնայ յառաջ
բերուիլ բայերու շարք մը, որոնց մէջ կ'երեւայ թէ
-ln- եղած է ղ (կամ որեւէ նմանակերպութեամբ
մը նաեւ լ): Թողում կը համաձայնի կերպապէս
լատ. tollō ի հետ (նոյնպէս tolūtim «ընդոստ»?)
իսկ նշանակութեան կողմանէ՝ աւելի կը միաբանի
սա բառերուն հետ τλῆναι եւ գոթ. þulan, հբգ.
dolēn, հին անգղ. þolian, հհիւս. þola: Հեղում
որուն բարդն է ը-եղում, ազգակցութիւն ունի բա-
ռերուս հետ՝ լիտ. pilù, pýliau, pilti «թափել».
բայց նաեւ հհնդկ. *pṛṇā́ti* «լնուլ» (Meillet, Es-
quisse էջ 83 կը սխալի, երբ կը կցէ լատ. pluit բայ-
ին հետ:) Արմատական բայեր են դարձեալ՝ կոլում,
աւելում, յ-աւելում, առ-աւելում՝ յուն. ὀφέλλω
(§ 4. Մէյէ կը սխալի, երբ յ-աւելում բայն աւելի
բառէն ածանցուած կը համարի), ցելում հհիւս.
skilja, գելում լատ. volvō, իր. fillim «ծռել» (*ll*
անշուշտ *ln* է ծագած), որով նաեւ հհնդկ. *vṛṇōti*
«քողարկել» բառն ալ կը կապուի: Այսր հակա-

ռակն ուրքելում կրնար ուրքելէն ածանցելու երեւոյթն ունենալ, ինչպէս որ կ'ընդունի Մէյէ (Esquisse, էջ 83). բայց իրականութեան մէջ անշուշտ ճիշդ հակառակն է, այսինքն՝ ուրքել կ'ածանցի ուրքելումէն. իսկ ուրքելում, կամ. ուրքելմ, ինչպէս նաեւ առելում, այցելէմ, վայելէմ, վայելում բայերը, կը վերաբերին «զօրաւոր» բայերու մէկ առանձնայատուկ տիպի մը, զոր կը ներկայացընեն նաեւ յուն. ὀφέλλω, ἰνδάλλομαι, լատ. sepeliō consulō (censeō է) հհնդկ. saparyáti։ Ցեղում, յ-եղ-յ-եղում անշուշտ կապակցութիւն ունի եղանէմի հետ։ Հայերէն -նում վերջաւորած բազմաթիւ բայերուն քով՝ սակաւաթիւ են -ում վերջաւորողները՝ առանց նախորդ ն տառին։ Արդ՝ երբ այս -ում վերջաւորած փոքրաթիւ բայերուն կարգին մեծ մասը արմատոյ-վերջաւորութիւն ունի լ կամ ղ մը, այն ատեն ասկէ հարկաւ պէտք է հետեւցընել թէ ln եղած է լ կամ ղ։ Ստուգիւ անպատեհ է այս ամէն դիպաց մէջ լատ. volvō բային տիպը փնտռել. իսկ յուն. δηλόω ի եւն ձեւին վրայ եւ ոչ մտածելու է, վասն զի այս կարգի բայերն անուններէ ածանցուած չեն։ Թէպէտ եւ լիղում = լիղանէմ, դիղում = դիղանէմ առեղծուած մը կը ներկայացընեն, բայց -ում վերջաւորող բայերուն՝ ընդական կարգի բայերուն հետ աղերս ունենալը կը հաստատեն. նոյնպէս ստեղծում = ստեղծանէմ, եւն. (հմմտ. § 50)։

— Անցողակի կ'ուզէի, իմ այս տեղ ընդունած -ln-է ղ կամ լ փոխանցման նկատմամբ, յիշեցընել թէ արդէն շատ մը ստուգաբանութիւններ ալ առաջարկուած են (յականէ յանուանէ՝ Բուգգէէ IF, I, 441), որոնք -nl-է ղ կամ լ եղած փոխանցում մը կ'ենթադրեն. ինչ ինչ դիպաց մէջ ընդունելու է դարձեալ թէ նախնական փակ բաղաձայն մը՝ որ կը գտնուէր n եւ l ձայներ բաղաձայններուն մէջ՝ կորսուած ըլլայ։ Այս բնախօսական դիպուածին ընդդիմութիւն չունիմ (հմմտ. ստոր-

ծագած *odn̥tmn̥ >*odantmn̥ ձեւէն, ուր t ին-կած է, իսկ -nm- վերածուած է -մ-ի)։ Թերեւս կարելի է այս կերպով ազատել Բուգգէի այս կամ այն ստուգաբանութիւնը (շող ստուգիւ կրնայ կապ ունենալ շանթի հետ). սակայն այս ստուգաբանութեանց մեծ մասը եւ գլխաւորաբար Բուգգէի այս դէպքին տուած բնախօսական մեկնութիւնը մէկդի թողլու է։ Այն՝ թէ արդեօք ուղ (սեռ. ուղու- կամ ուղոյ) խնամութիւն մ'ունի յուն. սա բառին հետ՝ ἔνελος · νεβρός (Niedermann, BB, XXV, ×5), անապահով է՝ ձայնաւորին պատճառաւ։ Հմմտ. Բեբող § 40։

Բայց հայերէն ռնգական ներկաներուն մեծագոյն մասը արմատոյ վերջաւոր բաղաձայնին եւ ն տառին մէջտեղ ձայնաւոր մ'ունի։ Շատ անգամ՝ -նում վերջաւորութեան առջեւ՝ այժմ կորսուած ս մ'ի յայտ կու գայ։ Այսպէս՝ երդնում, կատ. երդուայ. մարդ կը միտի հոս *dhru- արմատ մ'ընդունելու (հմմտ. հնդկ. dhruvá-s "ամուր, որոշ"), այնպէս որ թերեւս զասիկայ dhr- սկզբնատառ խմբին ապացոյց օրինակ մը համարելու է. յամենայն դէպս երդնում ամենեւին գործ չունի հսլ. rota "երդումն" բառին հետ, վասն զի վերջինս հհնդկ. vratá-m "ուխտ" բառին հետ խնամութիւն ունի (Baudouin de Courtenay, ի գիրս v. Rozwadowski, Quaestiones grammaticae et etymologicae, II, 8; Meillet, MSL, IX, 142; Lidén, Ein baltisch-slavisches Anlautsgesetz էջ 20 ի թերթին „Göteborg högskolas årsskrift“, 1899, IV.)։ Անշուշտ կը մնայ այն ենթադրութիւնը՝ որ կը համարի թէ երդնում աղերս ունի ոսետ. ard "երդումն" բառին հետ։ Բայց ասիկա շատ նշանակութիւն չունի, վասն զի ոսետ. բառն կարելի է ի հարկին dhru- կամ dhrū- ձեւէ ծագած մեկնել. ըստ կանոնի է բաղաձայններուն տեղափոխութիւնն եւ ձայնաւորի

մը նախադաս յաւելուածը (Հմմտ. Vs. Miller, Осетинскія Этюды, II, 90). Նախադաս-յաւելուածական ձայնաւորն ի Հայկէ սովորաբար է ä (ärtʿä "երեք", աւեստ. θrāyō). բայց ä եւ a շատ անգամ իրարու հետ կը փոխանակուին ոսեթերէնի մէջ եւ կը ծագին նախնական միւս ձայնաւորէ մը (հին երանեան a կամ ā.)։ Եթէ նախայաւելուածն աւելի հին ըլլար՝ քան այն նախնական ձայնաւորին բաժանումը, այն ատեն նախայաւելուածական ձայնաւորը պէտք էր կցորդ ըլլալ նաեւ այն բաժանման (որուն օրէնքները տակաւին չեն գտնուած)։ Իսկ եթէ նախայաւելուածը տեղի ունեցած է վերջատառի օրինաց ազդեցութենէն յառաջ — որուն դէմ արգելք մը չկայ, — այն ատեն կարելի չէ որեւէ առարկութիւն մ'ընել այն մեկնութեան դէմ՝ որ qard ծագած կ'ըսէ *dhrū-է (ոսեթ. d կանոնաւոր ներկայացուցիչն է հնդեւր. dh-ի)։ — Բայց նաեւ միւս -նում վերջաւորած բայերուն մէջ -ն-ին առջեւ u մ'եղած է. Ռաֆնում եւ ֆախնում բայերուն համար աւելի յայտնի կը տեսնուի անոնց Ռաֆուում եւ ֆախուում դոյականներէն. կոչնչիմ բային մէջ (բաղադրութեամբ կրկին նոյնանիշ վերջաւորութեանց՝ -նում եւ -չի-մ՝ տ. § 14) չ տառին անվթար մնալը կը ցուցընէ թէ չ եւ ն տառերուն միջեւ նախնապէս ձայնաւոր մը կար, եւ այն ձայնաւորն u մըն էր՝ կոչուում դոյականին վկայութեանն համեմատ։ — Ձայնաւոր u մըն ալ յերեւան կու գայ -ունդ վերջաւորած դոյականներուն մէջ (հմմտ. KZ, XXXVIII 219), որոնց մէջ հնդեւր. -ti- վանկն աւելցած է ներկայակերտ ռնգականացուցչով մ'աճած արմատին վրայ։ Ի Հայկէ ծնունդ եւ մնունդ անուանց քով չի տեսնուիր -նում վերջաւորող բայ մը, այլ -անիմ. իսկ ներունդ դոյականին քով կայ ոչ-ռնգական ներկայ մը՝ ներեմ։ Եղունդ բառին մասին՝ հմմտ. § 50։ Բայց այսու հանդերձ -ունդ վերջաւորութիւնը յա-

ռաջ եկած ըլլալու է -նում վերջաւորած բայերէն: Ուստի կ'երեւայ թէ հայերէն լեզուն ալ յիշատակ մը պահած է այն կէտին թէ -neu- ներկայ մը կը վերաբերի u վերջատառ ունեցող արմատի մը: Ըստ հետեւորդի կարելի է որ այնչափ յաճախադէպ գործածուած -նում վերջաւորութիւնը նէն յառաջ վերջատառ-արմատական ā մը պարունակէ:

Կը մնայ -անէմ վերջաւորութիւնը: Բնականաբար -անէմ շատ կը յիշեցընէ զյուն. -άνω. նշանակութիւնն ալ մօտաւոր կը համաձայնի, վասն զի -άνω՝ ըստ Thurneysenի (IF, IV, 81) կը ծառայէ՝ ի մէջ այլոց՝ կատարեալէ մը ներկայ կազմելուն (ἁμαρτάνω, ὀλισθάνω, բայերէս ἁμαρτεῖν, ὀλισθεῖν). Հայերէնի մէջ ալ -անէմ ճիշդ նոյն կերպ գործածութիւնն ունի (հմմտ. § 50): Բայց ասիկա անշուշտ պարզապէս պատահական զուգականութիւն մըն է, եւ դիւրաւ կը մեկնուի՝ -n- ձեւերուն հնդեւր. գործածութեան կերպէն (Delbrück, Vgl. Syntax, II, 40 եւ հետեւ., Հեղինակիս գրածն՝ ի Թերթին KZ, XXXVIII, 349 եւ հետեւ.), տեսակ մը նմանակազմութիւն այն ժառանգեալ բայերուն համեմատ, որոնք n-ով ներկայ եւ առանց nի կատարեալ ունին: Ստուգաբանական այն նոյնութիւնը՝ որ կը տեսնուի λιμπάνω եւ հայ. լքանէմ եւ անշուշտ նոյնպէս նաեւ θιγγάνω "շօշափել" եւ հայ. դիզանէմ բայերուն մէջ, մեծ նշանակութիւն մը չունի. վասն զի մէկ դէպքին մէջ հաւանական է լատ. fingō ձեւոյն (հմմտ. հին հնդկերէնի dégdhi "ծեփել, մածուցանել" բային արմատական ձեւը), եւ միւս դէպքին մէջ բոլորովին ապահով է լատ. linquō հհնդկ. riṇakti աւեստ. irinaxti բայերուն համաձայնութեամբը, թէ նախահնդեւր. ձեւը բոլորովին տարբեր էր յունական կամ հայկական տիպէն: Ի հարկէ կ'երեւայ թէ կատարեալ է -άνω եւ -անէմ ձեւերուն մէջ

եղած ձեւախօսական համաձայնութիւնը (Հմմտ. φέρω, Հայ. բերեմ). սակայն եւ այնպէս կրնայ ըլլալ որ երկու լեզուաց մէջ ալ միայն դիւրին ու կանոնաւոր ձեւերու հանելու ջանքէն յառաջ եկած ըլլայ այն. կ'երեւայ թէ -άνω շօշափման կէտեր ունի -nā- տիպին հետ (IF, II, 295. Հմմտ. ի մասնաւորի ἰσχανάω, ἐρυκανάω). ուստի ν գրին առջեւի α ձայնը կրնայ, ինչպէս որ ի Թերթին IF, II, 312 ընդունած եմ, ներկայացընել a („ə") արմատոյ-վերջաձայնը։ Ընդհակառակն Հայ. -անեմ՝ կ'երեւայ թէ աւելի իսկ աղերս ունեցած է -neu- տիպին հետ։ Արդէն վերը մատդիր ըրինք լեղում, դէզում, ոռեղծում բայերուն քով լեղանեմ, դէզանեմ, ոռեղծանեմ ձեւերուն. բաց աստի -անեմ եւ իբր կրաւորական -անիմ ձեւը յաճախ կը փոխանակուի -նումի հետ։ Ա—ելում, հեղում, ջեղում եւ ընթեռնում ձեւերուն քով իբր կրաւորական կ'անցնին նաեւ —ելանիմ, հեղանիմ, ջեղանիմ, ընթերցանիմ։ Սկսանիմ, հեծանիմ, մածանիմ, զբօսանիմ, զգեցանիմ ձեւերուն քով կան սկսնում, հեծնում, մածնում, զբօսնում, զգենում (զգենում իբր — տառումն իբր ժառանգական ձեւը կը ցուցուի)։ Այս յառաջ բերուած վերջին ձեւերը կը ցուցընեն թէ -նում վերջաւորած բայերը կրաւորական ալ կրնան ըլլալ նշանակութեան կողմանէ. եւ ինչ ինչ -նում (-ում) վերջաւորած անցողական նշանակութեամբ բայեր կրնան անփոփոխ գործածուիլ նաեւ իբր կրաւորական. բայց այնպիսի իբրեւ կրաւորական գործածուած ձեւ մը (զոր օր. հեղում) յետոյ աւելի կը բացորոշուի -անիմ-տիպն առնելով (հեղանիմ)։ Ուստի եւ -անեմ ըստ իմիք կը համարուի ներգործական ձեւ՝ -նում կրաւորականին քով։ Նաեւ հոն՝ ուր ձեւոց փոխանակութիւն չկայ, -անեմ բացորոշ ներգործական նշանակութիւն ունի եւ համեմատաբար քիչ անգամ անանցողական կամ չեզոք է. (գլխաւոր զարտու-

ղութիւն կը կազմեն շարժում ցուցընող բայերը՝ ելանեմ, իջանեմ, մտանեմ, անցանեմ, հասանեմ)։ Իսկ -նում քանի մը որոշ դիպուած մէջ կը համապատասխանէ հին միջնոյ մը, առնում ἄρνυμαι, զգենում ἕννυμαι։ Ասով կը հասնինք սա եզրակացութեան թէ -նում ծագած ըլլալու է *-numai միջին ձեւէ մը, իսկ -նեմ ընդհակառակն *-neumi ներգործական ձեւէ մը (այն ատեն -նեմ դժուարաւ ձայնական օրինաց մը համաձայն ըլլայ, վասն զի ինծի շատ հաւանական չ'երեւար վանկային բաժանումս *-ne-u̯mi եւ այն -u̯m-ն ալ մի վերածելով. հմմտ. սակայն թերեւս -u̯n-է ծագած -n-ը՝ երկան բառին մէջ՝ այս հատուածին սկիզբները)։

Կան դէպքեր, ուր հայ. -նեմ տպով բայ մը ստուգաբանօրէն կը համապատասխանէ -neu- տպով բայի մը, զոր օր. հասանեմ, հհնդկ. açnōti "հասանէ". ցուցանեմ, յուն. δείχνυμι (տես Հեղինակիս գրածն ի թերթին KZ, XXXVIII, 410. այս ստուգաբանութեան արդէն շատոնց Բադրուպանեանին կողմէն առաջարկուած ըլլալն ի գիրս Sprachwissenschaftl. Abhandlungen, II, 175, յետոյ միայն իմացայ Հանդ. Ամս. թերթին մէկ կոչմամբը (տես ՀԱ. 1903, էջ 381. Sprachw. Abhandl. պարբերականն ինծի մատչելի չէ)։ յունեմ յուն. ὄρνυμαι:

Անտարակոյս հայերէն -անեմ վերջաւորող բայ մը շատ դիպուած մէջ կը համապատասխանէ հնդկերէնի եօթներորդ դասին. բեկանեմ հհնդկ. bhanajmi, աւծանեմ հհնդկ. anajmi, բուծանեմ հհնդկ. bhunájmi, գտանեմ հհնդկ. vindāmi, դիզանեմ լատ. fingō, լքանեմ հհնդկ. riṇácmi, թերեւս նաեւ անկանեմ գոթ. sigqan եւ ուսանեմ հսլ. vykn̨ati "վարժիլ" (ուր y ծագած է unէ), լիտ. junkstu, jùnkau, jùnkti "վարժած ըլլալ"։ Ասկէ կը հետեւցընեմ թէ -neu- տիպը հայերէնի մէջ գործածուած է իբր փոխանորդ եօթներորդ դա-

սին։ Այսպէս է նաեւ սլաւերէնի մէջ (տ. Հեղինակիս գրածն ի Թերթին KZ, XXXVIII, 347 եւ հետեւ.) եւ մասամբ նաեւ յունարէնի մէջ (Հեղ., IF, II, 289.) Thurneysen, IF IV 82 կը կարծէ թէ ζεύγνυμι բային վերջաւորութիւնը հնդեւր. ընդական ներկայէն (*junégmi) բոլորովին անկախ է, ինչպէս որ զ. օր. λείπω բային վերջաւորութիւնը հնդեւր. ընդական ներկայէն (*linéqʷmi) անկախ է. բայց յայտնապէս կը սխալի. λείπω թերեւս ժառանգեալ ներկայ մըն է (*léiqʷō), որ նախալեզուի մէջ *linéqʷmi ներկայէն գործածութեան կերպով տարբեր էր. իսկ ζεύγνυμι ժառանգեալ ներկայ մը (*jugnéumi ձեւ մը *junégmiին քով) չի կրնար ըլլալ. վասն զի ընդական ներկայի տարբեր ձեւերը մի եւ նոյն գործածութեան կերպ ունէին. ուստի եւ բայ մը երկու ընդական ներկայի ձեւ. չունէր. արդ՝ եթէ ζεύγνυμι յուն. նորակազմութիւն մըն է, անշուշտ չի կրնար մեկնուիլ այս օրէնքով՝ որ այն ամէն յուն. բայերը՝ որոնք γ իբր արմատոյ-վերջնատառ ունին եւ -σ-ով անորոշ կատարեալ մը կը կազմեն, -νυμι վերջաւորած ներկայ մ'ունին. ճիշդ հակառակը՝ այս օրէնքը անշուշտ ζεύγνυμι բային համաձայն նմանակազմութեամբ յառաջ եկած է. իսկ ζεύγνυμιին վերջաւորութիւնն իրապէս փոխանորդ է հնդեւր. ընդական ներկային (*junégmi)։

Եթէ ըստ այսմ հայերէն -անէմ վերջաւորած բայերը -neu- տիպը կը ներկայացընեն, այն ատեն դիւրաւ կը հասկցուի թէ ա տառը՝ մակաբոյս ձայնաւորի զարգացում ըլլալու է՝ նի եւ ձայնաւորի չփոխուած նախորդ անձայնեղ բաղաձայնի մը միջեւ բուսած։ Կարելի չէ գտնել թէ ինչ որոշեալ օրինակներուն մէջ տեղի ունեցած է այս ձայնաւորի զարգացումը։ Ապահով է թէ այս ձայնաւորի զարգացումը նմանողութեամբ աւելի ալ տարածուած է։ Մէ-անէմ բայն իւր ա տառով կը պահէ տա-

կաւին այն ձայնագիտական ձեւին յիշատակը, որ — եւ ն գրերուն մէջտեղը առանց ձայնաւորի էր. (հմմտ. Meillet, Esquisse, էջ 32)։ Ուրեմն ձայնաւորի զարգացում մ'ընդունուելուն դէմ արգելք մը չէ, որ (ճիշդ հակառակ բառին՝ փուլ γάλως՝ § 13) ծ մնացած կ'երեւայ -անէմի առջեւ (ածանէմ, լուծանէմ, գոթ. lukan "փակել"). վասն զի այս ծ տառը կրնայ կամ բային միւս ձեւերէն վերահաստատուած ըլլալ, եւ կամ -անէմ վերջաւորութիւնը կրնայ հոս նմանողութեամբ առնուած ըլլալ։ [Եթէ ճուփ բառը ճուծանէմ բային հետ աղերս ունի, ինչպէս կը կարծէ Շեֆտելովից BB XXIX 30, ես կ'ուզէի փ տառն ծէնի առջեւ ծագած եւ նմանակազմութեամբ տարածուած մեկնել]։

Մէյէ ալ կ'ընդունի ձայնաւորի զարգացում (տես Esquisse, էջ 31 եւ հետեւ.)։ "Գոնէ, կ'ըսէ, ռնգականաւ բայերու տիպին մէջ՝ օրինակի համար հարցանել, ուրոյն արժէք մ'ունի ա. այն բարբառներուն մէջ՝ ուր շեշտը վանկով մը շեղած է եւ ուր ըստ հետեւորդի բառամիջին ա պահուած է, ինչպէս է Ղարաբաղի բարբառին մէջ, այս բայերուն -անել վերջաւորութիւնը սղած եղած է -նել, այսպէս՝ հըրցնէ՛լ՝ հարցանելէ, տեսնէ՛լ՝ տեսանելէ, եւն"։ Սակայն եթէ մէկը Մէյէի այս ակնարկած խորհրդածութիւնը ցվերջ խորհրդածէ, կը բախի դժուարութեանց, կամ գոնէ անակնկալ արդեանց կը հասնի։ Յիշեալ գաւառաբարբառաց շեշտի յետընդդէմ շեղումը, եթէ Մէյէ իրաւունք ունենար, պէտք էր այնպիսի ժամանակ մը հանդիպած ըլլալ՝ երբ ն գրին առջեւ եղած ա ձայնը դեռ լիովին զարգացած չէր, այլ մերձաւորապէս դեռ իբր -ŋ̥n- կ'արտասանուէր։ Միւս կողմանէ, եթէ § 13. հատածին մէջ փուլ γάλως բառին տուած մեկնութիւնս ճիշդ է, պէտք էր արդէն իսկ վերջատառ օրինաց ազդելու սկսելէն յառաջ՝ ա ձայնը գոնէ

բառասկզբան մէջ կատարելապէս զարգացած ըլլալ։ Ուստի ասով գրեթէ ստիպուած կ'ըլլանք գաւառական այն շեշտի յետաընդդէմ շեղումը վերջաձայնի օրինաց. սկսելու ժամանակէն ալ յառաջ դնել։ Առ այժմ այս խնդրոյս վրայ որոշ դատաստան մը չեմ ուզեր ընել։

§ 18. Կ'երեւայ թէ միջակները, միջակթաները եւ նուրբ-թաները *n*, *m*, *r*, *l*, ձայնեղ բաղաձայններէն վերջը՝ իրենց կանոնաւոր ներկայացուցիչներն ունին. այսպէս՝ գործ, յուն. ἔργον. -որթ, ՀՀնդկ. prthuka- “ձագ„ (անասնոյ). -*rĝh*- յերեւան կ'ելլէ դուրգն բառին մէջ, եթէ այս -ուր- չմեկնուի -*ru*- -*rō*- ձեւէ՝ հայկական դրի տեղափոխութեամբ (Համմ. § 12). -*rgh*- բազմաթիւ օրինակներով ապացուցուած է, զ. օր. բարձր ՀՀնդկ. brhánt-։ -rdh- կը գտնուի որդի բառին մէջ՝ հանդերձ իւր -որդ- vrddhi-ածանցովն.* եւ

* *Vrddhi բառը Հնդկերէն է եւ կը նշանակէ “աճում„ (ձայնաւորի մը), ուստի եւ ըստ ինքեան մի եւ նոյն իմաստն է՝ զոր այսօրւան օրս Գերմանացիք* Dehnstufe *“երկարման աստիճան„ ասութեամբ կը բացատրեն (այսպէս յուն.* φώρ *“գող„ բառին մէջ, կցելով* φέρω *“կրել„ բային հետ, ω ձայնաւորն երկարման աստիճան մը կը ներկայացնէ)։ Բայց սովորութիւն եղած է Հնդկերէն* vrddhi *բացատրութիւնն այն դէպքերուն մէջ պահելու, ուր Հնդեւր. ձայնաւորի մ'երկարումը կայ՝ նշանակութեան զանազանութիւն մը ցուցընելու համար, թէպէտ երկարման ձայնական հիմն յայտնի չըլլայ (զ. օր.* πωτάομαι *“թռչիլ„* πέτομαι*ին քով)։*

*Այսպէս՝ ռոդ՚ռ բառին ռռ ձայնը որովհետեւ Հնդեւր. ōէն կը ծագի եւ այս ō ձայնն ալ որդի բառին o ձայնին երկարումն է. ըստ երեւութին՝ այն երկարումն աճանցման եւ նշանակութեան փոխուելուն կը ծառայէ, առանց ձայնական հիման յայտնի ըլլալու. ուստի* vrddhi *բացատրութիւնը հոս այս իմաստով գործածուած է։*

ճիշդ այս ձեւին Ձ գիրը՝ որ միայն -dį-է ծագած կրնայ մեկնուիլ եւ ո՛չ -tį-է, ինչպէս պայծառ պիտի տեսնուի § 36 հատուածին մէջ, կը ցուցնէ թէ որդի բառին դ գիրը t տառէ մը յառաջ եկած չի կրնար ըլլալ։ Բուգգէ այս բառին մեկնութիւն մը տուած էր (Beiträge, էջ 28) որուն վրայ այս օրս ա՛լ խօսք չի կրնար ըլլալ։ Բուգգէ իւր "Լիւկիական ուսումնասիրութեանց" մէջ (Lykische Studien, I, 59) որդի բառը խնամի դրած էր յուն. ὀρθός ի. բայց նաեւ այս ստուգաբանութիւնն ա՛լ մերժելի է. վասն զի անիկա միայն որդի բառին կը յարմարի. բայց նաեւ ո՛չ՝ անոր հետ խնամութիւն ունեցող միւս բառերուն։ Հոս կը վերաբերի ամենէն յառաջ՝ այն -որդ (-ի-: -ա- բուն), որ գրեթէ պարզ ածանցական վանկ մ'եղած է, այսպէս՝ առաջն-որդ, երկր-որդ, երր-որդ եւն, յաջ-որդ, ժառանգ-որդ, միջն-որդ, բաժան-որդ, հաղ-որդ, կց-որդ, լծ-որդ, հակառակ-որդ, փոխան-որդ, աւել-որդ (աւելի բառէն), հանապազ-որդ (հանապազոր-դեան), վաղ-որդ-այն, ուղղ-որդ, պարապ-որդ, որս-որդ, թաց-որդ, յոյն-որդ. մթին է օրէ-որդ բառը։ Տարակոյս չկայ թէ ածանց մըն է նաեւ յ-որջ-որջէմ կրկնաւոր ձեւով՝ որ հայերէնի մէջ այնպէս կենդանի է։ Ինծի բաւական յաջող կ'երեւայ Wiedemannի (ի թերթին BB. XXVII, 221) առաջարկած մեկնութիւնը՝ կշռելով հսլ. *rodъ* "ծնունդ, ազգ" բառին հետ, որուն հետ աղերս ունին դարձեալ հհնդկ. *rādhnóti* "յառաջ բերէ" հհիւս. *ráða* "խորհուրդ տալ" գոթ. *rōdjan* "խօսել" հհնդկ. *r̥dháti* "յաջողի"։ Այն ատեն արմատը պէտք էր ընդունիլ մերձաւորապէս **erdh-*, **ordh-*, **redh-*, **rodh-*, իսկ ձայնաւորի երկարութիւնը — իբր երկարման աստիճան նկատելու էր։ Շատ օրինակներով ապացուցուած է *-rbh-*. որբ յուն. ὀρφανός։ Իսկ ը-խմբերուն համար քիչ օրինակ կայ։ Հնդեւր. միջակները հոս (ինչպէս գրեթէ ամէն

տեղ) շրջապատութենէ անկախ են, այսպէս՝ տղր, տղրտղր, տղրտղրել, տղրտղրալ: Մեղկ բառին կ տարր անշուշտ dvē ծագած է, համմտ. հհնդկ. mṛdú-s (Meillet, Esquisse, էջ 28)։ Յողի բառն անշուշտ խնամութիւն ունի լիթ. żalga "ձող" բառին հետ եւ յառաջ եկած է -lg-է, որուն քով կար նաեւ -lgh-, գոթ. galga "կախաղան." բառին մէջ: Միջակ-թաւերուն համար ի նկատի կ'առնուին գեղձ-ք, հսլ. žlěza, թէպէտ եւ սլաւական բառին ուրիշ մեկնութիւն մ'ալ հնարաւոր է (հբգ. chelch "ուռեցք" լատ. glans, եւն), եւ ողբ յուն. ὀλοφύρομαι։ Մաղթեմ բառին մէջ գտնուելու է նուրբ-թաւ մը, թէպէտ եւ լիթ. maldýti "խնդրել" բառին մէջ միայն -d- կամ -dh- մ'ըլլայ նախնաբար: Միջակ՝ ռնգականէ մ'ետքը՝ անկանիմ գոթ. siggan, օծանեմ հհնդկ. anájmi (հայկական ա-ի մասին վարը՝ § 44), ամպ -mb- ձեւով, մինչդեռ հհնդկ. ámbhas- "ջուր": Միջակ-թաւերէն ĝh ռնգականէ մ'ետքը շատ օրինակներով կը տեսնուի: անձուկ, գոթ. aggvus: Եթէ լանջ-ք աղերս ունի յուն. σπλάγχνα բառին հետ, այն ատեն քմականացած -ŋgh-ի օրինակ մը կ'ունենանք: Դժուար է օրինակներ գտնել ոչ-քմականացած -ŋgh-ի, -ndh-ի եւ -mbh-ի համար: Հետեւելով Բուգգէի (KZ, XXXII, 11) կարելի էր ծամեմ, ծամելի միացնել աս բառերուս հետ՝ յուն. γόμφος, հհնդկ. jámbha-s "ատամն", հհնդկ. jambháyati "մանրել" (հայ. ամ ըլլալու էր՝ հնդեւր. -m̥-)։ ասոր վրայ կրնայ աւելցուիլ նաեւ ծամ բառը (տես Հեղինակին լեհերէն գրուածքը Materyały i prace komisyi językowej akademii umiejętności w Krakowie, I, 172)։ այն ատեն -mbh- պէտք էր մ եղած ըլլալ, եւ գործիական հոլովի ձեւերն ալ՝ ինչպէս ուրմամբ ուրմն ուղղականէն, նմանակազմութիւն ըլլալու էին ձեւերուս համեմատ՝ ողբերբ, սափեղբ՝ ողբէ-ր եւ

տարրք ուղղականներէն, եւն. -ndh-ի համար՝ ի վերջոյ կրնայ թերեւս նկատողութեան առնուիլ բուն բառը՝ որ բազմակերպ կրնայ մեկնուիլ (Հիւբշմ. Ա, 430). սակայն նաեւ -dhn- (հհնդկ. budhná-) մեկնութիւնն ալ կարելի չէ մերժել։ Եթէ -mbh- եւ -ndh- մ ու ն եղած են՝ այն ատեն կը սպասուէր որ -ŋgh- միայն ŋ եղած ըլլար։ Բայց որովհետեւ երկու ձայնաւորի միջեւ -ŋ- մը գոյութիւն չունի հայերէն լեզուի մէջ, ըստ այսմ պէտք է որ այս ŋ որեւէ կերպով անդրադոյն փոփոխութիւն մը կրած ըլլայ։ Բուգգէ (ի թերթին IF, I, 454) հայ. գաւակ բառը կը կցէ յաջորդացս հետ՝ հհնդկ. jaghána- «յետոյք, ամօթոյք.» յուն. κοχώνη (որուն ο ծագած է aէ = հնդեւր. վանկականն ŋ՝ ըստ Joh. Schmidt, KZ, XXXII, 373). աւելի մերձաւոր ըլլալու է հհնդկ. jaṅghā «ոլոք». բայց սկզբնատառը քմական է՝ ըստ աւեստ. zanga- «կոճ», լիտ. żengiù «քայլեմ», որով հայերէնին ենթադրած քմառադատականը կարելի չէ ըստ կանոնի հաշտեցընել։ Ի հարկէ կարելի էր մեկնել հայ. գոմ, գոս ու ձեւերէն՝ *ghŋghmi, ghŋgh-si ծագած. իսկ *gaŋgmi, *gaŋg-si ձեւերուն մէջ միջին ձայնաւորը կորսուած պիտի ըլլար (§ 20). -ŋm- եղած պիտի ըլլար -մ- (հմմտ. մ որ յառաջ կու գայ -nm-է, ստորին բառին մէջ՝ § 17). -ŋs- կ'ըլլար -ս- (հմմտ. -ս- յառաջ եկած -ns-է ամիս բառին մէջ, եւ -ms-է ծագած՝ միս բառին մէջ.)։ Ասոր հականակը Մէյէ գոմ կը կցէ լատ. vādōր հետ (տես Conjugaison arménienne, «Բանասէր» Բ. էջ 11 արտատպութեանն)։ Եթէ կ'ընդունուի թէ -ŋgh- եղած է ŋ եւ այս ալ եղած ւ, այն ատեն հնար էր Բա— բառն իր հոմանիշ Բանջր բառին հետ միացընել, բայց միայն այն ենթադրութեամբ թէ Բանջր բառին քմականը ծագած ըլլայ հնագոյն քմառադատականէ մը, որուն ալ պատճառ եղած ըլլայ ոչ թէ ն, այլ յաջորդող ս

ձայնը (թանձր՝ ու-արմատ մըն է, սեռ. թանձու), թանձր = լիթ. tingùs "ծոյլ," հհիւս. þungr (ծանր)։ Թուալէմ կրնայ ազգակցութիւն ունենալ բառերուս հետ՝ հնդ. tęgnąti "քաշել" աւեստ. ϑanǰ- "ձգել, քաշել"։ Սակայն այս ամէնը բոլորովին անապահով է։ [Եթէ լիթ. bengiù (վերջացընեմ) pabangà (վերջ) բառերուն մէջ g տառը ghէ ծագած է, այն ատեն այս բառերս հետ՝ բաւ, բաւական, բաւեմ, բովեմ, բովանդակ՝ ազգակցութիւն կրնան ունենալ։] Վարը պիտի տեսնենք -mbh- խմբին համար ի նկատի առնուելի քանի մը ստուգաբանութիւններ (կորկամ, կամակոր՝ § 28, խումբ՝ § 28, § 29)։

Թէպէտեւ բաւական մեծ հնութիւն կրնան ունենալ արդի հայերէնի այն ռնգականներէն վերջը տեղի ունեցած ձայնաշրջութիւնները, որոնց համեմատ հին հայ. կ, ճ, ծ, տ, պ ձայներն եղած են գ, ջ, ձ, դ, բ, արեւելեան բարբառներու մէջ (Մսերեանց, Этюды, I, 101, 112), իսկ ասոր հակառակն արեւմտեան բարբառներու մէջ՝ հին հայերէնի գ, ջ, ձ, դ, բ ձայները սովորականին համեմատ երգաձայնազուրկ չեն եղած (Tomson, Лингвистическія изслѣдованія, I, 12, եւ հետեւ. Karst, Historische Grammatik des Kilikisch-Armenischen, էջ 32). եւ այս ամէնը կը նշմարուին նաեւ թէ հին ձեռագրաց եւ թէ հին մատենագրութեան հրատարակութեանց (ի մասնաւորի հնագոյն հրատարակութեանց մէջ). սակայն եւ այնպէս տառնք յամենայն դէպս անագանագոյն են՝ քան հայերէն գրոց գիւտն եւ հին հայերէնի ուղղագրութեան ճշդուիլն, ուստի եւ հոս նկատողութեան չեն առնուիր։

Տարօրինակ դժուարութիւններ կը պատճառեն ընթա- (զոր օր. ընթա-դրեմ) եւ ընդ։ Կրնար ընթա-ի համար ընդունուիլ հնդեւր. -th- (հհնդկ. atha, յուն. ἔνθα?). իսկ ընդի մէջ կրնային

այլեւայլ նախադրութիւններ եւ մակբայներ ըլլալ (յուն. ἀντί, ἔνθα, հհնդկ. adhi կամ նման ձեւ մը)։ Ենթա-ի է ձայնին նկատմամբ՝ հմմտ. § 47։

§ 19. Ուրեմն երբ հնդեւր. միջակները, միջակ-թաւերն եւ նուրբ-թաւերը՝ ր, ղ, ն, մ ձայնեղներէն վերջը՝ իրենց այլուր առած ձեւէն շատ զգալապէս չեն խտորիր կամ տարբերիր, միւս կողմանէ հաստատուն է թէ հնդեւր. զուտ նուրբերը ր, ղ, ն, մ ձայնեղներէն վերջը՝ գոնէ սովորաբար իրենց բնական ձեւերով չեն ներկայանար։ Այսպէս՝ -rq-, -rt- կ'ըլլան -րգ-, -րդ-. Երգ հհնդկ. arká-, մարդ հհնդկ. márta- (-rt- խմբին՝ որոշ դէպքի մը մէջ առած տարօրինակ ձեւին վրայ խօսելու առիթ կ'ունենանք 20. հատածին մէջ)։ [Հերկ ստուգաբանօրէն առեղծուածական բառին մասին տ. Hübschmann Ա 467]։ k̑ ձայնը րէն վերջը կանոնաւոր կը զարգանայ. հարսն լատ. procus, եւն։ Դժուար է օրինակ բերել -rp-ի համար. թէ ղ-եռամ գործ չունի լատ. serpō բառին հետ՝ ապացուցած եմ ի թերթին KZ, XXXVIII, 200: Բուդդէ (KZ, XXXII, 65) երփն բառը կը կապէ երեւիմ բային հետ (յուն. πρέπω, թերեւս նաեւ կըմր. rhith, իր. richt "ձեւ, կերպարանք", հբգ. furben "մաքրել, որբել", Osthoff, IF, VIII, 43 եւ հետեւ.). այն ատեն պէտք էր *prep-ի քով դնել նաեւ *perp- արմատաձեւ մըն ալ, որ սակայն ըստ ինքեան Հայերէնի մէջ բառասկզբին հ- ըլլալու էր։ Բայց որովհետեւ յուն. χρῶμα եւ χροιά "գոյն" նմանապէս "մորթ" կը նշանակեն եւ լատ. color "գոյն" ի բնէ "պատեան, մորթ" է, ըստ այսմ հնարաւոր է որ երփն աղերս ունենայ ոչ թէ երեւիմի հետ, այլ աւելի (թէեւ քիչ մը խնդրական) յուն. ἔρφος "մորթ" բառին հետ. այն ատեն փ տառը հնդեւր. ph-ին ներկայացուցիչն է (հմմտ. բաց ատի § 16)։

Հնդեւր. -rp-ի համար (ըստ Հնդեւր. -rq-, -rt-ի > Հայ. -րգ-, -րդ-) կը սպասուէր ամենէն յառաջ -րք-։ Ն-խմբերը՝ ր-խմբերուն հետ ըստ բաւականի համընթաց են. հինգ, լատ. quinque, դր-անդ, լատ. antae "բարաւորք"։ Ռնդականներէ ետքը k̑ին զարգացումը կանոնաւոր է, ուր յետոյ ռնդական տարրը կը կորսուի. Համանէմ Հհնդկ. açnōmi. (Բանջր բառին մասին, որ աղերս չունի Հհնդկ. tanákti "մածնուլ, թանձրանալ" բային հետ՝ տես § 18). -mp- կ'ըլլայ -մբ-. Ըմբէր՝ ինքնե ս-ազուրկ ձեւ, լատ. stupēre բառին հետ կապակցութիւն ունի՝ ըստ Մէյէի MSL, IX, 154. (Հոս կը վերաբերի Հնդեւր. -b- ձեւով փոխանակ -p-՝ անշուշտ նաեւ յուն. παρατετύμβει, παραφρονεῖ ("խելագարի") τυμβογέρων. ἐσχατόγηρως, καὶ παρηλλαγμένος τῇ διανοίᾳ ("խոր ծերութեան հասած եւ տկարացած միտք") եւ γέροντα τύμβον առ Եւրիպ., վասն զի ձայնաբանօրէն շատ հրապուրիչ չէ, այս բառերը Joh. Schmidtի հետ։ (Kritik der Sonantentheorie, էջ 65) կշռել τυφογέρων եւ գոթ. dumbs բառերուն հետ) -mp-ի մասին ուրիշ կարծիք կը յայտնէ Bugge KZ XXXII, 63։

Ինծի կ'երեւայ թէ Հնդեւր. q, t, pէ ծագած Հայ. գ, դ, բ փակ բաղաձայնները՝ ր եւ ն (մ) ձայնեղներէն ետքը՝ քանի որ միւս արտասանութեան կերպերուն փակ բաղաձայնները նոյն դիրք մէջ չեն ազդուիր, կրնան միայն անով մեկնուիլ՝ որ Հնդեւր. զուտ Նրբերը ր եւ ն ձայներէն ետքը՝ նախ բաց բաղաձայներ եղած են։ Յետոյ երգաձայնազուրկ բաց բաղաձայնը յընթացս ժամանակաց երգաձայնական եղած է։ Սակայն աւելա հանդիպած է միայն Հնդեւր. qէ ծագած x, եւ Հնդեւր. tէ, pէ յառած եկած þ, f ձայներուն, բայց ոչ Հնդեւր. k̑է սկիզբը առած ս ձայնին։

Այս տեսակէտէն առնելով՝ ամենեւին ան-հաւանական բան մը չեմ կրնար գտնել սա հին համեմատութեանս մէջ՝ գայլ հհնդկ. vṛka-s. զնախ՝ x եղած է եւ այս ալ γ ի փոխուած. յետոյ γ ալ lի յաջորդելով դէպ ի յառաջ ձայնաշրջած է (հմմտ. այս օրուան բարձր գերմաներէնի մէջ chի ձայնաշրջութիւնը, միայն թէ ոչ միայն lէ վերջը տեղի կ՚ունենայ հոս այս ձայնաշրջութիւնը, այլ նաեւ ուրիշ բաղաձայններէն վերջն ալ). ուստի -lγ- եղած է -lį- (ճշտագոյնս -lj-) եւ այս -lį̯-ն ալ՝ ինչպէս ուրիշ ամէն -lį-, եղած է յետոյ -įl-։ Յամենայն դէպս գայլ բնաւ կապ չունի իռլ. fael-chú "գայլ" բառին հետ, վասն զի այս բառն ըստ ինքեան բուն "վայրենի շուն" միայն կը նշանակէ (Zupitza, Gutturale, էջ 17)։ Նաեւ կրնամ հաւանիլ այն կարծեաց՝ որ գայլէմ կը համեմատէ հհնդ. phalgú- "կարմրին, շիկախառն" բառին հետ, բայց միայն սա պայմանաւ՝ որ հայերէնին արմատոյ վերջատառը գ գրուի։ Օրինակ չեմ կրնար գտնել -l͡k-, -lt- եւ lp խմբերուն համար։

§ 20. Միակ յատուկ դէպքի մէջ՝ rի յաջորդող նախնական t մը հ եղած կ՚երեւայ։ Ասոր ամէնէն ակնյայտնի օրինակն է մահ, սեռ. մահու, լատ. morior եւն։ Նաեւ բահ, սեռ. բահի շատոնց համեմատուած է լատ. forāre (ծակել) բային հետ. [Ուրիշ կարծիք կը յայտնէ Շեֆթելովից BB XXIX 25]. Տարակոյս եղած է թէ արդեօք այս դիպաց մէջ -rtį- թէ -rtr- ձեւն ընդունելու է. (հմմտ. Հիւբշմ. Arm. Gram. I, 409)։ Մահ կրնար նպաստաւոր ըլլալ -rtį-ի համար, վասն զի բնական կ՚երեւայ մահ կշռել հնդ. mr̥tyú-ի հետ։ Բայց այս ենթադրութիւնը շատ քիչ հաւանականութիւն ունի՝ ձայնական կողմանէ. յաջորդներուս հաւանական պիտի ցուցընենք թէ -tį- հայերէնի մէջ իբրեւ շ յերեւան պիտի գայ. դարձեալ նախորդ ր մըն ալ ստուգիւ չի կրնար ազդեցութիւն ըրած

ըլլալ -tį- խմբին զարգացման վրայ. ուստի -rtį- յանձնայն դէպս -րղ- տուած պիտի ըլլար։ Միւս կողմանէ մահ համեմատուած է նաեւ գոթ. maurþr բառին հետ. (սոոր եւ ալ հաւանութիւնս յայտնած էի ի թերթին KZ, XXXVIII, 202, 219). սակայն ասիկա հայերէնի հոլովման հետ չի համաձայնիր, վասն զի մահ՝ ո-- արմատ մըն է, իսկ եղն՝ -ի- արմատ, որով հոս -tro- վերջաւորութիւն մըն ալ չի կրնար փնտռուիլ։ Նաեւ ձայնական-բնախօսական կողմանէ ալ շատ տարակուսական է այն կարծիքը՝ թէ -rtr- փոխուելով, ըլլալու էր -րհ-։ Հայերէնին երեք բաղաձայնէ բաղկացած խմբի մը միջին բաղաձայնը կորսուած է քանի մը որոշ դիպաց մէջ. (հմմտ. եղանամ, դառնամ՝ § 17, տարած՝ § 17, արփ՝ § 16, տալ՝ § 13, գամ՝ § 18. Նոյնպէս երկրորդական խմբերուն մէջ՝ տես § 54)։ Ուրեմն -rtr- Հայերէնի ուրիշ արդիւնք մը դժուարաւ կրնար տալ, բայց եթէ -ր- կամ -ռ-։

Ըստ իմ կարծեացս՝ սոոր ճիշդ լուծման ճամբան ցոյց կու տան հ վերջաւորած պարսկերէնէ փոխառեալ բառերը՝ միանգամայն հ վերջաւորած ստուգաբանօրէն մթին բառերուն հետ։ Այս ամէն բառերն ալ կամ ո-- արմատ կամ ի- արմատ են եւ կամ առ առաւելն ի-: ո- արմատ, եւ այն՝ այս ինքնայատկութեան պատճառը — պարսկերէն չենք կրնար մեկնել. աշխարհ (ի-:ո-), հինդ. xšaϑʳa-. շահ (ի-), աւեստ. zaoϑrā-. զոհ-ք (ի-), աւեստ. zrāδa-. խոհ (ի- կամ ո--), աւեստ. xᵛarəϑa-, ժահ (ի- կամ ո--), աւեստ. *ǰaϑra-. կահ (ի- կամ ո--), աւեստ. *karəϑra-. շնորհ (ի-: ո-) աւեստ. xšnaoϑra-. պահ (ո-. բայց պահք ո-արմատ) աւեստ. pāϑra-. ռահ (ի-), նպ. rāh. ապահ (ի-), աւեստ. spāδa-. վէհ (ի-), հպ. vahyah- (Vahyazdātaի մէջ). դարձեալ գահ (ո--), որ Հին պարսկերէնի մէջ ո--արմատ մըն է (հպ. gāϑu-), եւ դէհ, որ նմանապէս կը համաձայնի հպ. dahyāuš "երկիր" բա-

ուին հետ։ Հիւբշման չէ մեկնած շան (ի- կամ ու-. անշուշտ ապահովապէս պարսկերէն), պատան (ի-. պարսկերէն, հմմտ. հհնդ. pátatram "թեւ" բայց pátati "թռչի, անկանի."), ջան (ի-. յոգն. հայց. ջանս եւ ջանոսն.) ճանապարհ (ի-: ա-) վէմ (ի- կամ ի-: ա-)։ Յամենայն դէպս ասիկա շատ տարբերութիւն չունի պարսկերէն բառերու հայերէնի մէջ առած ստորական կերպարանքէն։ Պարսկերէնի i- եւ -u- արմատները՝ ըստ կանոնի, Հայերէնի մէջ ալ ի- եւ ու- արմատներով կը փոխանակուին։ Բնականապէս ā- արմատները պէտք էին հայերէն ի-: ա- արմատներով փոխանակուիլ։ Սակայն այս վերջինը միանգամայն կանոնաւոր փոխանակութիւն է պարսկերէն a- արմատներուն, եւ շատ քիչ անգամ այս a- արմատներուն տեղ կ'անցնի ի- կամ ու- եւ կամ ո-արմատ մը։ Սակայն եւ այնպէս չի կրնար ուրացուիլ թէ պարսկերէնէ փոխառեալ՝ -ն վերջաւորած բառերուն մէջ ի- եւ ու- արմատներն անհամեմատ աւելի մեծ մաս մը կը կազմեն՝ քան թէ միւս՝ պարսկերէնէ փոխառնուած որեւէ վերջաւորութեամբ բառերուն մէջ. եւ ասիկա անով կրնար մեկնուիլ թէ նոյն իսկ հայերէն լեզուին մէջ միայն այս արմատական կազմութեան համար՝ բազմաթիւ նմոյշներ կային։

Յամենայն դէպս ծառ ու-արմատ մըն է, իսկ ջան՝ ի-արմատ, եւ եթէ ասոնց բնիկ հայերէն ըլլալն ընդունիլ ուզենք՝ պէտք ենք ասոնց այն առանձնայատուկ զարգացումը մեկնել նոյն իսկ այն ու- եւ ի ձայներէն։ Այս ճամբով այն ենթադրութեան կը յանգինք թէ -im եւ -um աւելի կանուխ ինկած կորսուած են՝ քան թէ -om եւ -ām։ Ուստի թերեւս կար ստուգիւ ժամանակ մը, երբ կ'արտասանուէր *marþ որ ծագած էր *mr̥tu-mէ. սակայն կ'ըսուէր տակաւին *marþo կամ *marþa որ յառաջացած էր mr̥tomէ։ Բոլորովին հետակորայս

ըլլալու տեղ՝ կրնայ նաեւ ընդունուիլ i կամ u ձայներու միայն երգաձայնազուրկ արտասանութիւն մ'առնուլը։ Եւ ասիկա կրնար աւելի ալ հաւանական ըլլալ. ուստի այսպէս՝ (երգաձայնազուրկ ձայնաւորները գլխագրով կը նշանակեմ.) *marþU՝ *mr̥tumĕ, նմանապէս *marþo՝ mr̥tomĕ։ Երգաձայնազուրկ ձայնաւորներէն յառաջ (կամ երբ այս ձայնաւորները ինկած էին վերջաձայնին) þ երգաձայնազուրկ մնացած է, իսկ երգաձայնական ձայնաւորի մ'առջեւ ðի փոխուած։ Յետոյ þ ձայնէն յառաջ եկաւ հ, իսկ ðէ՝ դ։ Մտադիր կ'ընեմ որ խնդիրը հոս պարզապէս վերջաձայն ո- կամ ĭ ձայնի մը երգաձայնազուրկ ըլլալուն վրայ է. Թէ արդեօք նախաշեշտ u կամ i ձայնի մ'երգաձայնազրկութիւնը (որուն մասին գրած եմ ի թերթին KZ, XXXIX, 235 եւ հետեւ.) արդէն տեղի ունեցա՞ծ էր՝ պէտք չունիմ այս մասին վճիռ տալու (սակայն կ'երեւայ թէ ատոր դէմ բան մը չկայ)։ Ստոյգ է բնականապէս թէ u եւ i երգաձայնական էին, վերջընթեր վանկին մէջ (այս օրուան՝ ինչպէս նաեւ կրնանք ապահովութեամբ ըսել՝ այն ատեննուան շեշտեալ վանկին մէջ). ուստի պէտք էր որ հոլովման մէջ þի եւ ðի միջեւ փոխանակութիւն մը յերեւան գար, որ կրնար այլեւայլ ուղղութեամբ զարգանալ (հմմտ. ո–արմատն որդ, շ–որդ, յուն. ἀρτύω.)։ Հմմտ. տակաւին § 21։

Վերջատառ ĭ կամ ո- ձայնի մը ենթադրեալ ձայնազրկութիւնը թերեւս ուրիշ հետք մըն ալ թողուցած ըլլայ։ Մէյէ (Esquisse էջ 14 եւ հետեւ.) կ'ընդունի որ վերջավանկ -tĭ կորսուած է n ձայնէն ետքը. էն հհնդկ. santi. քսան հհնդկ. viṅçatí-, յուն. εἴκοσι, Ϝίκατι, լատ. vīgintī։ Այսպէս մեկնելու է անշուշտ tի կորուստն երեսուն, քառասուն բառերուն մէջ ալ. ո- ձայնին անկորուստ մնալէն պէտք է հետեւցընել թէ ո- վեր-

ջավանկ չէր. եւ այն վերջավանկ ձայնաւորը, եթէ Հայերէնի հոլովման համաձայն դատենք (տես. երեսնից) ի մըն էր։ Այն ատեն հուն ("անցք գետոյ") յառաջ եկած ըլլալու է այնպիսի ձեւէ մը՝ որ կը միաբանէր հնդ. pắtḥ "ճամբայ" լատ. յոգն. սեռ. ponti-um ձեւերուն հետ։ (Թէ երեսուն բառը պէտք չէ յուն. τριάκονταi հետ համաձայնող ձեւէ մը մեկնել՝ ինչպէս սովորաբար կը մեկնուի, յայտնի է անոր մակբայէն, որուն ս տառը՝ նոյնակազմ ոտ ձեւէն դատելով՝ միայն tē յառաջ եկած կրնայ մեկնուիլ եւ ոչ dhē. վերջաւոր ձայնաւորը հոս e մըն էր, հմմտ. անդէն, ասդէն, որոնք ին մասնիկ կը պարունակեն։ Ուստի միայն ի ձայնէն յառաջ — եւ դարձեալ ո- ձայնէն յառաջ, որ միշտ զուգընթաց է ի ձայնին — կորսուած ըլլալու է t մը nē եոքը։

Միայն ղ եւ ր ձայնեղներէն վերջը գտնուող t ձայնին քով յայտնի կ'ըլլայ վերջաւոր ĭ կամ ŭ ձայնի մ'երդաձայնացուրկ ըլլալուն ազդեցութիւնը։ Ձայնաւորէ մը վերջը՝ ազդեցութիւն չէր կրեր t, վասն զի tէն յառաջ եկած þ ձայնը՝ արդէն երդաձայնական եղած էր, կամ թերեւս նոյն իսկ ձայնաւորի փոխուած։ Չէ ապացուցուած երդաձայնացուրկ վերջաձայն ĭ կամ ŭ ձայներուն ազդեցութիւն մ'ըրած ըլլալը հնդեւր. գ" զի վրայ. եւ անոր ունեցած ըլլալու պէտք մ'ալ չկայ։

§ 21. Նախընթաց 20. հատուածին խուզարկութիւններովը կարելի է քանի մը նոր ստուգաբանութիւններ գտնել։ Այսպէս՝ ի- արմատ մըն է ոհ։ Այս ի-արմատը պէտք էր նոյն ըլլալ հհնդկ. ṛti-ṣ "յարձակում" (հնդ. ratḥ "կռիւ") բառին հետ։ Ենթադրեալ ր ձայնը նորէն յերեւան կու գայ կրկնաւորաձեւ կազմութեանը մէջ՝ ոըհոմոր-հեմ. (կրկնութիւնն այնպէս է՝ ինչպէս է բայիս մէջ՝ ողջամողջեմ, այս է՝ ողջ., ողջողջ ձեւերէն. աւելին տես Աճառեանի եւ Մէյէի գրածներուն մէջ

MSL, X, 279. կրկնաւորի ուրիշ տիպեր կը ներկայացընեն՝ յօրձօրձեմ, վերը՝ § 18, ողո—ողեմ, յեղյեղում, որոնց պարզերն են՝ յեղում, եղանիմ, եղանակ, յեղանակ. դարձեալ՝ ողողող՝ § 18, թաթափեմ, թաթաւեմ, թիթեռն, թիթեղն՝ § 14.)։ Ահ բառին հետ աղերս ունի դարձեալ դողդողեմ իւր ածանցներովը, ինչպէս՝ դողդողական, դողդողանքն, դողդողեցուցանեմ, որ՝ անցողակի ըսելու համար՝ հայերէնի մէջ այնչափ սիրուած վերջաւորութիւններու համախոռնման գեղեցիկ օրինակ մըն է։ Ահ բառին հետ կ'ուզէի դարձեալ կապել ահեակ ալ։ Ձախ կողմն ըստ այսմ իբր "դժբախտ, ձախորդ կողմը" նշանակուած ըլլալու է. (այն ատեն ահեակ բառին հ տառը þ էն ծագած ըլլալու է. սակայն ի հարկէ լաւ չի համաձայնիր Ենսէնի մակաբերութեան հետ՝ IF, Anz. XIV, 52, որ կը համարի թէ արդէն իսկ հատեան արձանագրութեանց մէջ "ձախ" իմաստը բացատրող բառը հի նման ձայնով մը յերեւան կ'ելլէ. այս մակաբերութիւնն ինծի հասկանալի կ'ըլլայ միայն այն պարագային, երբ ենթադրուի թէ ահեակ բառին հ ձայնը ծագած է խէ. սակայն կարելի է ի հարկին մտածել թէ բաց տառի՝ չէ՞ կրնար ըլլալ որ Ենսէնի կարդացած այն բառը ահեակ բառէն բաժնենք եւ միացընենք ձախ բառին հետ, որուն սկզբնատառը ձ գիրը՝ հնդեւր. ĝ էն կրնայ ծագած ըլլալ։

Թերեւս խորհուրդ, խորհիմ, խոհական, խոհեմ ածանցած են *xorh, հնդեւր. *qhortu- արմատական բառէ մը։ Այսպիսի բառ մը կրնար հնդեւր. փոխանակման-ձեւ մ'ըլլալ՝ հհնդկ. kratu-ṣ "հոգեկան կարողութիւն" աւեստ. xratu-š, նպ. xirad "միտք" բառերուն քով (հոս կը վերաբերին նաեւ յուն. κρατύς, հհիւս. harðr):

§ 22. Արդ 9—21 հատուածներուն խուզարկութեանց իբրեւ արդիւնք՝ կրնայ հետեւեալն ըսուիլ. Հնդեւր. միջակները, միջակ-թաւերն եւ

նուրբ-թաւերը նաեւ վերը քննուած բաղաձայն-խմբերուն մէջ յընդհանուրս իրենց կանոնաւոր ներկայացուցիչներն ունին։ Սակայն քանի մը դիպաց մէջ լաւագոյն է ընդունիլ թէ միջակ-թաւերը ձայնաւորի փոխուած են. (ծոյլ՝ § 16, անդոանդ-+ եւ թերեւս նաեւ բուն՝ § 17ին սկիզբը. եթէ bh կորսուած է mէն վերջը՝ հմմտ. § 18, այն ատեն նմանաձայնութիւն մ'ընդունելու է, զոր դիւրագոյն է մտածել՝ եթէ տակաւին փակ բաղաձայն մըն էր. վասն զի m ծանօթ է՝ շրթանց փակմամբ կը կազմուի. ուստի bh հոս բաց բաղաձայն չէր եղած)։ Ասոր հակառակը հնդեւր. զուտ նուրբերը բաց բաղաձայն եղած են վերը յիշուած ամէն բաղաձայն-խմբերուն մէջ. բաց բաղաձայնները կորսուած են բառասկզբին, բաղաձայններէ վերջը՝ դարձեալ փակուած են, իսկ բաղաձայններէ յառաջ՝ ձայնաւորներու փոխուած։

§ 23. Հնդեւր. զուտ նրբերուն ինքնաբոյս (բաղաձայն խմբերէն անկախ) զարգացումը հայերէնի մէջ՝ նախ ամէն տեղ նուրբ-թաւերու տարած հաստուցած է։ Բայց այս նուրբ-թաւերը վերջէն շատ անգամ բաց բաղաձայններու փոխուած են, սակայն ըստ կանոնաց՝ որոնք արտասանութեան այլեւայլ դրից համեմատ՝ մեծապէս կ'այլակերպին։ Բաց արտասանութիւնն ամէնէն աւելի հնդեւր. k̑ի եւ pի քով տարածուած կը տեսնուի. նուրբ-թաւի աստիճանը պահուած է k̑ի համար միայն, երբ կապուած էր հնդեւր.-sի հետ (§§ 48, 51.) իսկ հնդեւր. pի քով նոյն աստիճան միայն sին առջեւ (§ 51) կը գտնուի։ Միւս կողմանէ բառասկզբին զարգացումը սովորաբար տարբեր է բառամիջին զարգացմանէն. (կ'երեւայ թէ հնդեւր. վերջաձայնը մասամբ կը համաձայնի սկզբնաձայնին հետ). միայն k̑ այս մասին պարտուղութիւն մը կը կազմէ, այնու՝ որ ամէն դրից մէջ « կ'ըլլայ։

Այս պատճառաւ k̂ի մասին բառ մ'իսկ աւելցընելու պէտք չեմ տեսներ։ Ընդհակառակն յաջորդիւ պիտի խօսիմ նախ՝ սկզբնատառ եւ ապա միջատառ հնդեւր. p, t եւ q զարգացման վրայ։

§ 24. Սկզբնատառ p ձայնը հայերէնի մէջ ÷ կ'ըլլայ։ Ասոր օրինակները կը գտնուին Հիւբշմանի Հայ. Քերականութեան ցանկին մէջ (Ա. 462—469)։ Ասոնց վրայ օրինակ մըն ալ ես կ'ուզէի աւելցընել. հուրի-ը (ի- ձեւով, ոչ թէ ե-՝ ըստ Մէյէի, տես Journal asiatique 1903 էջ 494)։ Այս բառը փոխ առնուած բառ չէ. վասն զի ո՛չ պարսիկ, ո՛չ սեմական եւ ո՛չ ալ յոյն լեզուաց մէջ կը գտնուի բառ մը՝ որ հուրի-ըի համապատասխանէ, եւ բոլորովին անհիմն է այն կարծիքն ալ՝ թէ հայերէնի բառագանձը բաւական ազդեցութիւն կրած ըլլայ անծանօթ լեզուներէ։ Սակայն միայն փոխառութեամբ չէ որ հին թուականներուն կրնան նոր թուականներ փոխանակել. այսպիսի նորութեանց ուրիշ մէկ աղբիւրն ալ է չափ մը ցուցընող բառերուն՝ թուականներու փոխանցումը։ Ասոր օրինակ մըն է դանիերէն snes, որ ծագած է հհիւս. բառէս sneis “գաւազանիկ, կտրուած ճիւղ.„ բայց snes չափանիշ մ'եղած է այնպէս՝ ինչպէս եղած է դանիերէն ol = հհիւս. vǫlr “ձող, ցուպ„. snes 20 է, ol՝ 80։ Այս չափանիշը նախնապէս ձկներու համար միայն կ'արժէր (այնչափ՝ որչափ որ փոքրիկ գաւազանով կամ երկարագոյն ցպով կը տարուի), իսկ հիմայ ի մասնաւորի հաւկթի համար ալ կը գործածուի, իսկ snes նաեւ ամէն տեսակ հաշուած առարկայից համար ալ կ'արժէ, մանաւանդ այն ատեն՝ երբ թիւն անորոշ բացատրել կ'ուզուի (en snes mand “իբր 20 մարդ.), եւ գաւառականներու մէջ snes մասամբ արդէն կանոնաւոր 20 թուականին տեղը կը գործածուի։ Վեց տարի յառաջ հայերէնագէտ Dr. St. Rożniecki այն դէպքին համար գեղեցիկ օրինակ մը հաղորդեց ինծի, զի

մատգիր ընելով՝ որ ռուս. сóрокъ «քառասուն» (որ բնականապէս չէր կրնար τεσσαράκονταէ փոխառուեալ ըլլալ,) գոյական մըն է՝ որ աղերս ունի ռուս. բառիս հետ՝ сорóчка «շապիկ». հմմ. sraka «զգեստ»: Ասիկա սկզբան անդ մորթերը հաշուելու համար գործածուած է, եւ մինչեւ ցայժմ ալ այս բոլորովին առանձնայատուկ գործածութիւնն ունի, ինչպէս որ Dal իւր բառգրքին մէջ կը նշանակէ „соболь понынѣ продается сороками или сорочкáми; каждый сорочокъ (на полную шубу) вложенъ въ чахолъ, въ сорочку“ («մինչեւ այսօրուան օրս սամուրենիք sorok-ի կամ soročók-ի ձեւով կը ծախուին. ամէն soročok (ամբողջ մուշտակ մը) պատենի մը՝ soročkaի մէջ դրուած է.): Հաշիւ ընելու այս կերպը հին հիւսիսային գրականութեան մէջ ալ կայ. Knytlinga sagaի մէջ կը պատմուի թէ Viðgautr անուն Սամլանդացի մը (Sámland Լիտուաւիա, արեւելեան Պրուշիա) Knútr Lávarðr դքսին պարգեւ ըրաւ fjóra tigu serkja grára skinna (40 serk գորշ մուշտակ) իբր վարձք անոր ընծայած հիւրասիրութեան. եւ մեկնութեան համար անմիջապէս կ՚աւելցուի թէ իւրաքանչիւր serk կ՚ընէ հինգ timbr, եւ ամէն մէկ timbr՝ 40 մուշտակ կամ մորթ: Ըստ ինքեան serkr «շապիկ» կը նշանակէ, ուստի եւ հոս (ըստ բերանացի դիտողութեան Dr. Valtýr Guðmundssonի) ռուսերէն сóрокъի թարգմանութիւն մըն է, որ տակաւին ճշդագոյն մեկնութեան մը պէտք ունի. բայց աստի՝ գուցէ թէ serkr «շապիկ» նշանակութեամբ արեւելքէն եկած բառ մըն է: Գրեթէ ակնյայտնի է որ հայ. Հարբ-ը ալ՝ դան. snes, ol եւ ռուս. сóрокъ բառերուն նման թուական մ՚եղած ըլլայ: Ես զՀարբ-ը յառաջ եկած կը համարիմ հնդեւր. *pẓrẽvẓէն, որուն մէջ կը տեսնեմ հնդեւր. փոխանակութեան ձեւ մը յուն. πεῖραρի՝ որ ծագած է *pervẓէ. դար-

ձեալ յուն. πέρας "վախճան", հհնդկ. párvan- "վարակ, եղէգի եւ ոնկերու յօդ, հատուած" párvata- "լեռ": Ի հարկէ այս մեկնութեան մէջ պէտք կ'ըլլայ Հօրէ-ր բառին հոլովումը՝ իբրեւ o- արմատ (սեռ. Հօրէ-րոյ) ոչ-նախնական նկատել, նախնաբառը պէտք էր r- արմատ մ'եղած ըլլալ, ինչպէս է օղբէ-ր, յուն. φρέαρ:

§ 25. Սակայն քանի մը դիպաց մէջ անհետ կը կորսուի սկզբնատառ p ձայնը. ոտն (բայց հետ) ոտք, հհնդկ. pŗthuka-, ուլ-ն յուն. αἱ πολιαί, ուր, յուն. πόχος եւ ուէմ՝ ըստ Բագրուպանեանի (Հանդէս Ամս. 1903 էջ 381), կապ ունի հհնդկ. բառիս հետ՝ páçyāmi "տեսնեմ" (ի հարկէ տակաւին քննելու է, թէ այս ստուգաբանութիւնը կը համաձայնի՞ արդեօք հայ. բային ինքնուրոյն խոնարհման հետ — կառ. ստացի): Վերջին երեք դիպաց մէջ՝ ըստ իմ՝ բացատրած օրինացս (KZ. XXXVI, 99) ո ձայնը յառաջ եկած է ո ձայնէն: Ուրեմն ամէն p ձայնի կորուստ՝ բոլոր հաստատուն դիպաց մէջ, տեղի ունեցած է ո ձայնին առջեւ: Թէպէտ ասիկա ըստ պատահման եղած դէպք մը կրնար ըլլալ, սակայն միտ դնելու է որ հազիւ թէ կարենայ գտնուիլ օրինակ մը՝ ուր ո ձայնաւորին առջեւի հ ձայնը կարենար հնդեւրքէն ծագած մեկնուիլ: Հնդեւր. o ձայնաւորը շատ կանուխէն ա-ի փոխուած ըլլալու է հուն բառին մէջ, հմմտ. լատ. pons. շատ անապահով է, ինչպէս Հիւբշմանն իրաւամբ դիտել կու տայ, որ հոծ կապ ունենայ բառերուս հետ՝ հհնդկ. pajrá- "յոյր, խոշոր", յուն. πήγνυμι, լատ. pangō. ձայնաւորները չեն համաձայնիր: Աւելի կրնայ իրաւունք ունենալ Մէյէ MSL VIII 154, երբ հող. սեռ. հողոյ կը համեմատէ՝ հսլ. polje "դաշտ" բառին հետ (անճիշդ է համեմատել դարձեալ ռուս. ПОЛЪ, որ ապահովապէս հհնդկ. phalaka-m "տախտակ" բառին հետ ազգակցութիւն ունի. հող բառին նշա-

նակութիւնն ալ նոյնպէս լաւ չի համաձայնիր հոլ. poljeի հետ, եւ հազիւ թէ լատ. pulvisի պատշաճի. վերջապէս ամենալաւ կերպով կը համաձայնի լատ. solumի հետ, որուն նաեւ արմատի կազմութեամբ կրնայ հող համապատասխանել։) Մէյէ կ'ուզէ զհոլանի կշռել ռուսական բառիս հետ՝ ПОЛЫЙ "բաց, պարապ". այս համեմատութիւնն ալ շատ գոհացուցիչ չէ (հմմտ. ПОЛЫЙ բառին մասին՝ KZ XXXVIII 374)։ Հիւբշման լռութեամբ կ'անցնի Մէյէի՝ հող եւ հոլանի բառերուն տուած մեկնութեան վրայէն։ Այսչափ հաստատապէս սակայն չեմ կրնար մերժել զանոնք։ Ուստի այն խնդիրը՝ թէ արդեօք p ըստ ձայնական օրինաց կը կորսուի o ձայնաւորին առջեւ, առ ժամս բաց կը թողում։

§ 26. Քանի մը դէպքի մէջ կրնար այնպէս երեւալ՝ թէ p եղած ըլլար յ։ Հիւբշման Arm. Gram. I, 409 յառաջ կը բերէ իբր օրինակ՝ ի մէջ այլոց՝ յետ, (որ հետ բառէն անբաժան է)։ Բայց բոլորովին ակներեւ է թէ յետ յառաջ եկած է՝ ի հետ ձեւէն։ Բրուգման, Grndr. I։ 510 յառաջ կը բերէ՝ ի մէջ այլոց՝ յոլով, եւ յուն. πολύςի հետ կը կշռէ (ըստ Բուգգէի KZ, XXXII, 22. յառաջագոյն ես ալ այնպէս կը կարծէի։) Այս մեկնութեան սխալ ըլլալը յայտնի կ'ըլլայ յոգն եւ յաճախ համանիշ բառերուն համեմատութենէն։ Ամենեւին տարակոյս չկայ որ այս ամէն բառերուն մէջ է նախադրութիւնը կը գտնուի։ Յաճախ բառն աճել բայէն յառաջ եկած գոյականէ մըն է՝ է նախդրիւ, իսկ յոլով պէտք չէ բաժնել հոլովէն, հմմտ. բոլոր եւ անուր բառին քով հանուր (ընդհանուր)։ Ակներեւ է թէ յուրոյ բառին մէջ ալ է նախադրութիւն մը կայ. նոյն եղանակաւ պէտք է մեկնել նաեւ յետոն ալ։ Բնիկ հայկական բառի մը սկզբնատառ յ ձայնն ընդհանրապէս միշտ է նախադրութիւնն է։ Հմմտ. § 43։ (Տարակոյս չկայ թէ այն պարագան՝ որ ամէն սկզբնատառ յ արդի հայե-

րէնին մէջ հ եղած է, պէտք չէ յարգոյ եւ յէտոյն բառերուն մեկնութեան համար գործածել։)

§ 27. Հնդեւր. սկզբնատառ t- ձայնը հայերէնի մէջ Թ կ'ըլլայ։ Համոզիչ օրինակներէն կը համարիմ յաջորդները. Թողում, լատ. tollō՝ վերը § 17. (նոյնպէս Թոյլ յ- միջամխութեամբ հանդերձ, հմմտ. § 43). այստեղ միանգամայն հոլ. tòliti "խաղաղել", լիտ. tylëti "լռել", իրլ. tuilim "քնանամ". Թանամ, կամ. Թացէ կամ կրաւորական Թացայ, հոլ. tajati "հալիլ, ձուլիլ" (կրկրկ.) տես Meillet, MSL, IX, 154. Թառն (ն- արմատ. բայց հոլովումը քեռն, հօրսն բառերուն պէս երկրորդական ըլլալու է, հմմտ. KZ XXXVIII. 217) լիտ. tarñas "ծառայ" հհնդկ. tarṇa-s "հորթ" եւն. (Wiedemann, BB, XXVII, 224). Թառամիմ, Թարշամիմ, լատ. torreō եւն. անշուշտ նաեւ Թրեմ. Թրմեմ Թրջեմ (բայանուն Թուրջ), լատ. terō, թէեւ նշանակութիւնը շատ կը տարբերի. Թէ, Թէ՝ հնդեւր. *to- դերանունական արմատին հետ կրնայ աղերս ունենալ. [ԵԹԷ, ԵԹԷ բառերին մէջ Թ տառը՝ իսկ Է, Է վերջատառն ալ պարզին ազդեցութեամբ յառաջ եկած է. ձայնական օրինաց համեմատ Է վերջատառը պէտք էր որ կորսուէր (հմմտ. Է—ԵԹ), եւ -t- միջատառը t- սկզբնատառէն բոլորովին տարբեր կերպ մը պէտք էր որ ընդունէր. Թէ եւ ԵԹԷ բառերուն ունեցած առընչութիւնն անշուշտ նոյնպէս մեկնելի է՝ ինչպէս ռուս. ТОТЪ ‚նա' եւ Э-ТОТЪ ‚սա', լատ. tantus, իգական tanta ‚այսքան' եւ ոսկերէն etanto (իգական) ‚այսքան' դերանուններուն միջեւ տեսնուած առընչութիւնը]։ Միւս ստուգաբանութիւնները՝ զորոնք ես ալ իբր ուղիղ կ'ընդունիմ, այնչափ համոզիչ չեն՝ իբրեւ ձայնական այս օրինաց փաստեր։

Անշուշտ լսուած է թէ հնդեւր. t- տառը հայերէնի մէջ իբրեւ տ- յերեւան կու գայ։ Բայց ասոր համար յառաջ բերուած օրինակներուն մէկ

մասը կրնանք ուղղակի հերքել։ Ամենուրեն նշանակութիւն չունի հայ. թող եւ հհնդկ. tántram «գործի ոստայնանկի, ոստէջ» բառերուն համեմատութիւնը (Bugge IF, I, 442.) վասն զի նշանակութիւնները չեն համաձայնիր. ասոր հակառակը թող (է- արմատ) ըստ բաւականին ճշգիւ կը համաձայնի գերմ. zahl բառին հետ, հբգ. zala. անշուշտ գերման բառը նոյն է բառերուս հետ՝ լիտ. dalis «մաս» հհնդկ. dalam «մաս, կտոր, տերեւ» կըմր. dalen, իռլ. duillen «տերեւ» իռլ. fodailim «բաժանել», որոնք յայտնապէս հնդեւր. a (եւ ոչ o) ունին, զոր սակայն չեն կրնար ընդունիլ այն լեզուաքննինները՝ որոնք aē տարբեր հնդեւր. ə մը կ'ընդունին. այն ատեն հոս ə ընդունուելու էր, վասն զի ասոնք յայտնապէս հհնդկ. dāti «հատանէ», յուն. δαίομαι «բաժանել» բառերուն մէջ գտնուող արմատին անդրագոյն զարգացմունք են։ Բայց ես կարծեմ թէ հոս պէտք է դնել նաեւ սա բառերն՝ հհիւս. tál «դաւ, խաբէութիւն», հբգ. zālōn, zālēn «դողնալ». յուն. δόλος «նենգ, դաւ» (եւ իւր ածանցները). δηλέομαι «կործանել». լատ. dēleō «ոչնչացնել» doleō «ցաւիլ»։ Ընդարձակեալ արմատը պէտք էր ըստ ինքեան հնչել. *d-el-, *d-ol- (հմմտ. δφ-έλλωի եւն մասին՝ § 17). արմատ բառին համեմատ ծագած են սա ձեւերը՝ *dē-l- *dā-l-, նաեւ *dai-l- սա երկբարբառը՝ որ հհնդկ. dáya-te «բաժանէ» բառին մէջ կը գտնուի. (սլ. dělъ «մաս», dĕliti, ուսկից փոխ առնուած է գերման բառը՝ գոթ. dails եւն.) եւ դարձեալ՝ *dī-l- *di-l- (գերմ. Zeile, Ziel, հհիւս. til «առ»)։ Դարձեալ հայ. տար (աշխարհ բառին հետ՝ տարաշխարհիկ եւն), տարա- (տարա-ժամ, տարա-պարտող) հմմտ. տարա-կոյս՝ ոմանք կշռած են յաջորդներուս հետ՝ հհնդկ. tirás «ընդ, վրայէն, մեկուսի» հպ. tara-draya «յայնկոյս ծովուն»։ Եթէ այս ուղիղ է՝

այն ատեն պէտք է ստուգիւ Օստհոֆի հետ (IF V 280[1]) ասոր փոխառութիւն մ'ըլլալն ընդունիլ։ Մինչդեռ տար կրնար շատ լաւ բնիկ հայերէն ըլլալ, վասն զի տար նման է տանիմ բային՝ տարայ կատարեալին։ Այս բային ստուգաբանութեան քննութիւնը մանաւանդ անոր համար շատ կարեւոր է հոս, որովհետեւ բնական կ'երեւայ թէ տանիմ ներկան կրնայ կշռուիլ լատ. tenēre-ի հետ։ Ակներեւ է կատարեալին ձեւէն, թէ տանիմ բայն -ē-ակազմ բայաձեւերուն հետ աղերս ունի (հմմտ. ունիմ, կատ. կալայ KZ XXXVIII 203) եւ կը նշանակէ նաեւ "բովանդակել", իտալ. ‚contenere, tenere in se'։ Այս նշանակութիւնը կրնար շատ երեւութին ուղղակի առաջնորդել լատ. tenēre բային հետ կշռելու, սակայն եթէ լաւ միտ դրուի՝ կը տեսնուի որ բոլորովին ուրիշ ուղղութեան մը կ'առաջնորդէ։ Այստեղ պէտք է նկատողութեան առնուլ ուրիշ չէզոք կիրարկութիւն մըն ալ — "կրել, համբերել" (տրականով) զ. օր. տանել վշտաց, աղքատութեան, զրկանաց։ Ինծի կ'երեւայ թէ ասիկա պայծառ կերպով կը յիշեցընէ նշանակութիւնները յուն. բային՝ χωρέω "հեռանամ, տեղի տամ" (տրականով,) "բովանդակեմ, ունիմ" (հայցականով, բայց հայցականը թերեւս յատուկ առարկան չէ, այլ աստիճանը ցուցընող. ճիշդ հայերէնի մէջ եղածին պէս)։ Ուստի եւ տանիմ բայը "բովանդակեմ, ունիմ" նշանակութեամբ ըստ ինքեան անանցողական է, իր ձեւին ալ համեմատ, ("տեղի տամ")։ Բուն անցողական նշանակութեամբ տանիմ համանիշ է ածեմ բային. սակայն տանիմ նախապէս անշուշտ "փոխադրել" կը նշանակէր (ասի արդէն անոր համար՝ որ անցողական նշանակութիւնը անանցողական նշանակութեան հետ համընթաց պէտք էր եղած ըլլալ. — թերեւս ալ տանիմ բային անցողական նշանա-

կութիւնը յառաջ եկեր է անանցողական կիրառկութենէն, նոյն բային քով եղած հայցականին պատճառած տութեան փոփոխութեամբ. այնպէս որ նախնաբար թերեւս չէր նշանակեր abducere aliquem (մէկը առնուլ տանիլ), հապա abire cum aliquo (մէկուն հետ երթալ՝ բերուիլ, — հմմտ. տասցուածս՝ ի քոյ դուռ, ի քոյ անդր դուռ): Տուրայ կատարեալը ձայնապէս ճշդիւ կը համաձայնի հնդ. dərati “պատռեց” բառին հետ. նշանակութեան կողմանէ կը համապատասխանէ մբգ. trinnen “փախչիլ” բային, որ ըստ Բրուգմանի՝ ազգակցութիւն ունի հնդ. dərati բառին հետ. (տ. IF, I, 173. Սարէյաբերդ եւ Օստհոֆ կ'ուզեն զtrinnen կցել հհնդկ. drávatiի հետ, տ. Parerga էջ 373): Եթէ տուրայ աղերս ունի հնդ. dəratiի հետ, տանէմ ալ անշուշտ կապ կրնայ ունենալ հհնդկ. dāti, dáyati “բաժնէ” բառին հետ: Այնքերեւ է թէ տուրած ածականը կապ ունի տուրայ կատարեալին հետ. -ած վերջաւորութեան մասին հմմտ. KZ XXXIX 241 եւն, այս -ած վերջաւորութիւնը թերեւս ազգակցութիւն ունի հհնդկ. -ajի հետ, որ կը գտնուի bhiṣáj- “բժիշկ” բառին մէջ, աւեստ. baēšazō “բժշկող” հմմտ. Uhlenbeck Et. Wtb. [եւ Meillet MSL VIII 302]. ասկից ածանցած են. տուրաձեւ, տուրաձոյն: Այն ատեն այս արմատին կրնայ վերաբերիլ նաեւ տալ: Ցանդգնական կ'ըլլար՝ ա-տար բառն ալ տար զուգել, սկզբան ա- համազօր դնելով յաջորդներուս՝ հհնդկ. áva- լատ. au- (auferreի մէջ) պրուշ. au- հնդ. u (ատարի միւս մեկնութեանց մասին տես Հիւբշմ. I 112, 511): — Հայ. տ ձայնին՝ հնդեւրէին հաւասար ըլլալուն իբրեւ ուրիշ օրինակ մըն ալ յառաջ կը բերուի՝ տեղի, որ կ'ըսուի թէ աղերս ունի հհնդկ. tala- “տափաստան, դաշտ(ադետին վայր)” եւ յարակից բառերուն հետ.

որ սակայն բոլորովին անկարելի է։ Վասն զի տեղի ածանցած է եդղ, սեռ. եդեղ համանիշ բառէն (սկզբնատառ ձայնաւորին կորստեան մասին հմմտ. § 64), իսկ ղ ապահովապէս ածանցական տարր մըն է։ Եդղ կրնայ հնդեւր. *sed- "նստել" արմատին վերաբերիլ. հմմտ. լատ. sēdēs, յուն. ἔδαφος. Ճիշդ այս արմատէն (որուն ներկայացուցիչ են անշուշտ հայերէնի մէջ դարձեալ նեձանիմ, KZ XXXVIII 206 եւ տրէան KZ XXXVI 98) կայ l- ածանցներու բազմութիւն մը (լատ. sella եւն)։ — Տատրակ խնամութիւն չունի հհնդկ. tittiri-s "կաքաւ" բառին եւ իր խմբին հետ, եւ ոչ ալ լատ. turturին "տատրակ", այլ ուրիշ բնաձայն կազմութիւն մըն է (ուրիշ բնաձայնանկար բառ մըն ալ է յուն. τρυγών)։ Բնաձայնանկար բառ մըն ալ է՝ տարմ (Բուգգէ, Beiträge, էջ 33,) որ լատ. sturnusի հետ անձուկ կապ մը չունի։ — Այս քննութիւններէն վերջը՝ չեմ կրնար ընդունիլ, որ տեղմ, տիղմ սեռ. տղմոյ կամ տղմի նախախնամի ըլլայ յուն. բառիս հետ՝ τέλμα "ճահիճ, մօր"։ Բայց կարելի է որ տեղմ փոխառութիւն ըլլայ τέλμαէ եւ արմատոյ կազմութեան մասին նոյնպէս ազդեցութիւն մը կրած ըլլայ՝ զոր կրած են ղոմ, սեռ. ղոմոյ "նաւակամուրջ", յուն. ζεῦγμα, Թեմ սեռ. Թեմի յուն. θέμα։ Յունարէնէ փոխառեալ բառերը մեծաւ մասամբ ուսումնական ճամբով հայերէնի մէջ առնուած են. բայց մէկ քանին պէտք է որ ժողովրդական եղած ըլլայ. (լամպար յուն. λαμπάς, կէտ յուն. χῆτος եւն)։ Տէղմ եւ տեղմ բառերուն է եւ ի ձայնաւորներուն փոխանակութեան մասին՝ տե՛ս § 40։

§ 28. Բոլորովին ապահով ըլլալու է որ հնդեւր. q եւ q" ձայներուն կրնայ համապատասխանել հայերէն սկզբնատառ ք։ Ասոր ապացոյց են ամէնէն յառաջ՝ հարցական դերանուան արմատէն յառաջ եկած քանի մ'ածանցները. քան (բաղդա-

տակամնէ մը վերջը), քանի, ու-ք (լատ. -que KZ XXXVIII, 202)։ Քանի ածանց մըն է քան ձեւին, ուստի եւ քան նախնաբար «որչափ» նշանակութիւնն ունեցած պիտի ըլլայ (այս նշանակութիւնը հիմն է նաեւ քանակ ածանցին եւ քանաքոր մակբային. հմմտ. տակաւին որքան, այնքան եւն)։ Ձայնական օրէնքները կ'արգելուն այս քան բառը համահաւասար դնել լատինական quamի հետ (հմմտ. ի «զի» *qᵘim, որ վերջաձայնը պահած է ին-ն ձեւին մէջ), որ բաց աստի՝ միայն առանձնայատուկ կիրարկութեան մը մէջ քան բառին նմանութիւն մ'ունի։ Ասոր ներհակը քան կը յիշեցնէ զլատ. quantus, որուն մէջ սովորաբար quamի ածանց մը կը տեսնուի, սակայն առանց ստիպիչ հիման։ Ես արդէն շատ մը տարի յառաջ quantusի եւ յուն. πᾶςի միջեւ առընչութիւն մը նախատեսած էի. (այժմ չեմ յիշեր որ արդեօք Կուրտիուսէ անկախ թէ ոչ. տ. Grundzüge⁵ 467). հմմտ. ἅ-παντες σύμπαντες = բոլոր. tutti quanti. Հին յունարէնի շատ մը նախադասութեանց մէջ կրնայ տեսնուիլ տակաւին պարզապէս հին յարաբերական կազմութեան ուղղակի շարունակութիւն մը. καὶ πόλλ᾽ ἔρεξεν, ὅσ᾽ οὐ σύμπαντες οἱ ἄλλοι Իլիակ. Իթ 380 բոլորովին զուգակշիռ մը կ'ըլլայ աստ μή νύ τοι οὐ χραίσμωσιν ὅσοι θεοί εἰσ᾽ ἐν Ὀλύμπῳի (Իլ. Ա, 566), եթէ πάντες մեկնուէր իբր quanti. նոյնպէս եւ κέκλυτέ μευ πάντες τε θεοί πᾶσαί τε θέαιναι Իլ. Ը, 5։ Յարաբերական դերանուան ծանօթ ձգողութիւնը (հոլովման նմանափոխութիւն) հասկանալի կ'ընէ մեզի նաեւ այսպիսի նախադասութիւններ՝ αὐτοὺς δὲ ἑλώρια τεῦχε κύνεσσιν οἰωνοῖσί τε πᾶσι Իլ. Ա, 5 իբրեւ շարունակութիւն յարաբերական կազմութեան մը։ Այս մեկնութիւնն անով աւելի հաստատուն կը համարիմ այժմ, որ նաեւ Bréal, MSL IX 26, նոյն կարծեաց կողմն կ'ելլէ եւ Ֆրանսական համա-

զօրներ յառաջ կը բերէ։ Ընդհանրապէս ամէն լեզուէ կարելի է համազօրներ յառաջ բերել. ի թերթին KZ XXXV, 397 եւ հետեւ. (տես այն տեղ հրատարակած քննութեանս § 76ին սկիզբը) իրլանդական համազօրները յառաջ բերած եմ. այսպէս հոն Molloyի Lucerna fidelium p. 67 գրքէն յառաջ բերուած օրինակը բառ առ բառ կը նշանակէ. “թէ յառնել պէտք է, որ մարդկանէ անգամ մը մահ գտած է” = “թէ ամէն մեռեալք յարութիւն պիտի առնուն։” Թէ իրլանդերէնի մէջ՝ որչափ յաճախադէպ, մանաւանդ թէ կանոնաւոր իսկ է այս ոճով ամբողջութիւնը բացատրելը՝ յայտնի է անկէ՝ որ յիշեալ օրինակները բոլորովին տարբեր նպատակաւ ժողված եմ (ընդհանրապէս յարաբերական նախադասութեան ձեւը պատկերացնելու համար) առանց օրինակներ փնտռելու յիշեալ ամբողջանիշ նշանակութեան համար։ Համմտ. տակաւին յուն. δσημέραι. Լատիներէնէ համազօր մըն է *quotīdiē* (*quotquot eunt dies* Որատ. Carm. II, 14, 5.) եւ աւելի որոշ *quotannīs*. ասոր հետ կը համեմատէ Բրուգման Die Ausdrücke für den Begriff der Totalität, էջ 10) զլիտ. *kas-vãkaras*, բայց սխալ կը մեկնէ զայս իբր “որ իրիկունն ալ որ ըլլայ։” Թէ *kas* աւելի չէզոք մտօք իմանալու է՝ յայտնի է սլաւերէնէ. լեհ. *co* կը նշանակէ “ինչ” եւ “իւրաքանչիւր ոք”։ *co kwadrans* “ամէն քառորդ ժամ”, *co raz* “ամէն անգամ”, ասկէ են նաեւ ածանցներս՝ *codzienny* “ամէնօրեայ” *coroczny* “տարեկան”. *co*ի նախնական նշանակութիւնը ընդ աղօտ կ'երեւայ տակաւին յաջորդ դարձուածներուն կամ ոճերուն մէջ՝ *co kraj to obyczaj* “ամէն երկիր ունի իւր կերպն” (բառացի՝ “որ ինչ երկիր (է), նա (է մի նոր) կերպ”), co Polak to żołnierz “ամէն լեհ (ծնեալ) զինուոր մը(ն է)” — Sörensen, Polnische Gramm. էջ 86 —։ Այսպէս նաեւ չեխե-

րէնի մէջ՝ co den "ամէն օր․" co rok "ամէն տարի". ռուս. ежедневно "ամէն օր". еже-годно "ամէն տարի" եւն. (հին սլաւերէնէս ježe "ինչ")։ Բնականապէս ոչ-հնդեւրոպական լեզուաց մէջ ալ օրինակներ կը գտնենք, այսպէս՝ եակուտերէնի մէջ (ըստ Böhtlingkի) xas kiäsä āȷy "ամէն իրիկուն." բառական՝ "քանի երեկոյ հաշուեալ." եակ. xas = սամ. kač "քանի"։ Այսպիսի համազօրներ ընդհանրապէս ամենեւին չեն սպառիր։

Ընդհանուր կարծիքը՝ թէ հնդկ. çáçvant-ի հետ աղերս ունի ἅπας, մերժելի է, ինչպէս վճռած է Bechtel, Hauptprobleme 140, արդէն çáçīyān բաղդատականին պատճառաւ։ Բրուգման (Die Ausdrücke für den Begriff der Totalität էջ 26 եւ հետեւ.) ղçaç- յարմարապէս յառաջ կը բերէ *sm̥k̑ē եւ կը համեմատէ ալբ. g'iϑε "ամենայն". միայն կը սխալի այն կէտին մէջ՝ որ ալբաներէնի i ձայնը յառաջ եկած կը համարի ŋ̊ē (ընդհակառակն շատ լաւ -em-է յառաջ կրնայ բերուիլ)։ Սակայն ἅπας հաւասար դնել çáçvantի հետ՝ անկարելի է, ոչ միայն ձեւախօսօրէն, այլ նաեւ ձայնապէս ալ. վասն զի նախ՝ հնդիկ բառին վերջաւորութեան մէջ յայտնապէս հնդեւր. -vent- կայ, մինչդեռ յոյն բառին մէջ կրնայ միայն հնդեւր. -ant- (կամ -ānt-) պահուած ըլլալ, զոր կ'ընդունի նաեւ Բրուգման, էջ 62 (թէ -εντ-:-ατ- փոխանակութենէ մը -αντ- խառնուրդ կազմութիւնն յառաջ եկած ըլլայ, իրապէս պատշաճ նմանօրինակ մը չկայ), բայց երկրորդ (ինչ որ աւելի կարեւոր է) որովհետեւ -k̑v- յունարէնի մէջ պէտք էր -ππ- տալ։ Թէպէտ եւ շրջանի մը համար՝ ուր ὀππόσος եղած է պարզ ὀπόσος, շատ աչքի զարնող չէ ἅπας բառին պարզ π տալը, բայց այն շրջաններուն եւ գաւառաբարբառներուն մէջ՝ որոնք կը ճանչնային ὀππόσος եւ k̑vē ծա-

գած -ππ-՝ բառերուն մէջ τὰ ππάματα, Θιόππαστος եւն (Բրուգմ. էջ 62), այնպէս աչքի զարնող է ἅπᾱςի պարզ π տառը՝ որ բոլորովին անկարելի կ'ըլլայ πᾶςի համար k͡v- բովանդակող սկզբնաձեւ մ'առաջարկել: (Բնականապէս անկարելի է նաեւ Բրէալի հետ նոյնացընել ἅ-πᾱςի եւ δ-πόσοςի առաջին վանկերը. եւ ἁ- ձայնին մէջ կը տեսնեմ հնդեւր. sm̥- մը, եւ կը համարիմ թէ ἅ-πᾱς, ἅπαντες յառաջ եկած են σύμ-παντεςէ, σύμπαντες բառին մէջ σύν մասնիկը նախնապէս ինքնակաց անկախ մակբայ մըն էր, ճիշդ այնպէս՝ ինչպէս πρό-՝ πρό-παςի մէջ (Բրուգմ. էջ 63). բայց երբ σύμπαντες կենդանի լեզուին մէջ իբրեւ բարդ բառ մը սկսաւ զգացուիլ, յառաջ եկաւ ἅπαντες ձեւն իբրեւ տեսակ մը սրբագրութիւն): Ընդհակառակն ոչինչ ընդդէմ է այն ենթադրութեան թէ πᾶς կապ ունենայ լատ. quantusի հետ: Թէպէտ Բրուգմանն էջ 61 կ'ուզէ զπᾶς միացընել բառերուն վերջին տարեր հետ՝ ἔμ-πης “այսու հանդերձ„ եւ παμ-πήδην “բոլորովին„. բայց O. Հոֆման (BB XXVI, 143 եւ հետեւ.) աւելի ուղիղը սորվեցուցած է ἔμπᾱν ἔμπᾱς ἔμπαի մասին՝ երբ այս ձեւերը կը համեմատէ լատիննականներուն հետ *inquam*, *inquis*, *inquit*: Ասոր հայերէն նմանօրինակ մըն ալ կրնար յառաջ բերել (քամ, քաս, քայ, հմմտ. Հիւբշմ. Arm. Gramm. I, 427, որմէ աւելորդ տեղ կը բաժնէ զքայ կամ քա ‚quidem‘): Իսկ παμπήδην այնպէս դժուարաւ կրնայ կրկնական կազմութիւն ըլլալ, πάμ-πανυ կամ πάμ-πολυ ձեւերու պէս. παμ-πήδην կապակցութիւն ունենալու է παμ-πησίᾱի հետ: Ասոր հակառակը πάμπανի մէջ յերեւան կ'ելլէ իրական կրկնութիւն մը. բայց այս կրկնութիւնն աւելի նոյն բառին դերանունական ծագման փաստ մըն է (հմմտ. լատ. *quotquot*, *quisquis* եւն): Գալով

ձեւին՝ հնդեւր. *qᵘant- կամ qᵘānt- նման կազմութիւն մըն է այնպէս՝ ինչպէս է *qᵘi- արմատէն ածանցած հհնդկ. kíyant- „quantus“: Հայերէն բառին մասին պէտք է ընդունիլ, որ կամ *qᵘānt չեզոքէն ծագած է եւ կամ ի- հոլովման փոխանցած. (վերջաձայն -ti վանկի անկման մասին հմմտ. § 20):

Անհերքելի է նոյնպէս անշուշտ նաեւ ստուգաբանութիւնս՝ քերեմ, քորեմ (ձայնաւորի փոխանակման նկատմամբ հմմտ. φέρω:φορέω) համեմատուած յուն. χείρω բառին հետ (Մէյէ MSL VIII, 154). քերեմ կը նշանակէ նաեւ "գրել", ուսկից է քերական. խնամի է նաեւ քերթեմ. այս բառին խնամութիւնը քերեմի հետ՝ կը տեսնուի Թերեւս տակաւին նաեւ փոխաբերական իմաստին մէջ (քերական-ութիւն եւ քերթող-ութիւն բառ ինքեան նկատուելու են իբր գրելու ճարտարութեան երկու կողմերն, դպրութիւնք). քերթեմ ազգակցութիւն ունի յաջորդ բառերուս հետ՝ հհնդկ. kártāmi "կտրեմ", լիտ. kertù "կոփեմ", հսլ. črěsti čṛta ‚τέμνειν‘ (հատանել) črta ‚linea‘, ռուս. чертить „գծագրել" начертáть "գրել", լատ. cortex եւն: Ի հարկէ պէտք կ'ըլլայ հայերէն բառին մէջ հնդեւր. th դնել (եթէ ճիշդ չէ քերդեմ երկրորդական ձեւին ուղղագրութիւնը): § 50ին մէջ քերծում բառին պիտի վերադառնամ: Մէյէ (MSL X 270) կշռած է դարձեալ քէլ, հհնդկ. kará-s "ձեռք", karásna-s "բազուկ": Այն ատեն kará-s չի կրնար կապ ունենալ kṛnotiի "առնէ" բային հետ, ինչպէս Uhlenbeck կ'ուզէ, բաց ասկէ պէտք էր ē:a փոխանակում մ'ընդունիլ, որուն դէմ եմ՝ իմ տեսութեանցս համեմատ (KZ XXXVI, 85) առարկելու բան մը չեմ կրնար ունենալ, բայց ə-դրութեան կողմնակիցները (որոնց կարծեկից է եւ Մէյէ) պէտք են այն ստուգաբանութիւնը մերժել: Ո՛չ քէլ եւ ո՛չ ալ քոր բառին

տուած իմ մեկնութիւնս (իռլ. carric "քար, վէմ" KZ XXXVIII, 202) իբրեւ փաստ կրնան մեծ ծանրակշռութիւն ունենալ՝ խնդրոյ նիւթ եղող ձայնական օրինաց համար. Մէյէի առաջարկած քանի մը ստուգաբանութիւնները զանց կ'առնում, վասն զի զանոնք յայտնապէս սխալ կը համարիմ: Կ'երեւայ թէ դիւրին ալ չէ առ այժմ ատաղձը զգալապէս բազմացընել: Քեղչ եւ քեղանամ յիշեցընել կու տան զյուն. χέλλω, νῆα χέλσαι եւ χέλης "սրընթաց զբօսանաւ" (տարակուսական է թէ այս եղելոյ վերաբերին նաեւ հսլ. čl̥nъ "կուր". հբգ. scalm "նաւ". եւ թէ հին անգղ. helma "ղեկ. բառն ալ հոս աւելցընելու է աւելի տարակուսական է, վասն զի ստուգիւ թէ այս՝ եւ թէ՛ հհնդկ. karṇa-s "ղեկ" բառին սկզբնական նշանակութենէն պէտք է սկսիլ, որ է "ձեռնադործի, կռուան ձեռաց, բռնատեղ", հմմտ. Uhlenbeck Et. Wtb.): Քնին (ասկից է քննեմ, որմէ ալ յառաջ եկած է քննին գրութիւնը) աղերս չունի յուն. τίνω ի հետ: Քաջեմ եւ քաջոր կը յիշեցընեն զյուն. χαχός, լատ. cacāre, բայց ասոնք կրնան միայն այն ատեն միացուիլ, երբ χαχός բաժնուի լիտ. keñktiŧ "վշտացընել" եւ զcacāre լիտ. sziktiŧ "աղբել, քաքնել". ասոր հակառակն զcacāre կարելի էր միացընել ռուս. բառիս հետ кáка "կեղտ, աղբ". այն ատեն յուն. χαχός "գէշ, վատ" բառին համար ընդունելու է իբր նախնական նշանակութիւն այն՝ որ ընդունուած է դան. skidtի ,χαχός' համար (skide "քաքնել" բայէն): [Քնին եւ քաջեմ բառերուն մասին ուրիշ կարծիք կը յայտնէ Շեֆտելովից BB XXIX, 14, 47.]

Վերոյիշեալ բառերուն շարքէն իբրեւ բոլորովին համոզեցուցիչ կը համարիմ միայն $q^uo$- դերանունական արմատի ածանցներն եւ χείρωի հետ կշռուած բառերը, ուստի եւ խիստ առնելով՝ միայն երկու օրինակ: Բայց այս երկու օրինակը՝

բառ իմ տեսութեանս, ինչպէս մեծ ծանրակշռութիւն ունի, որ աւելի նուազ արժէք ունեցած կ'երեւայ այն 28 թուէ բաղկացած ցանկը, որով կը փորձէ Բուգգէ (KZ, XXXII, 48 եւ հետեւ.) ապացուցանել թէ հնդեւր. գ- եւ գ"- կը ներկայացընէ հայ. կ-։ Իսկ եթէ Բուգգէի ցանկին մէջէն ջնջուին այն ամէն ստուգաբանութիւնները, որոնք որեւիցէ կերպով ձայնական օրինաց հակառակ են եւ կամ ձայնական դժուարութիւններ կը պատճառեն, ինչպէս նաեւ այն բոլոր ստուգաբանութիւնները՝ որոնց տեղ դիւրաւ ուրիշ ձայնականօրէն դժուարութիւն չպատճառող ստուգաբանութիւններ կրնան դրուիլ, այն ատեն յիշեալ ցանկը զգալապէս կրճատուած կ'ըլլայ։ Բուգգէի համեմատութեանց 2 եւ 3, 17 եւ 20 համարներուն վրայէն կրնանք լռութեամբ անցնիլ։ Անմեկնելի երկավանկ արմատաձեւերին պատճառաւ՝ մերժելի են յաջորդ համեմատութիւնները՝ խողո-պոտփ յուն. χλέπτω (պ ձայնն ալ անստոյգ է), խորշա յուն. χρωσσός, խոտոփն հոլ. črěpŭ "բեկոր", ռուս. черепъ "կառափն" (-ոփն ապահովապէս ածանց է, հմմտ. խլոփն. ուրիշ դժուարութիւն մըն ալ ռ ձայնը կը պատճառէ. կարելի չէ նաեւ յուն. χόρση բառին հետ կշռել, վասն զի այս բառն ապահովապէս հնդեւր. k̑- ունի)։ [Ըստ Շեֆտելովիցի BB XXIX 69 խոտոփն բառը ատորեստ. փոխառութիւն մըն է]։ Այն չապացուցուած կարծեաց վրայ՝ թէ -lp- կ'ըլլայ փ, կը յենուն համեմատութիւնները՝ խոփեմ յուն. χολάπτω եւ խոփ+ բուլղ. klepka "կոպք"։ Այն սխալ ենթադրութեան վրայ՝ թէ -rq-ին կրնայ համապատասխանել հայ. -րճ-, կը հիմնուին համեմատութիւնները՝ խեռխեռեմ հհնդկ. karkara-s "կարծր" (ինչո՞ւ աւելի սիրով չհամեմատել յուն. բառին հետ՝ γαργαρίζω, γαργαρεών), խառխամ, խամ-խոռ (-խոռ բառով բարդուած) իռլ. camm "կոր" (ինչո՞ւ

համար աւելի սիրով չկշռել յուն. γαμφός), կոր-կառ իր. carric, կորկող լիտ. karkti "շառաչել": Հնդեւր. p ձայնի անկանոն լծորդութիւն մ'ըն-դունելու էր բառերուս մէջ՝ կող, կողոպ = լատ. capiō (թողլով նաեւ նշանաբանական դժուարու-թիւնները): Քմառադատական մը կը գտնուի՝ փո-խանակ սպասուած քմականի մը, սա բառերուն մէջ՝ կորդակ յուն. χόρυς (հմմտ. κορύσσεσθαι, իսկ լիտ. szarvaĩ "սպառազինութիւն") եւ կոխեմ (որուն ի ձայնին առջեւ գոնէ կրնայ ռնգական մը կորսուած ըլլալ.), գոթ. hāhan (հհնդկ. çáŋkate "տատանի, տարակուսի", լատ. cunctor, Zupitza, Gutturale 133. Հայերէնի եւ գերմաներէնի մէջ եղած ճիշդ համաձայնութիւնն ալ ըստ իմիք անսովոր ըլլալու է, վասն զի "կախել" գաղափարին բացատրու-թիւնը հնդեւր. լեզուաց մէջ շատ այլազան է): Հայերէնի ներքին ստուգաբանութիւնն ի նկատի առնուած չէ կեղծ-+ կեղծէ-+ բառին մէջ, իրլ. celg "նենգ, դաւ". (վասն զի կեղծ-+ կրնայ ծ ածանց մ'ունենալ, եւ կապ՝ կեղտ-կործ բառին հետ, տ. Մէյէ, MSL X, 278. իսկ կ ծագած է dv-է, "երկու" թուականին վերաբերելով. հմմտ. լատ. bellum, duellum): Այն սխալ ենթադրու-թեան վրայ՝ թէ հնդեւր. -t- կրնայ երեւան գալ հայ. ծ ձայնիւ, հաստատուած են համեմատու-թիւններս՝ կործ-+ լիտ. krūtis (դրի տեղափոխու-թիւնն ալ քոռ-էոռ՝ տարակուսական է, տ. § 12), կործք = գոթ. hardus (այս բառն աւելի կապ ունի յունական բառիս հետ՝ γοργός "զարհուրելի, սաս-տիկ", իրլ. garg "վայրենի, տմարդի": Նախնական հոգեխօսական գործածութիւնը կը տեսնուի սա-կաւին կործեմ բային մէջ.), կայծ, լիտ. kaistù kaitaũ kaĩsti "տաքնալ". (բաց ասկէ՝ ամենեւին ապահով չէ թէ լիտուաներէն բառը հնդեւր. ai մը բովանդակէ. լատ. caelum բառին հոս վերաբերիլն-ալ — ըստ Solmsen, Zur lat. Lautgeschichte էջ 184, — շատ

անապահով է. յամենայն դէպս ի հարկաւորութեան՝ կոյծ բառին ծ ձայնը կրնայ մեկնուիլ d+s-է եւ dh համար ալ կրնայ գերմ. heiss օրինակ բերուիլ)։ Ընկղմեմ (Ներգործկ.) աղերս չունի χο-λυμβάω բային հետ, վասն զի իրաւացի չէ բաժնել ընկղմ-ում չեզոքէն՝ հանդերձ անոր ընկղ-ղմնեմ պատճառականով եւ նոյն բառէն։ Կոտոր կապակցութիւն չունի բառերուս հետ՝ հսլ. kotora "կռիւ" կամ հբգ. hadara "կապերտ". այս բառը կը բովանդակէ իւր մէջ -որ վերջաւորութիւնը (հմմտ. §81), որ հայերէնի մէջ շատ արգասաբեր է, իսկ արմատը՝ հնդեւր. փոխանակութեամբ՝ յերեւան կ'ելլէ կոտոր-ոտ, կոտրեմ բառերուն մէջ. կրնայ ի նկատի առնուիլ հհնդկ. gada-s "հիւանդութիւն" բառը՝ որուն հետ կը միացընէ Uhlenbeck բառերս՝ լիտ. gendù "ապականիլ", gadìnti "ապականել" (Ներգ.) [որոնց հետ Wood IF Anz. XV 107 գերմ. quetschen մ. ստորին գերմ. quattern ալ կը համեմատէ]։ Կող բառին ղ տառը կրնայ -ln-է յառաջ եկած ըլլալ, բայց պէտք չկայ որ յուն. χυλλός ի հետ աղերս ունենայ. աւելի -no- դերբայ անցեալն է կոլ-ոմի (KZ XXXVIII 203)։ (Ասոնց կարգէն է նաեւ Բուգգէի յիշելու զանց ըրած կուլ գոյականը, որ ոչ հհնդկ. khala-ի "կալ" եւ ոչ ալ յուն. χαλιά բառին հետ առընչութիւն ունի։ Դարձեալ խօսելով ուրիշ քանի մը բառի վրայ՝ որոնք Բուգգէի քով չկան, մտադիր կ'ընեմ թէ կուրճ բառն լատ. curtusի հետ կապ չունի, վասն զի ճ առ առաւելն կրնայ մեկնուիլ հնդեւր. -di̯-է, բայց ոչ -ti̯-է. կաւթ — յունարէնի միջնորդ բառի մը միջնորդութեամբ — պարզապէս լատիներէնէ փոխառեալ բառ մ'ըլլալու է, հմմտ. լատ. scutellaէ փոխ առնուած «կոտող» բառը՝ որ արդէն Ս. Գրոց Թարգմանութեան մէջ կայ)։ Խնդրական է թէ կեղեւ կարենայ կշռուիլ յուն. χελαινός ի հետ, վասն զի կրնայ ըլլալ որ χελαι-

νός լատ. celāreի հետ կապակցութիւն ունենայ եւ հնդեւրոպական k̑ ունենայ (հմմտ. Hirt, Ablaut, էջ 86), մինչդեռ հհնդկ. kāla-s “սեւ„, հոլ. kalð “տիղմ„, լատ. cālīgō չեն համաձայնիր ձայնաւորով։ Եթէ կեղն իրապէս յուն. χάλαϑος բոլորովին ինքնակաց բառին հետ ստուգիւ կապակցութիւն ունենայ, այն ատեն պէտք է ընդունիլ որ փոխառեալ է։ Կը մնայ կուր (-ի- : ո- արմատ) = իռլ. curach, եւ կրակ գոթ. hauri “ածուխ„ եւն։ Հոս պէտք է մտադիր ըլլալ որ կուր բացի “նաւակ„ իմաստ ունենալէն՝ կը նշանակէ նաեւ “տաշտ, գուշ„, եւ այս նշանակութիւնն անշուշտ հնագոյնն է. (հմմտ. հհնդկ. kumbhá-s, աւեստ. xumba- “պոյտ, պուտուկ„, յուն. χύμβος “անօթ„. χύμβη “նաւակ„. որոնց վրայ աւելցընելու ենք թերեւս նաեւ գերմ. humpen “ըմպանակ, բաժակ„. ընդհակառակն կըմր. cwmm “ձոր„ գաղ. Cumba թերեւս կրնայ ուրիշ տեղ զետեղուիլ, հմմտ. Stokes, Sprachschatz, էջ 93, Zupitza, Gutturale, էջ 55. հայ. խումբ բառին մասին՝ հմմտ. § 29)։ Դարձեալ շատ անգամ իրարու քով կը գտնուին “պոյտն„ եւ “վառարան, հնոց, փուռ„ նշանակութիւնները (լատ. furnus “հնոց„. հին սլ. gŕnъ “պոյտն„. ուստեղ “հնոց„ նշանակութիւնն յայտնապէս հնագոյնն է. Եթէ ասոր հակառակը հհնդկ. ukhā “պոյտն, սան„ աղերս ունի գոթ. auhnsի հետ՝ ինչպէս կ'ըսէ Kretschmer, Einleitung էջ 147 —, “պոյտ„ նշանակութիւնը հոս կրնար հնագոյնն ըլլալ)։ Բայց որովհետեւ միւս կողմանէ շատ հնարաւոր է որ “կրակարան, հնոց, կրակակալ„ գաղափարը՝ իբրեւ միջին գաղափար ունենալով “կրակակալ հանդերձ կրակով„՝ երթայ յանգի պարզ “կրակ„ իմաստին, (հմմտ. լատ. focus, “կրակետղ„, իտալ. fuoco, գաղ. feu “կրակ, հուր„), ըստ այսմ ես հնարաւոր կը համարիմ թէ կրակ կրնար ածանց մ'ըլլալ կուր բառին։ Այս

կուր բառին նմանութիւնը իրլ. *curach*ի հետ (ծագած **kuruko-s* է, Stokes, Sprachschatz, էջ 93) աւելի ակնյայտնի բան մը չէ՝ քան թէ հայ. կուր եւ յուն. γωρυτός «աղեղնակալ» բառերուն միջեւ եղած նմանութիւնը։

§ 29. Պէտք ենք ընդունիլ թէ ստուգաբանութեանց այն երկայն ցանկին մէջ չկայ համոզեցուցիչ օրինակ մը, որ հաստատէ առաջարկուած կանոնը՝ թէ հնդեւր. *g-* $g^u$- է = հայ. կ։ Դժուարաւ ալ թէ այնպիսի կանոն մը կարելի ըլլայ համաձայնցընել հնդեւր. նուրբերու հայերէնի մէջ այլուստ ունեցած լծորդութեանց հետ։ Բայց միւս կողմանէ ալ անշուշտ լոկ պատահական բան չէ՝ որ հնդեւր. *g-* կամ $g^u$-է ծագած հայերէն ք- ձայնին խիստ համոզիչ օրինակները միայն այնպէս ցանցառ կը գտնուին, այլ կը ցուցընէ թէ ք միակ ներկայացուցիչը չէ հնդեւր. *g-* կամ $g^u$- ձայնին։ Ամենէն յառաջ պէտք է բնականապէս բաղաձայնի խմբերը մէկդի թողուլ. (վասն զի անոնց մէջ ք մը չի սպասուիր)։ ի բաց առնելու է նաեւ այն դէպքերը, ուր է կամ ի ձայնի մ'առջեւի քմականացում մը տեղի ունեցած է՝ չ ձայնի փոխուելով։ Բայց թերեւս սպասուած ք ձայնին տարածութեան սահմանը տարբեր կերպով մ'ալ սահմանաւորուած ըլլայ։

Բուգգէ՝ ի թերթին KZ XXXII 38, զհայ. սուղանեմ կշռած է յուն. χεύθω ի հետ։ Ղ ձայնին խնդիրը դիւրաւ կարելի էր կարգի դնել. ղ ձայնը *dh+s* է կրնար ծագած ըլլալ (§ 50)։ Բայց այն՝ թէ χεύθω ի մէջ քմառագատական մը ծածկուած է, լիովին հաւանական ըլլալու է. (հմմտ. ի մէջ այլոց լետտ. *uſkude* «մառան», *uſkuds* «հացի մթերանոց», *kude* «դետերու այն տեղերը՝ ուր ձկները ձու կ'ածեն»), եւ այս պատճառաւ պէտք էր Բուգգէի հետ ընդունիլ՝ որ քմառագատական մը թէ *u*ի առջեւ եւ թէ *u* է մը վերջը քմական եղած է հայերէնի մէջ։ Այսպիսի կար-

ծեւաց կրնար ըստ երեւութին օրինակ բերուիլ ըռանջը (§ 18)։ Բնականաբար պէտք էր անմիջապէս աւելցընել թէ այս փոփոխութիւնը կամ անցումը միայն հնդեւր. ա ձայնաւորի մ՚առջեւ տեղի ունեցած ըլլալու է, եւ ոչ թէ հայ ու-ի մը՝ որ ուշ ատեն ծագած է հնդեւր. ō կամ oէ մը (հմմտ. գլուխ՝ ծագած հնդեւր. *ghōlū-է, KZ XXXIX 252. խուլ՝ յուն. χωλός ըստ Մէյէի, MSL X 282, Թերբեւս նաանկ՝ § 10)։ Սողանեմ բային եւ նոյն բայանուան մէջ ծածկուած է հնդեւր. eu կամ ou մը. ասոնց հետ փոխանակութեան մէջ՝ կարելի էր որ u ձայնով ձեւեր գտնուած ըլլային (հմմտ. յուն. կատ. χύθε, κεχύθωσι). այս ձեւերուն մէջ պէտք է սկզբնաւորուած ըլլալ u ձայնը, ուսկից ալ տարածուած ըլլալու է բայերուն բոլոր ձեւերուն վրայ։ Արդեամբք կը կարծեմ որ Բուգգէ նաեւ հոս՝ ինչպէս իւր հայական գրութեանց մէջ շատ տեղ, առեղծելու հանճարեղ կարողութիւն մը ցոյց տուած է. վասն զի ըստ ինքեան իւր այս տեսութեան դէմ գրեթէ բան մը չի հակառակիր։ Իւր՝ նուր եւ նրուն բառերուն մասին ըրած ստուգաբանութիւններն արդէն ուրիշ փաստերով ջրեցի այլուր՝ § 28. դժուարաւ իրաւունք ունենալու է նաեւ Բադրուպանեան խումբ բառին նկատմամբ արտայայտած իւր ենթադրութեամբը (IF, XIV, 58). (եթէ այս բառը բնիկ հայերէն է, այն ատեն հնդեւր. o ունենալու է)։ Մէյէ (Etudes sur l'étymologie et le vocabulaire du vieux slave, էջ 174) գաղափարն ունեցած է զհայ. խուն՝ հսլ. chudъ "փոքր" բառին հետ միացընելու. բայց որովհետեւ որեւէ կասկած չկայ թէ հսլ. chudъ եւ հհնդկ. kṣudra- "փոքր" բառերը (IF, V, 60 եւ հետեւ.) իրարու հետ աղերս ունին, հայ. խուն պէտք է որ մէկդի մնայ. նշանակութեան տարբերութեան պատճառաւ ալ՝ խուն չի կրնար կապակցութիւն ունենալ նաեւ բառիս հետ՝ գոթ.

*hauns* "ստորին" (լետտ. *kauns* "ամօթ, այպն"): Բայց ասոր՝ Մէյէ խո-ն բառին հիմնական իմաստն որոշելու առեն՝ նկատողութեան առնելու էր նաեւ անոր հետ կապակցութիւն ունեցող հայերէն ուրիշ բառերն ալ. "սակաւ" իմաստով բառի մը համար զարմանալի երեւոյթներ ալ աչք առնելու է. ասի կ'ուսուցանէ ոչ միայն գերմ. *wenig* (հրգ. *wēnag*, *weinag* "դժբախտ") այլ նաեւ խո-ն բառին հայերէն հոմանիշ մը. սոհա- բառ ինչպէս պարսկերէնէ փոխառեալ սոհ բառին գործիականն է (ուստի եւ 'բառ չափու, հաղիւ բաւական'). Հմմտ. նաեւ Նաղէ-, որ նոյնպէս պարսկերէնէ փոխառեալ բառի մը գործիականն է, եւ որ հայերէնի մէջ պէտք էր "ջանք" նշանակել: Արդ ուրեմն՝ որովհետեւ ի յառաջագոյնէ ամենեւին ընդդիմութիւն չկայ թէ նաեւ խո-ն կրնար "ճիգ, ջանք" կամ նմանանշանակութիւն մ'ունեցած ըլլալ, կարելի չէ բաժնել զայն յաջորդներէս՝ խնամ սեռ. խնամոյ (գործ. խնամով) եւ խնոյ, ուսկից է խնայեմ: խնամ աղերս ունի խնայի հետ գրեթէ այնպէս՝ ինչպէս լատ. *cōnāmen* ունի *cōnātus*ի կամ *cōnātiō*ի հետ. խնամ *mo*-վերջաւորութիւն մ'ունի, հմմտ. յուն. ὀδυρμός եւն. խնայ կրնայ *-ti-* կամ *-tu-* ունենալ (խնայ բառին չհոլովելուն պատճառաւ՝ կարելի չէ իմանալ որ արդեօք ի- արմատ եղած է թէ ու-արմատ). երկու բառերս ալ -ā-ով բայ մը կ'ենթադրեն, որ կրնար շատ լաւ լատ. *cōnor*ի հետ նոյն ըլլալ (միայն թէ հայերէն բառը հնդեւր. նուրբ-թաւ ունի, իսկ լատ. բառը հնդեւր. նուրբ): Ուստի Մէյէի խո-ն բառին տուած մեկնութիւնը բոլորովին ի բաց թողլու է: Թէպէտ եւ հայ. խո- սովորաբար կը կշռուի հհնդկ. *gūtha-s* "աղբ, կու" բառին հետ, բայց սխալ կերպով. վասն զի այն ատեն խոյ երկրորդական ձեւն անմեկնելի կը մնայ. իսկ խո- եւ խոյ նախալեզուական փոխանակութեան ձեւեր կարծել՝ բոլորովին անդոհացուցիչ է (Bartholomae,

Studien II 28, զկով մեկնած է *gᵘouto- կամ *gᵘou̯i̯o- ձեւէն, զոր կը կրկնեն՝ Հիւբշման, Arm. Gram. տեղեկութիւն տալով, իսկ Uhlenbeck, Et. Wtb. ուսուցանելով, սակայն առաջին նախաձեւէն կրնար միայն *կոյՆ յառաջ գալ. իսկ եթէ -u̯i̯-, այնպէս զարգացած է՝ ինչպէս -u̯r- եւ -u̯n- (§ 17ին սկիզբը) այն ատեն վերջինս վախճանին կը հասցնէ. բայց չեմ գիտեր թէ բոլորովին հաւանական ըլլայ *gᵘou̯i̯o- մը “կով„ իմաստով միւս *gᵘou̯ii̯o- “կարապ„ բառին քով)։ Աւելի սիրելի էր հոս ալ հայերէնի առանձնայատուկ փոխանակութիւնն ոյ/ու ստանել, այն ատեն կոյ սեռ. կուոյ (ծագած *կուոյէ) հոլովում մ'ալ պէտք էր իբրեւ նախնական ենթադրել. այսպիսով կարելի էր *gᵘouso- նախաձեւի մը յանգիլ, որուն մէջ -ou- պէտք էր նոյնավանկ մնացած ըլլալ s-ին կորսուելէն վերջը (*kouho- > *kou-o-)։ Դա՛րձեալ պէտք է ենթադրել, որ անդրադոյն զարգացման մէջ ի մի վերածուած ըլլալու են կրկին ձեւերս՝ -u(u̯)o- ծագած -ou(u̯)o-է, եւ -əu̯o- յառաջ եկած -u(u̯)o-է (վերջինս օր. ալ. ունի նու սեռ. նուոյ, ծագած հնդեւր. *snusó-է։) Նու սեռ. նուոյ օրինակին համաձայն՝ պէտք էր կուոյ սեռականին համար՝ կուուղղականաձեւ մը կազմուած ըլլալ, ինչպէս Հոյ սեռ. Հոյոյ ձեւին օրինակին համաձայն՝ կոյոյ սեռականաձեւ մը՝ կոյի համար։ Շատ յանդգնական չէ այն կարծիքը թէ *kouho- եղած է *kou-o-, եւ ո՛չ ko-u̯o-, վասն զի հին վանկեզրի նոյնազգի ճշդութիւն մը յերեւան կ'ելլէ անշուշտ տէր սեռ. տեառն բառին մէջ. ի նկատի ունենալով տէ-ին բառը, պէտք չէ առաջին բաղադրութեան արմատը գտնել հին *տէ- (որմէ *տէին կը սպասուէր), այլ հին *toi- կամ *tei- (զոր Մէյէ ալ կ'ընդունի, տես Esquisse, էջ 58)։ Բայց եթէ *toi-arn վերածուած է՝ տէ-առն- (որմէ՝ տեառն), այն ատեն վանկեզրը ճիշդ պահուած պիտի ըլլայ։ Անշուշտ

դժուարութիւն կը յարուցանէ եա երկբարբառին եի վերածումը ձեւերուս մէջ՝ տեղւոյ (եզ. գործ.), տեղեաց (յոգն. սեռ.)։ Կամ այս դիպուածս մէջ եա = ե փոխանակութիւնը նմանակազմութեան վրայ հաստատուած է, եւ կամ այն ձայնական օրէնքը՝ որուն համեմատ եա չեշտին նախընթաց վանկի մը մէջ ե եղած է, այնչափ յետնագոյն է չեշտին նախընթաց oi, ei ձայներուն i ձայնին վերածումէն, որ կրնար ազդել նաեւ միայն յիշեալ վերածմամբ յառաջ եկած ia > ea ձայներուն վրայ ալ։ — Քու+ իւր երկրորդ + ձայնին պատճառաւ (որուն տեղ աւելի ւ կը սպասուէր) չի համաձայնիր լիտ. քաւխս հետ՝ kaũkti "ոռնալ", որուն հետ կը կապէ Մէյէ, MSL XII 214. ընդհակառակն կրնայ անշուշտ հեռաւոր աղերս մ'ունենալ յուն. χωχύω բառին հետ. անշուշտ կրնայ *qōq- սկզբնաձեւէ մը յառաջ բերուիլ։

Այն կարծիքը թէ հնդեւր. քմառադատական մը՝ ս ձայնի առջեւ՝ իբր քմական երեւան կ'ելլէ հայերէնի մէջ, ուրիշ հաստատութիւն մը պիտի գտնէ վարը՝ § 44։ Այս երեւոյթիս խորին հնութեան եւ բնախօսական կերպին մասին կը խօսիմ վարը՝ § 57։

§ 30. Ծանօթ է թէ ի վաղուց կը հաստատուի որ հնդեւր. q- կամ $q^u$- մը հայերէնի մէջ կրնայ սկզբնատառ հ- ըլլալ եւ կամ բոլորովին կորսուիլ։ Ասոր ալ առաջարկողն եղած է Բուգգէ (KZ XXXII 52 եւ հետեւ.) որ սակայն q, $q^u$ ձայնին եւ կորուսման միջեւ g մը կ'ենթադրէր իբրեւ միջին աստիճան։ Մէյէ այս տեսութիւնն այնու սրբագրած է՝ որ կորուսման իբրեւ առաջին աստիճան հ կ'ենթադրէ։ Բայց այս տեսութիւնն այնպէս՝ ինչպէս որ ի թերթին MSL X 282 ներկայացուցած է, անհաւատալի էր (իբր օրինակ կը բերէ՝ ի մէջ այլոց, եղանիմ = πέλομαι եւ հազ՝ հնդկ. kāsate "հազալ" եւ յուն.

βήξ)։ Բայց Մէյէ իւր միւս գործին մէջ Esquisse էջ 15 կ'ուզէ այս անցումը միայն Հարցական դերանուան արմատին վրայ ամփոփել։ Այն ատեն ընդունելու էր որ Հարցական բառին յատուկ շեշտը կամ սեպհական զօրութիւնը պատճառ եղած ըլլայ այս անցման. այս կերպով յառաջ եկած հ ձայնը գործածուած ըլլալու է յետոյ թէ մատնական եւ թէ յարաբերական դերանուան արմատին մէջ։ Արդեամբք ալ բանաւորօրէն չենք կրնար տարակուսիլ թէ Հարցական դերանունն ո՞, ե՞ նոյնպէս որ յարաբերականն եւ մատնականքս՝ ո–ք, ո–մն, ի՞ն–չ եւն աղերս ունենալու են հնդեւր. *qᵘo-, *qᵘi- դերանուն-արմատին հետ։ Բայց այսու հանդերձ ամենեւին տարակոյս չկայ թէ Մէյէի տեսութիւնը խախուտ է նաեւ իւր նորագոյն կերպարանաց մէջ։ Ասոր դէմ կ'ելլէ ամէնէն յառաջ քանի եւ իւր արմատոյ-բառն քան (§ 28), որոնք կը հաստատեն թէ qᵘ-ի փոխուիլն հ ձայնի եւ անկէ պատճառեալ կորուստը չ'արժեր ամէն Հարցական բառի համար։ Իսկ միւս կողմանէ ալ քանի մը Հարցական բառի սկզբնատառ բաղաձայնը կրնար առանց ձայնական օրէնքի մ'անհետ ըլլալ։ qᵘ պէտք էր տառուգիւ i ձայնի մ'առջեւը չ ըլլալ (հմմտ. ի՞ն–չ = հհնդկ. kiṁcid, Մէյէ, MSL VII 162, եւ իւ–ր–ա–ք–ան–չ–իւ–ր, որուն մէջ կայ ‚πᾶς' նշանակութեան մերձեցող *qᵘānt-qᵘid մը. իւ–ր կը նշանակէ ‚sibi'. կրնայ անապահով ըլլալ՝ որ արդեօք նախադիր իւ–ր–ը հնագոյնն է թէ վերջադիրը. բայց ընդհակառակն ապահով ըլլալու է որ նախադիր իւ–ր–ը միայն երկրորդաբար ընդունած ըլլալու է բաղադրութեան ձեւը։) Ասոր համար շատ հաւանական է Բուգգէի (Lykische Studien I 58) այն կարծիքը թէ չէզոք (Հարցական եւ) անորոշ դերանուան սկզբնատառը կորսուած է նախորդ ոչ բառէ մը վերջը (ոչ *չինչ կրնայ զուտ ձայնական ճամբով ոչինչ եղած ըլլալ, եւ անկէ ալ սխալ

վերլուծմամբ՝ ինչ ձեւը հանուած ։) Արականին համար կարելի չէ համապատասխան մեկնութիւն մը տալ, ասոր համար հոս զ°- զուտ ձայնական օրինօք եղած ըլլալու է հ-, որ վերջէն կորսուած է ։ Ի հարկէ այսպէս զարգացած արական ձեւ մը կրնայ թերեւս ոչինչ ձեւին սխալ վերլուծման պատճառակից եղած ըլլալ. եթէ արականը հ մ'ունենէր այն հ ձայնը կրնար նաեւ չէզոքի մէջ մնացած ըլլալ. վասն զի ոչինչ կրնայ շատ լաւ կերպով վերլուծուիլ թէ՛ իբրեւ ոչ *հինչ եւ թէ՛ ոչ ինչ. (հմմտ. դ-եղ-ոմ, բաղադրեալ հեղ-մէ, եւն)։ Ըստ այսմ Մէյէ կրնայ իրաւունք ունենալ՝ որուն մասին նախ կը կասկածէի, իր այն մեկնութեան մէջ՝ թէ հի՞մ, հի՛ղան բառերուն հ ձայնը մնացորդ մըն է հին զ°ի։ Միայն թէ կ'ընդունիմ որ հ ձայնը ձայնական օրինաց համաձայն էր միայն արականին մէջ։ Երբ մակբայն այնպէս մեկնելու է, ինչպէս ի սկզբնատառով ձեւերը. հմմտ. ոչ Երբեք։ Իբր, հիբոր եւ հի՛ղան բարդ կամ ձուլուած ձեւեր են. -բր, -բոր դոյական մըն է՝ որ եզակի այլ եւս ինքնակայ չի գտնուիր, սակայն կանոնաւորապէս կը գործածուի մակբայներ կազմելու. (զոր օր. մեծ-բոր, կազմուած մեծ բառէն). անբաղադրեալ կը գործածուի միայն յոգնակի՝ բորք. իսկ -ղան տես Հիւբշման, I 148։

Ուստի զ° սկզբնատառին կորուսման պայմաններուն հաստատութեան համար՝ նկատողութեան կ'առնուին միայն արական ձեւերը, ուղ. ո՞ կամ ո՞վ, սեռ. ո՞յր, տրկ. ո՞ւմ. յոգն. ուղ. ո՞յք, հայց. ո՞յս, սեռ.-տրակ. ո՞յց. յաւել ասոնց վրայ յարաբերական դերանունն՝ որ, նախապէս մակբայ մը, մերձաւորապէս այնպէս՝ ինչպէս է նոր յուն. πού “ո՞ւր, ո՞ր„ (իրօք ալ որ իրապէս կը գործածուի “ուր„ նշանակութեամբ, ժամանակի մը որոշմանէն ետքը. բաց ասկէ՝ ո՛ր կը նշանակէ “թէ„. իսկ հո՛ն՝ ուր որ ըստ երեւութին յարաբերական դերանուն է, կրնայ նոր յուն. πού բառին պէս կրկնաւոր դերանուն

մ'աւելցուիլ՝ հոլովը շեշտելու համար. «Հեփե-ոփղղօօ ոյն ոռ ղօշոեյօ+ մե+ ֆօնի-+ նոռօ.» ուստի եւ այս բառը միայն երկրորդաբար հոլովելի եղած ըլլալու է)։ Բնականաբար դիւրաւ խնդիր կը ծագի թէ այս նախապէս մակբայն՝ ոչ, ինչ աղերս ունի օ-ր մակբային հետ։ Թերեւս օ-ր միայն նոր կերպարանափոխութիւն մըն է ոչ ձեւին՝ ասոր նախաւոր տեղական առումով, [մերձաւորապէս նմանութեամբ օ-օփ, օ-օփի մակբայներուն]։

Արդ կարելի էր օ-+ ձեւը հիմ բռնելով՝ հոս աննմանաձայնութիւն մ'ընդունիլ. այսպէս +եր+եմի քով կայ հեր+եմ, եւ ճիշդ նոյն կերպով հայերէն ի մըն ալ կրնայ աննմանաձայնութեամբ (հ ըլլալ եւ) կորսուիլ, հմմտ. խր-ախ (ուր խ եւ ր ձայներուն մէջ օ- մը կար) եւ օ-րախ. իսկ ոչխար բառին նկատմամբ՝ հմմտ. վարը՝ § 61. ոսկի բառին մասին՝ հմմտ. Բուգգէ IF I 444։ Սակայն կ'երեւայ թէ աննմանաձայնութեան այս միտումը շատ քիչ զօրութեան ունեցած ըլլայ, վասն զի կան նաեւ նմանաձայն ձեւեր. այս պատճառաւ ինծի դժուար կու գայ օ-+ ձեւն իբրեւ որոշիչ նկատել ամբողջ խումբին, նաեւ օ եւ օ-ռ ձեւերուն զարգացման համար. մանաւանդ թէ ընդհակառակն կրնար օ-+ ձեւի մէջ աննմանաձայնութիւնը խափանուած ըլլալ օ եւ օռ բառերուն պատճառաւ, եթէ այս բառերուն մէջ + ձայնը ձայնական օրինաց համաձայն մնալու էր։

Անոր համար ես կը կարծեմ թէ այս զարգացումը կախում ունեցած է այնպիսի պայմաններէ, որոնք հաւասարապէս կը գտնուին օ̃, օ-+ եւ օ-ռ ձեւերուն մէջ, կամ ուրիշ խօսքերով՝ օ ձայնաւորին առջեւ + եղած է հ։ Ասոր կը հակառակի միայն +օ-րեմ (տ. վերը՝ § 28), բայց ասիկայ կախում ունեցած ըլլալու է +երեմ երկրորդական ձեւէն։ Իբրեւ բնախօսական մեկնութիւն օ ձայնաւորին առջեւ գտնուող + ձայնին հի անցման՝ պէտք է միտ դնել

որ o ամենէն յետսակողմեան ձայնաւորն է. (քանի մը լեզուաց մէջ u կրնայ աւելի յետսակողմեան հնչուիլ քան o. թէպէտ ձայնագէտները միաբան չեն ասոր. սակայն բազմաթիւ լեզուաց մէջ, ուր u (ոչ o) միջին ձայնաւոր մ'եղած է, հնչուելով թէ շրթունքը կլորցնելով կամ թէ առանց կլորցնելու, եւ կամ նոյն իսկ ü, ï ձայնի յեղաշրջած է, պէտք է ընդունիլ որ u աւելի յառաջ կը հնչուէր՝ քան o. ուստի գոնէ ընդհանուրն արժող կանոն մը չէ թէ u ու աւելի յետսակողմեան ըլլայ՝ քան o): Ասոր համար հնդեւր. q կամ q"ē նախ ծագում առած + ձայնը ո ձայնաւորին առջեւ ու-վորականէն աւելի յետսակողմեան արտասանուած է՝ քան ուրիշ տեղ. իսկ ամենէն յետսակողմեան արտասանութեան դիրքը շատ քիչ նպաստաւոր է կատարեալ փակ բաղաձայնի մը կազմութեան համար. այս պատճառաւ հոն արտասանուած + մ'աւելի դիւրաւ բաց բաղաձայն կ'ըլլայ՝ քան թէ աւելի առաջակողմի արտասանուած + մը: Ու ձայնի մ'առջեւ (բնականապէս ըստ § 29ի՝ կրնայ խօսք ըլլալ միայն հնդեւր. ō կամ o ձայնաւորէն ծագած հայերէն ու-ի մը վրայ) + բաց բաղաձայն չէր ըլլար՝ եթէ +ու+ ծագած է *qōqē (§ 29 վերջը). սակայն այս ստուգաբանութիւնն առանձնապէս մեծ արժէք մը չունի, եւ ինծի ծանօթ չէ ուրիշ որեւէ թեր ու դէմ նիւթ: Ուստի այս կէտը չեմ որոշեր:

Ընդհակառակն կ'երեւայ թէ +ո > հո անցման նպաստաւոր կ'ըլլեն առնուազն քանի մը ստուգաբանութիւնք: Մէյէ MSL X 282 զհոլովիմ կշռած է յուն. κυλίνδω-ի հետ. հոլովիմ բայը թերեւս ածանցած է հոլով (ի-արմատ) գոյականէն, որ աղերս ունի բառերուս հետ՝ հսլ. kolo "անիւ", լատ. colus: Թերեւս այս տեղւոյ կը վերաբերին նաեւ հոյլ-+՝ ի միջամխութեամբ, հմմտ. նշանակութեան կողմանէ բոյլ, բոլոր եւ գոր, վերջինս նախնական գլխաւոր նշանակութիւնք մէջտեղ կ'ելլէ ասացուածէս՝ գոր

ըմբռնողութիւնը կ'ընդունի ամէն վանկական ձայնից մէջտեղ գտնուող t-ի համար, որուն ես ալ բացարձակապէս համամիտ եմ։ Հայ սեռ. հայոյ հաւանականագոյնս հին t մ'ունի. բայց *hati-է յառաջ եկած չէ, վասն զի ի-արմատ չէ, *hatio- ձեւէն ծագում առնելու էր *հող, եւ hatịoէ՝ *հոյէ. միայն *hato-սկզբնաձեւ մը գոհացուցիչ է. (ընդհանրապէս այս հիմնական ձեւին մէջ պէտք էր հ ձայնին տեղն ուրիշ ձայն մը — p կամ s? — գրուիլ, եթէ հնդեւր. բուն հիմնական ձեւ մը յօրինել ուզուէր. իսկ հոս խնդիրը միայն t ձայնին վրայ է)։ *hato- շատ լաւ կը համաձայնի Պ. Ենսէնի հատեան արձանագրութեանց մէջ կարդացած hat-a ազգանուան հետ. սակայն իմ նպատակս չէ հոս այս պարագան իբրեւ ապացոյց յառաջ բերել. երբ ներկայ գործիս մէջ ստէպ Ենսէնը վկայութեան կը կանչեմ, այս բանը պարզապէս անոր համար կ'ընեմ, որպէս զի ցոյց տամ թէ արդեօք իմ տեսութիւններս անոր հանած հետեւութեանց հետ կը համաձայնի՞ն թէ ոչ)։ Չեմ կրնար ընդունիլ Մէյէի եւ Օստհոֆի արտայայտած տեսութիւնը (Բ ա դ ր ո ւ պ ա ն ե ա ն Sprachw. abh. II, 128 եւ հետեւ.)։ Հայ. թ մը՝ որ կը գտնուի նախաւոր վանկական ձայնաւորաց մէջտեղ (NB վանկական ձայնաւոր), միշտ հնդեւր. th-ի մը համազօրը կը համարիմ։ Լու բառին մէջ կը տեսնեմ աւելի հնդեւր. *k̑lutó-s մը՝ քան թէ հնդեւր. *k̑lu-ti-s մը (ու ծագած *ույէ). Լի կրնար՝ եթէ ուզուի, *plē-to-s ըլլալ, լայն բառը կրնայ ստուգիւ -tn վերջաւորող ձեւէ մը մեկնուիլ (իռլ. lethan "լայն", յուն. πλάτανος եւն.) [*-tino- ձեւն ընդունելի չէ, վասն զի վերջընթեր վանկի ձայնաւորը չ'իյնար, հմմտ. ամառային եւն § 37. ուստի եւ այս բառը՝ զոր Lidén *k̑atili̯āէ ծագած կը մեկնէ, կշռելով յուն. (փռիւգերէնէ փոխ առնուած) σάτιλλα σατίνη (Commentationes

philologae in honorem Johannis Paulson, Göteborg 1905, էջ 159—163), լաւագոյն է *k̑ati-ն՝ ոեռ. *k̑ati-n-os՝ նախաձեւէ մը մեկնել]։ Նոյն բառն ամէն պարագայի մէջ ցոյց կու տայ որ tի զարգացումը ո՛ւր կամ (երկրորդական) ուր հետ բախելով՝ չի խանգարիր։ Ասոր համար անկարելի է Մէյէի հետ (Esquisse էջ 14) ծոփն բառին մէջ հնդեւր. t մը տեսնել։ Հայ. ծոփն հին կրմր. maut «մառ» եւն բառերուն հետ աղերս ունենալու ենթադրութիւնը՝ զոր ես ալ ըրած եմ Գրէյֆսվալդ բնակած ատենս (մինչեւ 1896 Օգոստ.) (Հմմտ. Zupitza, Gutturale, էջ 234 ի բառն modrwy եւ KZ XXXV 259, Rozwadowski, Quaestiones grammaticae et etymologicae, II 14; Meillet MSL XI 395, V. Henry Lex. étym. du breton moderne, ի բառն meûd) կամ պէտք է մէկդի թողուլ, եւ կամ հարկ է հնդեւր. d եւ t ձայներուն միջեւ փոխանակութիւն մ'ընդունիլ։ (Հնդեւր. t տառէն ծագած դ- ձայնին նկատմամբ՝ որ կը գտնուի դու- եւ ուրիշ դերանուանց մէջ, նոյնպէս հնդեւր. tէ ծագած ք ձայնին մասին՝ որ կայ բայերու -ք վերջաւորութեան մէջ՝ յոգն. -քոռ-ք՝ եւ էք, տես KZ XXXVIII 232—235)։

Նոյնպէս եւ հնդեւր. q̑ կամ qի զարգացումը հազիւ թէ խանգարուած ըլլայ ո՛ւր հետ ընդհարմամբ. այս պատճառաւ հայ. ոչն ասոր (շատ բաղմաթիւ) օրինակներէն կը համարիմ, որոնք ցոյց կու տան, որ այս ձայները վանկական ձայնաւորաց մէջտեղ հայ. չ տուած են (Հմմտ. KZ XXXVIII 204.) (ոչ ք, ոու-ք բառը պէտք է ըստ § 29ի հհնդկ. çoka-է բաժնել). սակայն այս չ ձայնն անշուշտ նախապէս խ ձայնէն ծագում առած է։ § 33ի մէջ պայծառ ցոյց պիտի տրուի որ այս ձայնը չի կրնար գոնէ անփոփոխ մնացած հնդեւր. զուտ նուրբն ըլլալ։

§ 32. Գովեմի քով կայ գոհ (հմմտ. գոհանամ)։ Դժբախտաբար այս բառերուն նկատմամբ չեմ կրնար ընդունելի ստուգաբանութիւն մը գտնել. Բայց վ/հ կը յիշեցընէ հնդեւր. ṷ (ուստի բոլորովին մէկ կողմը թողլու է գովեմ բային հսլ. gověti բառին հետ աղերս ունենալու ենթադրութիւնը, որուն վրայ տարակուսած էի ի թերթին KZ XXXVIII 199)։ Ամենէն առելի կրնայ ընդունուիլ թէ հ հնդեւր. ṷին վերջաձայն լծորդն է [այն ատեն պէտք է ընդունիլ, որ գովեմ բառը կապ չունի պարսկերէնէ փոխ առնուած ջատագով բառին հետ]։ Միեւնոյն վ/հ փոխանակութեան կը հանդիպինք նաեւ արուեստ կամ արհեստ բառին մէջ. փոխանակութիւնը պէտք է որ հոս արմատոյ-բառէն առնուած ըլլայ, ուսկից ածանցած է արուեստ, արհեստ՝ -եստ վերջաւորութեամբ (KZ XXXVIII 218). այս արմատոյ-բառը կրնայ միայն *արու ըլլալ. ուստի նախնական նշանակութիւնն էր «արութիւն» (virtus,) որմէ յետոյ «ճարտարութիւն» (virtuosité). (հմմտ. նաեւ հայ. հնար՝ ծագում առած նպ. hunarē «ճարպկութիւն». նախաւորէն՝ հնդեւր. *ner- «այր»)։ Անշուշտ արու- յառաջ եկած է -ōpa-է (ի-։ ու- արմատ). բայց ասոր քով պէտք է որ գոյութիւն ունեցած ըլլայ ձեւ մ'ալ՝ որ յուն. δρῶψ բառին հետ համեմատունելի էր. (եւ այն՝ պէտք է որ յոյն բառին ρ ձայնը հնդեւր. r̥ մ'ըլլայ)։ Ձայնադիտական ուղղականն *արհ պէտք է որ համեմատաբար երկար ատեն անփոփոխ մնացած ըլլայ. (ար- հաղիւ թէ nr-ի մաքուր ձայնական շարունակութիւնն ըլլայ. հնարաւոր էր մտածել nṛ կանխադրյն կորուստ մը, եւ որմէ ետքը յենած ըլլայ բառին այր սեռ. առն՝ ծագած հնդեւր. *anērt, արկ. *anrai.) [արովայն բառը անշուշտ *արով ձեւէ մը ածանցուած է. եթէ այս ձեւը հ. սլ. qtroba «որովայն» բառին հետ նոյնացուի եւ *ontrobhā է մեկնուի, պէտք է ըն-

գտնուիլ, որ -nr-, -ntr- հայերէնի մէջ -ր- կու տայ. այն ատեն առն սեռականը նորակազմութիւն մը պիտի ըլլար. *anr-է ձայնական օրինաց համեմատ ծագած *ar- ձեւ մը *anēr ուղղականին ազդեցութեամբ կրնար վերստին *anr- ձեւին փոխուիլ եւ վերջէն առն ձեւին յանգիլ. բայց որոչոյն բառին համար կայ ուրիշ ստուգաբանական հնարաւորութիւն ալ, ինչպէս որ այլուր պիտի ցուցնեմ]։

Կ'երեւայ թէ հնդեւր. ĝʰ կամ ĝ բառավերջին ուրիշ զարգացում մ'ունեցած է՝ քան բառամիջին։ Գոնէ դիւրաւ կը մեկնուին քանի մը -ք վերջաւոր բառեր անով՝ թէ վերջաձայն -ĝ մ'ունեցած են, եւ իրենց ձեւը կը պարտին չէզոք ուղղական-հայցականի կամ արական-իգական ուղղականի, այսպէս փուք՝ փչեմի քով, եւ ողոք, եթէ ողոքեմի կը վերաբերի. այս պարագային անշուշտ հարկ պիտի ըլլայ ընդունիլ *ողո- նախնական ձայնաւորում մը՝ եւ նմանաձայնութիւն մ'այլեւայլ ուղղութեամբ. Թերեւս կարելի էր լաւ. loquor-ի հետ կապել. իսկ ողոքել (ի-արմատ) առ առաւելն ժողովրդական ստուգաբանութեամբ միայն կապ կրնայ ունենալ ողոքեմ-ի հետ. (ողոքել կրնայ մեկնուիլ հնդեւր. *prek-ri-է)։ Փառք եւ ողոք բառերուն ք ձայնը յոյժնապէս արմատական էր եւ ոչ վերջաւորութիւն։ Վերջատառ -ք կրնայ մեկնուիլ նաեւ -tvo-է. ճարտաք՝ յառաջացած ճարտ բառէն, քաղաք՝ քաղեմէ (զոր Մէյէ MSL VIII 297 ստուգիւ ուղիղ չի մեկներ). Նախադրութեանց ածանցներուն մէջ -tvo- վերջաւորութիւնը միակ հնարաւորն ըլլալու է. այսպէս՝ ի ներ-ք-ս (ուսկից՝ ներքին), արտա-ք-ս (արտաքին). առաքեմ բայն ալ կազմուած է անշուշտ. *առաք ձեւէ մը՝ որ առընչութիւն ունի առ նախադրութեան հետ, եւ որուն նախնական վերջաձայնը կ'երեւայ բառիս մէջ՝ առա-ջ, առա-ջ-ին. (հմմտ. վեր-ջ, վեր-ջ-ին՝ սկիզբ առած ի վերէ, յուն. ὑπέρ)։ Ասոր հակառակ նախապէս վերջավանկին մէջ գտնուող

որ o ամէնէն յետսակողմեան ձայնաւորն է. (քանի մը լեզուաց մէջ ս կրնայ աւելի յետսակողմեան հնչուիլ քան o. թէպէտ ձայնագէտները միաբան չեն ասոր. սակայն բազմաթիւ լեզուաց մէջ, ուր ս (ոչ o) միջին ձայնաւոր մ'եղած է, հնչուելով թէ շրթունքը կլորցընելով կամ թէ առանց կլորցընելու, եւ կամ նոյն իսկ ս̈, ï ձայնի յեղաշրջած է, պէտք է ընդունիլ որ ս աւելի յառաջ կը հնչուէր՝ քան o. ուստի գոնէ ընդհանուրն արժող կանոն մը չէ թէ ս ա՛լ աւելի յետսակողմեան ըլլայ՝ քան o): Ասոր համար հնդեւր. ք կամ ք"է նախ ծագում առած + ձայնը ս ձայնաւորին առջեւ սովորականէն աւելի յետսակողմեան արտասանուած է՝ քան ուրիշ տեղ. Իսկ ամէնէն յետսակողմեան արտասանութեան դիրքը շատ քիչ նպաստաւոր է կատարեալ փակ բաղաձայնի մը կազմութեան համար. այս պատճառաւ հոն արտասանուած + մ՚յաւելի դիւրաւ բաց բաղաձայն կ'ըլլայ՝ քան թէ աւելի առաջակողմն արտասանուած + մը: Ու ձայնի ռ'առջեւ (բնականապէս ըստ § 29ի՝ կրնայ խօսք ըլլալ միայն հնդեւր. ō կամ o ձայնաւորէն ծագած հայերէն ու-ի մը վրայ) + բաց բաղաձայն չէր ըլլար՝ եթէ +ու+ ծագած է *q̄ōqē (§ 29 վերջը). սակայն այս ստուգաբանութիւնն առանձնապէս մեծ արժէք մը չունի, եւ ինծի ծանօթ չէ ուրիշ որեւէ թեր ու դէմ նիւթ: Ուստի այս կէտը չեմ որոշեր:

Ընդհակառակն կ'երեւայ թէ +ո > հօ անցման նպաստաւոր կ'ըլլեն առնուազն քանի մը ստուգաբանութիւնք: Մէյ է MSL X 282 զհոլովն կշռած է յուն. χυλίνδω ի հետ. հոլովն բայը թերեւս ածանցած է հոլով (խ-արմատ) գոյականէն, որ աղերս ունի բառերուս հետ՝ հսլ. kolo "անիւ", լատ. colus: Թերեւս այս տեղւոյ կը վերաբերին նաեւ հոյլ-+՝ ի միջամխութեամբ, հմմտ. նշանակութեան կողմանէ ծոյլ, ծուլոր եւ ուոր, վերջնոյս նախնական գլխաւոր նշանակութիւնը մէջտեղ կ'ելլէ տասցուածէս՝ ուոր

արձեալ, եւ ածանցներէն՝ պարառնակ, պարանոց: Հալով եւ Նոյլ-ի բառերուն մէջ կը գտնուէր հնդեւր. gᵘ: Այսր հակառակին ոճն (ն-արմատ) սեռ. ոճին բառին մէջ ընդունելու է հնդեւր. g. վասն զի ոճն միեւնոյն է յուն. բառին հետ՝ χωλήν "կշտուկը, ազդուկը", միայն թէ առաջին վանկին ձայնաւորը կը համաձայնի հսլ. բառին հետ՝ kolěno "ծունկ": Բուգգէի KZ XXXII 53 պաշտպանած հին ենթադրութիւնը՝ թէ ունձ կապ ունի յուն. χονίδες ի հետ, հիմայ կը մերժուի *gonid-s սկզբնաձեւ մ'ընդունելով. go- եղած ըլլալու է նա- եւ յետոյ ապէ ա-, ուրկից ալ պէտք էր ա ըլլալ՝ KZ XXXVI 99 մէջտեղ հանած կանոնին համաձայն (հմմտ. հայ. ա- ծագած հնդեւր. po-է § 25): Սակայն սկզբնատառ ձայնին քմռադատական նկարագիրը միայն ռուս. гнида բառին մէջ տարակուսական կրնուան մ'ունի, իսկ ալբ. θενί կ'երեւայ թէ ամենայն ապահովութեամբ քմական մը ցոյց կու տայ, որ դիպաց մէջ միայն § 10ի մէջ տրուած մեկնութիւնը կարելի է. g-է ծագած հ կայ նաեւ ա- երկբարբառին առջեւ ալ. հարան (այծից). լատ. caper, տես § 15. այս երկբարբառին միջի ա ձայնը թերեւս սովորական a է քիչ մը տարբեր էր եւ åի մը կը մերձենար:

§ 31. Հնդեւր. զուտ նուրբերը վանկական ձայներու մէջտեղ նախ ամենուրեք անշուշտ երգաձայնազուրկ բայց բաղաձայն եղած են. հնդեւր. g, gᵘ, k͡, t, p՝ միջին անդամներովս՝ ք, ց, թ, փ եղած են x, s, þ, f: Յետոյ երգաձայնական եղած են f ու þ եւ պատմական շրջանին մէջ կ'երեւան – եւ յ ձայներով: Ընդհանրապէս ծանօթ է թէ հնդեւր. p հայ. – կձ տայ (երէ-իմ, πρέπω): Այսր հակառակին աւելի միտում մը կայ հնդեւր. t ձայնին՝ միայն երբ i ձայնին առջեւ կը գտնուի, լծորդ դնել հայ. յ (բոյ սեռ. բոյէ, յուն. φάτις, φάσις եւն: Սակայն Հիւբշման Arm. Gramm. I 408 այս

լծորդութիւնը կ'ընդունի ամէն վանկական ձայնից մէջտեղ գտնուող t-ի համար, որուն ես ալ բացարձակապէս համամիտ եմ։ Հայ. սեռ. հօյօյ հաւանականագոյնս հին t մ'ունի. բայց *hati-է յառաջ եկած չէ, վասն զի ի-արմատ չէ, *hatio- ձեւէն ծագում առնելու էր *հօյ, եւ hatii̯oե՝ *հօյի. միայն *hato-սկզբնաձեւ մը գոհացուցիչ է. (բնականապէս այս հիմնական ձեւին մէջ պէտք էր հ ձայնին տեղն ուրիշ ձայն մը — p կամ s ? — գրուիլ, եթէ հնդեւր. բուն հիմնական ձեւ մը յօրինել ուզուէր. իսկ հոս խնդիրը միայն t ձայնին վրայ է)։ *hato- շատ լաւ կը համաձայնի Պ. Ենսէնի հատեան արձանագրութեանց մէջ կարդացած hat-a ազգանուան հետ. սակայն իմ նպատակս չէ հոս այս պարագան իբրեւ ապացոյց յառաջ բերել. երբ ներկայ գործիս մէջ ստէպ Ենսէնը վկայութեան կը կանչեմ, այս բանը պարզապէս անոր համար կ'ընեմ, որպէս զի ցոյց տամ թէ ա՛րդեօք իմ ստուգութիւններս անոր հանած հետեւութեանց հետ կը համաձայնի՞ն թէ ոչ)։ Չեմ կրնար ընդունիլ Մէյէի եւ Օստհոֆի արտայայտած ստուգութիւնները (Բ ա դ ր ո ւ պ ա ն ե ա ն Sprachw. abh. II, 128 եւ հետեւ.)։ Հայ. Բ մը՝ որ կը գտնուի նախաւոր վանկական ձայնաւորաց մէջտեղ (NB վանկական ձայնաւոր), միշտ հնդեւր. th-ի մը համազօրը կը համարիմ։ Լու բառին մէջ կը տեսնեմ աւելի հնդեւր. *k̑lutó-s մը՝ քան թէ հնդեւր. *k̑lu-ti-s մը (ու ծագած *ույէ). Լի կրնար՝ եթէ ուզուի, *plē-to-s ըլլալ, լայն բառը կրնայ ստուգիւ -tn̥ վերջաւորող ձեւէ մը մեկնուիլ (իռլ. lethan "լայն„, յուն. πλάτανος եւն.) [*-tino-ձեւն ընդունելի չէ, վասն զի վերջընթեր վանկի ձայնաւորը չ'իյնար, հմմտ. ամօրայէն եւն § 37. ուստի եւ սայլ բառը՝ զոր Lidén *k̑atili̯āե ծագած կը մեկնէ, կշռելով յուն. (փռիւգերէնէ փոխ առնուած) σάτιλλα σατίνη (Commentationes

philologae in honorem Johannis Paulson, Göteborg 1905, էջ 159—163), լաւագոյն է *k͡ati-ն ստո. *k͡ati-n-os՝ նախաձեւէ մը մեկնել]։ Նոյն բառն ամէն պարագայի մէջ ցոյց կու տայ որ tի զարգացումը ղ̥ի կամ (երկրորդական) ղի հետ բաղխելով՝ չի խանգարիր։ Ասոր համար անկարելի է Մէյէի հետ (Esquisse էջ 14) մատն բառին մէջ հնդեւր. t մը տեսնել։ Հայ. մատն հին կըմր. maut «մատ» եւն բառերուն հետ աղերս ունենալու ենթադրութիւնը՝ զոր ես ալ ըրած եմ Գրէյֆսվալդ բնակած ատենս (մինչեւ 1896 Օգոստ.) (Հմմտ. Zupitza, Gutturale, էջ 234 ի բառն modrwy եւ KZ XXXV 259, Rozwadowski, Quaestiones grammaticae et etymologicae, II 14; Meillet MSL XI 395, V. Henry Lex. étym. du breton moderne, ի բառն meûd) կամ պէտք է մէկդի թողուլ, եւ կամ հարկ է հնդեւր. d եւ t ձայներուն միջեւ փոխանակութիւն մ՚ընդունիլ։ (Հնդեւր. t տառէն ծագած դ ձայնին նկատմամբ՝ որ կը գտնուի դու եւ ուրիշ դերանուանց մէջ, նոյնպէս հնդեւր. tէ ծագած ք ձայնին մասին՝ որ կայ բայերու -ք վերջաւորութեան մէջ՝ յոգն. -քուռ-ի՛ եւ էք, տես KZ XXXVIII 232—235)։

Նոյնպէս եւ հնդեւր. $q^u$ կամ qi զարգացումը հազիւ թէ խանգարուած ըլլայ ղ̥ի հետ ընդհարմամբ. այս պատճառաւ հայ. ակն ասոր (շատ բազմաթիւ) օրինակներէն կը համարիմ, որոնք ցոյց կու տան, որ այս ձայները վանկական ձայնաւորաց մէջտեղ հայ. կ տուած են (Հմմտ. KZ XXXVIII 204.) (ոչ գ, ուստի բառը պէտք է ըստ § 29ի հհնդկ. çoka-է բաժնել). սակայն այս կ ձայնն անշուշտ նախապէս խ ձայնէն ծագում առած է։ § 33ի մէջ պայծառ ցոյց պիտի տրուի որ այս ձայնը չի կրնար գոնէ անփոփոխ մնացած հնդեւր. զուտ նուրբն ըլլալ։

§ 32. Գոքեմի քով կայ գոճ (հմմտ. գոճացանեմ)։ Դժբախտաբար այս բառերուն նկատմամբ չեմ կրնար ընդունելի ստուգաբանութիւն մը գտնել. Բայց ք/ճ կը յիշեցնէ հնդեւր. q (ուստի բոլորովին մէկ կողմը թողլու է գոքեմ բային հոլ. gověti բառին հետ աղերս ունենալու ենթադրութիւնը, որուն վրայ տարակուսած էի ի թերթին KZ XXXVIII 199)։ Ամէնէն աւելի կրնայ ընդունուիլ թէ ճ հնդեւր. qին վերջաձայն լծորդն է [այն ատեն պէտք է ընդունիլ, որ գոքեմ բառը կապ չունի պարսկերէնէ փոխ առնուած ջափագով բառին հետ]։ Միեւնոյն ք/ճ փոխանակութեան կը հանդիպինք նաեւ առա-քինի կամ առաճինի բառին մէջ. փոխանակութիւնը պէտք է որ հոս արմատոյ-բառէն առնուած ըլլայ, ուսկից ածանցած է առա-քինի, առաճինի՝ -ինի վերջաւորութեամբ (KZ XXXVIII 218). այս արմատոյ-բառը կրնայ միայն առաք ըլլալ. ուստի նախնական նշանակութիւնն էր "արութիւն" (virtus,) որմէ յետոյ "ճարտարութիւն" (virtuosité). (հմմտ. նաեւ հայ. հնար՝ ծագում առած նպ. hunarē "ճարպկութիւն". նախաւորէն՝ հնդեւր. *ner- "այր")։ Անշուշտ առա-յառաջ եկած է -ōpa-է (ի-։ա- արմատ). բայց ատոր քով պէտք է որ գոյութիւն ունեցած ըլլայ ձեւ մ'ալ՝ որ յուն. δρῶψ բառին հետ համեմատուելի էր. (եւ այն՝ պէտք է որ յոյն բառին p ձայնը հնդեւր. q մ'ըլլայ)։ Ձայնագիտական ուղղականն *առճ պէտք է որ համեմատաբար երկար ատեն անփոփոխ մնացած ըլլայ. (առ- հազիւ թէ nr-ի մաքուր ձայնական շարունակութիւնն ըլլայ. հնարաւոր էր մտածել nr-ի կանխադոյն կորուստ մը, եւ որմէ ետքը յենած ըլլայ բառիս այր ձեւ. առն՝ ծագած հնդեւր. *anērē, արկ. *anrai.) [առաւոյն բառը անշուշտ *առաւ ձեւէ մը ածանցուած է. եթէ այս ձեւը հ. ու. qtroba "որովայն" բառին հետ նոյնացուի եւ *ontrobhā է մեկնուի, պէտք է ըն-

դունիլ, որ -nr-, -ntr- հայերէնի մէջ -ռ- կու տայ. այն ատեն -առն սեռականը նորակազմութիւն մը պիտի ըլլար. *anr-է ձայնական օրինաց համեմատ ծագած *ar- ձեւ մը *anēr ուղղականին ազդեցութեամբ կրնար վերստին *anr- ձեւին փոխուիլ եւ վերջէն -առն ձեւին յանգիլ. բայց «որոշող» բառին համար կայ ուրիշ ստուգաբանական հնարաւորութիւն ալ, ինչպէս որ այլուր պիտի ցուցընեմ]:

Կ'երեւայ թէ հնդեւր. gʷ կամ g բառավերջին ուրիշ զարգացում մ'ունեցած է՝ քան բառամիջին: Գոնէ գիւրաւ կը մեկնուին քանի մը -ք վերջացող բառեր անով՝ թէ վերջաձայն -g մ'ունեցած են, եւ իրենց ձեւը կը պարտին չէզոք ուղղական-հայցականի կամ արական-իգական ուղղականի, այսպէս [illegible]՝ [illegible] քով, եւ [illegible], եթէ [illegible] կը վերաբերի. այս պարագային անշուշտ հարկ պիտի ըլլայ ընդունիլ *[illegible]- նախնական ձայնաւորում մը՝ եւ նմանաձայնութիւն մ'այլեւայլ ուղղութեամբ. թերեւս կարելի էր լատ. loquor-ի հետ կապել. իսկ [illegible] (խ-արմատ) առ առաւելն ժողովրդական ստուգաբանութեամբ միայն կապ կրնայ ունենալ [illegible]-ի հետ. ([illegible] կրնայ մեկնուիլ հնդեւր. *prek͡-ri-է): Փու-ք եւ [illegible] բառերուն -ք ձայնը յայտնապէս արմատական էր եւ ոչ վերջաւորութիւն: Վերջաւոր -ք կրնայ մեկնուիլ նաեւ -tvo-է. [illegible]՝ յառաջացած [illegible] բառէն, [illegible]՝ [illegible] (զոր Մէյէ MSL VIII 297 ստուգիւ ուղիղ չի մեկներ). Նախադրութեանց ածանցներուն մէջ -tvo- վերջաւորութիւնը միակ հնարաւորն ըլլալու է. այսպէս՝ ի ներք-ս (ուսկից՝ ներքին), արտաք-ս (արտաքին). առաքեմ բայն ալ կազմուած է անշուշտ. *առաք ձեւէ մը՝ որ առընչութիւն ունի առ նախադրութեան հետ, եւ որուն նախնական վերջաձայնը կ'երեւայ բառիս մէջ՝ առա-ջ, առա-ջ-ին. (հմմտ. վեր-ջ, վեր-ջ-ին՝ սկիզբ առած ի վերէ, յուն. ὑπέρ): Այսր հակառակ նախապէս վերջավանկին մէջ գտնուող

գ մը կրնայ գտնուիլ ճաւք բառին մէջ, եթէ այս բառը Լագարդի եւ Մէյէի հետ (Բանասէր, Բ. էջ 14, վերոյիշեալ յօդուածին մէջ) համեմատելու է յուն. μηχάς բառին հետ. պէտք է սկսիլ *ճաւք ձեւէ մը՝ որ վերջէն -ïχα- վերջաւորութեամբ աճած ըլլայ։

Ի թերթին KZ XXXVIII 237 եւ 239 ընդունած եմ թէ հնդեւր. վերջաձայն -d մը կ'իյնայ, եւ շատ դժուարին է նոյնը չընդունիլ նաեւ հնդեւր. -tի համար ալ՝ ի նկատի ունենալով բայաձեւերու շարք մը։ Ըստ այսմ կրնար զարմանալի երեւալ որ -p եւ -q (ու -ds՝ անէծ բառին մէջ, տ. § 10) անփոփոխ մնացած ըլլան։ Սակայն եթէ ի մերձուստ զննուի, ամենեւին զարմանալի չ'երեւար, վասն զի -p եւ -q (եւ -ds) վերջաձայն արմատը կը կազմեն, եւ որով մէկալ հոլովներուն մէջ կռուան մ'ունէին, որմէ զուրկ է հոլովման կարգ մը վերջաւորութեանց մէջ -d եւ -t վերջաձայները։

— Գալով վերջաձայնի միւս կանոններուն՝ Մէյէի հետ միաձայն հաւանութեամբ սորվեցուցած եմ՝ ի թերթին KZ XXXVIII 216, թէ հնդեւր. -m, -n կը կորսուի հայերէնի մէջ, իսկ հնդեւր. -m̥ եւ -n̥ կը մնայ իբրեւ ն։ Իմ աշխատասիրութեանս հետ՝ որուն հրատարակութիւնը Յովհ. Շմիդտի մահուամբը ուշացաւ, միաժամանակ լոյս տեսաւ Օստհոֆէ գրուածք մը՝ Բագրուպանեանի Sprachw. Abh. II թերթին մէջ, ուր (էջ 90 եւ հետեւ.) Օստհոֆ այն տեսութիւնը կը պաշտպանէ թէ բաղաձայն -n, -m մը հայերէնի մէջ անփոփոխ կը մնայ, բայց հմմտ. այս նկատմամբ՝ Մէյէ MSL XII 234 եւ հետեւ. եւ Հեռ. KZ XXXIX 252։ Վանկական ու անվանկ ռնգականներուն տարբերութիւնը՝ զարգացման մէջ, երկու կերպով կրնայ մեկնուիլ։ Կամ կրնայ ընդունուիլ Baudouin de Courtenayի հետ (Enc. powsz. illustr. XXII, 799) թէ հնդեւր. -m̥

եւ -ղ̥ ձայնը մինչեւ իսկ պատմական ժամանակը՝ անընդհատ տեւողութեամբ պահած է իր վանկական պաշտօնը, եւ այս բանն ինծի ամէնէն հաւանականը կ'երեւայ. եւ կամ կրնանք հնդեւր. -ղ̥, -ղ̥ի եւ պատմական հայ. -ղ̥ի միջեւ (վասն զի հայ. -ն ձայնը վանկական էր՝ ամէն ոչ-ձայնաւոր ձայներէ վերջը) նախապատմական -ան մը դնել. բայց այն ատեն ձայնաւորի զարգացումը կրնայ տեղի ունեցած ըլլալ միայն հնդեւր. անվանկ վերջատառ ռնգականի մը կորսուելէն վերջը:

Հնդեւր. -Տ վերջատառը՝ ձայնաւորաց մեծագոյն մասէն ետքը՝ տուած է հայ. -+ (KZ XXXVIII 209 եւ հետեւ.): Այս իրողութիւնը բացորոշ է: Թէպէտ Մէյէ իր Esquisse երկին մէջ (էջ IX) ասոր դէմ կը մաքառի, վասն զի այս տեսութիւնը չի համաձայնիր իր աշխատասիրութեան երկու հատածին հետ (Մէյէի յիշեալ համարներուն մէջ արտայայտած տեսութեան վրայ ուրիշ աղերսիւ կը խօսիմ վարը՝ §77). բայց զարմանալին այն է՝ որ չէ կրցած իմ վարդապետութեանս դէմ ուրիշ առարկութիւններ գտնել՝ բայց եթէ զանոնք միայն՝ զորոնք արդէն ըստ բաւականի նկատողութեան առած էի: Այս մասին մտադիր ըրի զինքը, որմէ ետքը նամակով (19 Սեպտ. 02) ուրիշ առարկութիւն մըն ալ յարոյց, գրելով այսպէս. "այն բոլոր պատճառներուն՝ որոնք կ'արգելուն զիս + վերջատառին նկատմամբ ձեր ունեցած կարծիքն ընդունելու, գլխաւորն է սա այլակերպութիւնը՝ տանոյր, ոյ ձեւով եւ տանո+ (ոյ+ ձեւէ) ո- ձայնիւ. ուստի -+ի առջեւ եղած զարգացումը նոյն է բառավերջի զարգացման հետ, որ ձեր տեսութեան հետ անհաշտ է:„ Սակայն այս՝ ամենայն իրաւամբ շեշտուած այլակերպութիւնն իրը չի փոխեր: "Գ ձայնի առջեւ եղած զարգացումը նոյն է բառավերջի զարգացման հետ՝„ սա պարզ պատճառաւ՝ որ -ցէ ծագած + ձայնը բառին վերջն

էր, որուն բան մը չէր յաջորդեր, ինչպէս որ ուսումնասիրութեանս մէջ շատ անգամ յերեւան հանած եմ։ Ուստի -ան---ք եւ -ան--գէմքերուն միջեւ եղած համաձայնութիւնը բոլորովին կանոնաւոր է. ընդհանրապէս նոյնավանկ -աչ-ի մը պարզուիլն եւ -ո- ըլլալն գործ չունի ամէնեւին վերջավանկի դրից հետ. -անոյր անկատարն՝ ինչպէս առ. հասարակ հայերէն Անկատարը՝ նմանակազմութիւն մըն է նմանութեան Անցեալոյն գոյական բայի (KZ XXXVIII 234) — եթէ մէկը չհամարձակի ըսելու թէ աւելի անհեռացած աներեւութի ձեւի մը բաղադրութիւնն ըլլայ՝ գոյական բայի մ'անցեալին հետ — անոր համար այս ձեւը շատ աւելի կրտսեր կրնայ ըլլալ այն ժամանակէն, երբ -աչ- պարզուեցաւ -ո-ի, ուստի աւելի պարզապէս ցոյց կու տայ թէ կարելի է որ անագան ժամանակի մէջ նոր ծագում առած -աւ- մ'եղած ըլլայ -ոյ-։

Թէպէտ եւ նուազ բացորոշ՝ սակայն ցայժմ տակաւին անհերքելի է իմ այն կարծիքս թէ հնդեւր. -ns վերջնավանկը հայերէնի մէջ -ք կու տայ, տես KZ XXXVIII 227։ —

§ 33. Այն՝ § 31ին մէջ ներկայացուած տեսութիւնը՝ թէ հնդեւր. վանկական ձայնից մէջտեղ գտնուող -q-, -q"- եւ ասոր համապատասխանող հայկական -+-ի միջեւ գրուելու են նուրբ-թաւի մ'եւ -x-ի մ'աստիճանները՝ կը հաստատուի գտնէ իւր առաջին կիսուն մէջ, եթէ նկատողութեան առնուին քմականացեալ քմառագատականները։ Վասն զի քմականացման պարագային՝ յերեւան կ'ելլէ նուրբ-թաւը՝ ն. այսպէս -ոչ+ յոգն., եզ. -ոչ ձեւէն. նաեւ ռնգականէ մը վերջը կը գտնենք նման երեւոյթ մը. ֆ-ն-ե-մ-ի քով կայ ֆ-ն-չե-մ (հոս ես բնականապէս կ'ենթադրեմ թէ ֆ-ն-ե-մ եւ իւր տարբեր ընթերցուածին ֆ-ն-+-մ ուղղագրութիւնը ճիշդ է, բայց ոչ՝ ֆ-ն-կ-մ)։ Բնականապէս ն. պէտք է որ ծագում առած ըլլայ +է։

ուստի եւ ասիկա նախաստիճանն ըլլալու է ոչ միայն Գ-ի՝ Նէ եւքը, այլ նաեւ ձայնաւորէ մը վերջը գտնուող Կ ձայնին համար։ Ով որ բաղձանք ունի՝ բնականաբար կրնայ ընդունիլ թէ Կ ձայնն ուղղակի ջնջեալ +էն յառաջ եկած է (առանց ի միջին աստիճանի մը) եւ կրնայ օրինակ բերել Մշոյ բարբառին մէջ հանդիպածը՝ նուրբ-թաւէն անցումը միջատառնուրբի (§ 5)։ Մարդ կրնայ թէ մէկ եւ թէ միւս մեկնութիւնը նախամեծար համարիլ, սակայն սա իրողութիւնը միշտ հաստատուն կը մնայ թէ հնդեւր. զուտ նուրբերէն նախապէս ծագում առած նուրբ-թաւերը վանկական ձայնից մինչեւ մնացած չեն ամենեւին, այլ կամ բաց բաղաձայն եղած են եւ կամ զուտ նուրբ։ Այս պատճառաւ խնդիր է թէ ղ ինչո՞ւ հաստատուն կը մնայ։ Սկզբնափակ բաղաձայնի մը երկրնութենէն չի մեկնուիր ղ-ի անփոփոխ մնալը, վասն զի ց (k̑-է ծագած ու ի առաջին աստիճանը) իբրեւ պարզ ձայն կը զարգանայ, եւ միեւնոյն հակադրութիւնը կայ նաեւ ջ (որ վանկական ձայնից մինչեւ կը մնայ) ու յ (ուսկից վանկական ձայնից մինչեւ զ սկիզբ կ՚առնու) ձայներուն միջեւ։ Արդ՝ ղ, ճ ու ջ պէտք է որ ջնջեալ շրջանին մէջ բոլորովին տարբեր իմաստով կրկնաձայն եղած ըլլան՝ քան ց, ծ, յ, ուրիշ խօսքով՝ այն շրջանին համար, որ հնդեւր. զուտ նուրբերուն զարգացման աւարտելէն յառաջ է, kʿ̯ ki̯ gi̯ դնել պէտք է։ Եթէ ուզուի ընդունիլ թէ ընդհանուր արեւելեան հնդեւրոպական քմականացում մը կար, այն ատեն հայ լեզուն ցոյց կու տայ՝ լիտուերէնի չափ ապահով, թէ այս քմականացումը շատ աճած չէր։

§ 34. Սակայն հայերէնի քմառադատականաց քմականացման կանոնները շատ մթին են։ Կ՚ընդունուի, եւ ես ալ ընդունած եմ, թէ տարբեր արտասանութեան կերպը քմականացման մէջ դեր մը կը խաղայ, եւ ի մասնաւորի կը մերժուի թէ հնդեւր. միջակները հայերէնի մէջ քմականա-

նալ կարենան. Հմմտ. Բրուգման Grundr. $I^2$, 619 եւ հետեւ.։ Այսպիսի տեսութիւն մ'անշուշտ դիւրընդունելի կ'երեւայ, երբ նկատողութեան առնուին այսպիսի օրինակներ՝ աչ-ք, հսլ. oči, ջերմ, յուն. θερμός եւ կին գոթ. qinō։ Մէյէ (Esquisse էջ 12) նոյն իսկ մինչեւ անգամ կը պնդէ թէ միայն միջակ-թաւը կրնայ քմայնանալ։ Այս տեսութեան անճշդութիւնը բացորոշ է, բայց նաեւ Բրուգմանի ըմբռնումն ալ անհաստատ։ Ամէն յօդաւորութեան կերպերու մէջ ալ օրինակներ կը գտնուին թէ քմայնացման տեղի ունենալուն եւ թէ չունենալուն։ Տեղի ունեցած չէ հնդեւր. նուրբի մը քմայնացումը սա բառերուն մէջ՝ քերեմ, յուն. κείρω (§ 28), հինգ, հնգետասան, արգելում, յուն. ἀρκέω. միջակ-թաւի մը քով՝ գեղձ-ք, հսլ. žlěza (§ 18). նուրբ-թաւի մը քով՝ խինդ, լեհ. chęć «կամք» (KZ XXXVIII 388)։ Քմայնացումը տեղի ունեցած է նուրբ-թաւի մը քով, օր. աղ. բառիս մէջ՝ գիշեր, հսլ. večerъ (KZ XXXVIII 205), հնդեւր. միջակի մը քով՝ զօր. ծի-ղ (ծիղ ծեղ.) սեռ. ծի-ղոյ բառին մէջ. ղ ձայնին յառաջ բերած ի- երկբարբառին մասին հմմտ. վարը՝ § 40. ծի-ղ կերպարանքս ամէնէն աւելի կը մերձենայ յուն. βέλος բառին, իսկ նշանակութեան կողմանէ ամէնէն լաւ կը համաձայնի՝ յուն. βελόνη, լիտ. gelůnis «խայթոց». (հսլ. igla «ասեղ», սերբ. ìgla, հյց. ïglu, ուստի նախնաբար ĭ նախադաս ձայնով, որ թէ հոս եւ թէ ուրիշ տեղեր ըստ երեւութին յաւելուածոյ տարր մըն է). Թերեւս այս տեղւոյ վերաբերի նաեւ ալբ. glišt «մատ» բառը. ալբ. բառիս ցարդ տրուած մեկնութիւնները գոհացուցիչ չէր գտներ Բրուգման IF XI 285. -št այն վերջաւորութիւնն է՝ որ կը գտնուի նաեւ հհնդկ. aṅguṣṭhá-s «բութ» բառին մէջ. արմատին ձայնաւորութիւնն ալ այնպէս է՝ ինչպէս է հսլ. i-gl-a բառին մէջ։ Հնդեւր. gē ծա-

գած հայ. ճի համար ուրիշ օրինակ մըն է ճէմ, ճեմ, ճմլեմ (է ստնչս ճմլել դէղակս) յուն. ὄγγεμος· συλλαβή, γέντο "առ", հոլ. žęti ներկայ žьmą "ճմլել", իռլ. gemel "շղթայ." (վասն զի Wiedemann, ի թերթին BB XXVIII 214, սխալմամբ հնդեւր. ĝ մը կ'ընդունի gemel եւ γέντο բառերուն մէջ). ըստ Բրուգմանի IF XIII 88 լատ. premō pressī շրջած փոխուած է *gemō pressīէն: Երրորդ օրինակ մըն է հայ. աճեմ լատ. augeō, լիտ. áugu եւն. լիտուերէնի շեշտը ցոյց կու տայ նախաւոր երկար երկբարբառ մը՝ որ ըստ ինքեան կրնար իւր վերջին տարրը կորսնցընել. (հմմտ. լիտ. sotùs "կշտացընող" եւ հոլ. sytъ "կուշտ"): Նոյն արմատը կ'երեւայ՝ sով աճած՝ յուն. αὔξω բառին մէջ. Նոյնպէս եւ իռլանդերէնի մէջ՝ բայց սի կորուստով, հին իռլ. ásim, նոր իռլ. fásaim (իռլանդերէն բային մեկնութիւնը հաստատելու համար՝ բաղձալի էր բրիտանական համազօր մը գտնել. այս համազօրը պէտք էր ch ունենալ՝ ստուգաբանութիւնը հաստատելու համար. իսկ բրիտանական համազօր բառ մը sով՝ հակադարձաբար այն ստուգաբանութիւնը կը հերքէ. բայց ես առ հասարակ բրիտանական լեզուաց մէջ չեմ գտներ բան մը՝ զոր դոյզն հաւանականութեամբ ալ կարենար հոս համեմատուիլ. կըմր. awsaidd "հաստուն" ձայնապէս չի համաձայնիր. աւելի o կը սպասուէր՝ փոխանակ aw-ի, հմմտ. brodyr "եղբարք" եզ. brawd):

§ 35. Հայերէնի քմականացման կանոնները պէտք է շատ հին շրջանի մը մէջ փնտռել: Ուստի կարելի չէ այսպէս ըէնդ բառին մէջ՝ վերջաձայնին կորուստը պատճառ բռնել քմականացման յերեւան չգալուն: Վասն զի քմականացումն (իւր սկզբան մէջ) աւելի հին է՝ քան այն շրջանը, երբ հնդեւր. նուրբերը հայերէնի մէջ բաց բաղաձայն եղած են, եւ տակաւ շատ հին դիպուած մըն է անշուշտ.

աւելի հին՝ քան վերջաձայնի օրէնքը։ Փակ բաղաձայններու ձայնաշրջութիւնը հայերէն լեզուին մէջ կատարուած էր արդէն (հմմտ. Բ. մաս) ամէնէն ուշը՝ իբր 500ին Ն. Ք. ուստի քմականացումն շատ հնագոյն ժամանակի մը կ'իյնէ։ Աւելի հին է՝ քան գ-ի ծագումն հնդեւր. ṷէ, ք-ի զարգացումն հնդեւր. sṷէ կամ tṷէ, կ-ի ծագումն հնդեւր. dṷէ, եւ -րկ- ձայնից յառաջացումն հնդեւր. -gʷr-է. վասն զի այսպիսի երկրորդական գ, ք, կ, րկ ձայներն երբեք քմական եղած չեն։ Ուրեմն հազարաւոր տարիներէ ի վեր հայ լեզուն այլ եւս հակակրութիւն ունեցած չէ՝ յետաքմական բաղաձայն մը կապելու լեզուածայր ձայնաւորի մը հետ. անոր համար զարմանալի չէ որ արդէն հնագոյն մատենագրութեան ժամանակն իսկ՝ քմականացեալ եւ ոչ-քմականացեալ քմառագատականներու միջեւ որեւէ փոխանակութիւն անհետացած է, որով հայերէնն ո՛չ միայն սլաւ՝ այլ նաեւ յոյն եւ արիական լեզուներէ շատ կը տարբերի։ Փոխանակութեան մը միայն բոլորովին չնչին մնացորդներ կրնանք գտնել եւ յիշել՝ ուղք եւ ողն, փանչեմ եւ փանգամ § 33, փչեմ եւ փուք, ողոչեմ եւ ողոք՝ § 32, փխրան եւ փշրանք, ածուխ (սեռ. ածխոյ, ուր ծ կրնայ ջէ ծագած ըլլալ) եւ ագռաւ, խեղ եւ շեղ. (Բուգգէ IF I 447. ասի հնարաւոր է նաեւ այն ատեն, երբ խեղ աղերս ունենայ նախ յուն. χωλός ի հետ.) քառասուն (*qʷtṷ- ձեւէն) եւ չորք։ Բնականապէս փոխանակութիւնս միայն բազմազգի նմանակազմութիւններով կրնայ անհետացած ըլլալ։ Ուրեմն ակներեւ է թէ քմառագատականի մ'արգասաբեր վերջաւորութեան մ'առջեւ մնալը ձայնաբանօրէն բան մը չի ցուցըներ. այս կարգէն է ներկայի վերջաւորութիւնն -ե-, նուազական վերջաւորութիւնն -իլ. զ. օր. մագիլ, յաճախ հնագոյն -էն-ի մը տեղն անցնող վերջաւորութիւնն -ĭǵen- -ĭǵon-, զ. օր. անկիւն, հմմտ. ἀγκών. այս վերջաւորու-

թիւնը հին -էն-ի մը տեղը բռնած է նաեւ բառերու մէջ՝ հեբէ-ն յուն. περόνη, ոբէ-ն (խառնուրդ մը -ր արմատի մը եւ -ն- արմատի մը), յուն. ἔαρ, εἶαρ. երբեմն -էն-ի եւ -i̯en-ի միջեւ տատանում մը կ'երեւայ, զոր օր. էռանդն, սեռ. էռանդեան. (իսկ ոտքն, սեռ. ոտեան բառին մասին հմմտ. § 47):

Սակայն եւ այնպէս կարելի չէ ընդունիլ թէ ամէն +, գ, կ, խ որեւէ լեզուածայր ձայնաւորի մ'առջեւ նմանակազմութեան արդիւնք ըլլայ: Ո՞ր օրինակին համեմատ նմանակազմուած ըլլալու է՝ օրինակի աղագաւ, հինգ. յամենայն դէպս գոնէ ո՛չ *pŋq$^{u}$to-, *peŋq$^{u}$to-ի համեմատ, վասն զի նախ թողլով ալ այն պարագան՝ որ q$^{u}$ հոս իբրեւ միջին բաղաձայն՝ պէտք էր շատ կանուխէն իյնալ, նոյն իսկ յիշեալ ձեւին մէջ գ չէր կրնար երեւալ: Բոլորովին ապահով է որ հինգ բառին մէջ՝ նուրբին ձայնաշրջութեան բովանդակ ընթացքին ժամանակ գոյութիւն ունէր ոչ-քմականացեալ ձայն մը. ուստի եթէ հոս նմանակազմութիւն մը կը փնտռուի՝ ասի կրնայ միայն այն ըլլալ՝ որ իբր այն թէ kʽi̯ մը նմանակազմաբար + եղած ըլլայ, սակայն առ հասարակ նմանակազմութիւններն այն ատեն տեղի ունեցած ըլլալու են, երբ kʽi̯ արդէն շ եղած էր: Ուստի պէտք է որ քմականացումն ինչ ինչ դիպաց մէջ ըստ ձայնական օրինաց տեղի ունեցած չըլլար. եւ շատ կարելի է որ քմականացեալ ձեւն ո՛չ ամէնուրեք՝ ուր երեւան կու գայ, միանգամայն ձայնական օրինաց համաձայն ըլլայ, այլ հոս ու հոն նմանակազմութենէ ալ ծագած: Երբ՝ օրինակի համար, իրարու քով ունինք՝ ջեր (ո- կամ է-արմատ) յուն. θέρος, ջերմ, յուն. θερμός, ջեռում եւն, այն ատեն հարկ մը չկայ որ այս ամէն ձեւերուն մէջ ջ ձայնական օրինաց համաձայն ըլլայ:

Տարակուսական է թէ արդեօք քմականացումն երբեմն դուրս մնացա՞ծ է հնդեւր. i̇ ձայնաւո-

րի մ՚առջեւ։ Թէպէտ կէամ յառաջ կը բերուի սովորաբար *gʷii̯ā- ձեւէ մը. բայց ամենայն հաւանականութեամբ *gʷei̯a- մըն ալ հնարաւոր է ձայնապէս (i̯ ձայնաւորին անկման մասին հմմտ. երէ-ք՝ ծագում առած *trei̯esէ), եւ ձեւագիտօրէն ալ առոր դէմ գրեթէ ոչինչ կրնայ առարկուիլ (փոխանակ ā-ի՝ ըստ պէտոյից կրնայ a կամ „ə" դրուիլ)։ Երբ համեմատուի հինգ յուն. πέντε, եւ չորք՝ զոր ամէնէն աւելի յուն. τέτορες-ի հետ համեմատելու է, այն ատեն մերձաւորագոյնը կ՚երեւայ նախահնդեւր. շեշտին ազդեցութիւնը նկատի առնուլ։ Չորք եւ τέτορες յառաջ եկած կ՚ըլլային այն ատեն *qʷétores ձեւէ մը, այսինքն իգականի (հհնդկ. cátasras) ազդեցութեամբ շեշտն ու բաղաձայնը կերպարանափոխած արական ձեւէ մը. այն ժամանակը՝ -t- հայերէնի մէջ՝ ինչպէս այլուր, եղած կ՚ըլլար i̯. բայց առիկա պէտք էր e (ինչպէս եւ u?) ձայնաւորէն առջն ինալ, եւ eo ըլլալու էր՝ o (ուստի եւ չորք բառին համար առաջարկուած այլեւայլ մեկնութիւններէն՝ զորոնք կարելի է Հիւբշմանի քով I 485 տեսնել, ճշմարտութեան ամէնէն աւելի մերձաւորը կ՚ըլլայ Բուգգէի մեկնութիւնը)։ Ուրեմն քմականացումն eի առջեւ տեղի ունեցած կ՚ըլլայ միայն շեշտաւոր վանկին մէջ, հմմտ. ճիղ βέλος, ջեր θέρος. կոչեմ հնդեւր. *voqʷéi̯ō, ածեմ հնդեւր. *ā(u)géi̯ō (սաստկական կազմութիւն), շերտ (ի-արմատ) հնդեւր. *sqhéd-ri-s (հմմտ. KZ XXXVIII 205) միեւնոյն շեշտով՝ ինչպէս ունին յուն. ἄχρις, ὄχρις, ἴδρις, շեղ (ո- եւ ի- արմատ, այս պատճառաւ թերեւս նախնաբար չէզոք գոյական մը -os վերջաւորութեամբ, հմմտ. ջեր, ո- եւ ի- արմատ, գոյակ. եւ ածական. հմմտ. դարձեալ KZ XXXVIII 220) կերպապէս = յուն. σχέλος, լատ. scelus. միւս կողմանէ՝ հմմտ. կին, γυνή, գեղձ-ք, ռուս. железá, արգելու-մ՝ հնդեւր. -néumi (§ 17), կինդ

հնդեւր. -tí-, ե-չեր՝ նախաւոր շեշտեալ յաւելուածով: Սակայն ունեցած տատաղձնիս շատ զաղփաղփուն է, որով չենք կրնար կանոնը բոլորովին ապահովել. դժուարութիւն կը յարուցանէ գէշեր, որ չի համաձայնիր լիտ. vãkaras, յոգն. vakaraĩ բառին հետ, այսու հանդերձ գէշերէ ներգոյական ձեւը (մինչդեռ սեռ.-տրակ. է գէշերոյ) կը ցուցնէ արմատի կազմութեան մէջ որեւէ տատանում մը. արդեօք այս բառը նախապէս յուն. αἰθήρ-ին նման կազմութիւն մ'ունէր: [Մէյէ (MSL XIII 244) հայերէն քմականացման համար իմ տուած մեկնութիւնս բոլորովին կը մերժէ, վասն զի չի կարծեր թէ քմականացումը կրնայ շեշտէն կախում ունենալ. բայց այսպիսի կախում մը թէ շուեդերէն եւ թէ սլաւերէն լեզուաց մէջ բոլորովին ակներեւ է, տ. KZ XL 217. ուստի ես իմ կարծեացս վրայ հաստատուն կը մնամ]:

Բնականաբար i̯ ձայնին առջեւ քմականացումը միշտ տեղի ունեցած է. չու՝ հհնդկ. cyuti-, տռ. այս չոգայ. ճանաչեմ (տես § 14) պիտի ունենայ միեւնոյն արմատոյ-կազմութիւնը՝ զոր ունին լատ. faciō, jaciō:

§ 36. Քմառագաստականաց քմականացման քննութիւնը կ'առաջնորդէ զմեզ ուղղակի այն բաղաձայն խմբերուն ուսումնասիրութեան, որոնց վերջին տարրն էր i̯: Հնդեւր. q կամ q" մը՝ ինչպէս տեսանք, i̯ ձայնի առջեւ մնացած է նուրբթաւի մ'աստիճանին վրայ եւ այլուստ տեղի ունեցող անդրադոյն զարգացման չէ մասնակցած: Ճիշդ այսպիսի զարգացումն ունեցած է i̯ ձայնին առջեւ հնդեւր. t գիրը. տասր իբրեւ օրինակ՝ մեծ հաւանականութեամբ պիտի գտնուի վարը՝ ուխտ բառը: Ընդհանրապէս ատամնական+i̯ ստուգիւ միշտ նոյն արդիւնքն ունեցած է՝ ինչ որ ունեցած է քմառագաստական+i̯. (ti̯ եւ thi̯ < չ, di̯ > ճ, dhi̯ > ջ, գ. օ. մէջ, լատ. medius):

Չի կրնար ցուցուիլ թէ ǰ մը նուրբ-թաւի աստիճանին վրայ պահած ըլլայ նաեւ յառաջընթաց k̂ կամ ĝ մը, եւ ուղղակի ատոր հակառակ կ'ելլէ ձ- խմբին քննութիւնը (§ 37) որ ǰ- խմբին հետ զուգընթաց է։ Ցին կը համապատասխանէ յուն. ἰχτῖνος-ի, որուն մէջ հազիւ թէ հնդեւր. ǰ կամ j մը փնտռելու ենք (հմմտ. KZ XXXVIII 209). ատոր հակառակն այս բառը ձայնաւորմամբ ոչ հհնդկ. çyená-ի եւ ոչ ալ աւեստ. saēna-ի կը համապատասխանէ։ Յամենայն դէպս ընդունելու է թէ ǰ քմականներէն վերջը կորսուած է, եւ այն՝ հաւանականագոյնս հետակորոյս կորսուած. հայերէնի քմականները ստուգիւ նախապէս ǰ- ունեցող ձայներ էին, եւ ǰ ձայնով մը չէին կրնար ձայնաշրջիլ։ Անշուշտ օրինակ մըն է լուծ՝ § 14. իսկ սեւ հհնդկ. śyāvá-՝ եթէ ընդհանրապէս բնիկ հայերէն է, անշուշտ k̂iǰ- ունի։

Նաեւ շրթնականներէն ետքը միացած ըլլալու չէ ǰ իբրեւ ինքնակաց ձայն մը. բայց անկարելի չէ ընդունիլ շրթնականին ձայնաշրջութիւն մըն ալ։ Կրնար դիւրին երեւալ՝ գհայ. ոգի այնպիսի եղանակաւ կապել իր համանիշ հոգի եւ շոգի բառերուն հետ, որ մասամբ *(e)pi̯ եւ մասամբ կրճատեալ ձեւով *(e)p կազմուած արմատ մ'ընդունուի։ Շոգի բառին հետ անշուշտ աղերս ունի Մէյէի (MSL X 278) տարբեր կերպով մեկնած բառը՝ շունչ, շնչեմ (ուր ն-ն վերջաւորութիւն կրնայ ըլլալ, հմմտ. մեղանչեմ, կորնչիմ § 14.) Նոյն իսկ ռունչ եւ հռունչ, ռնչեմ բառերն ալ ի վերջոյ «շնչել» իմաստով արմատէ մը կրնան ածանցիլ։ Արմատը պէտք էր մերձաւորապէս *ou-, *u- դրուիլ։ Ըստ այսմ pi̯ տուած ըլլալու էր շ։ Բայց ամբողջ ենթադրութիւնը շատ անապահով է, եւ աւելի անապահով կ'ըլլար հող-որդ եւ շող-կողեմ բառերուն կապակցութիւն մ'ենթադրելը (*alo- դեր-

անուանական արմատէ մը, հմմտ. լատ. al-ter): Հող- եւ ղող- ձեւերուն քով կը գտնուի նաեւ փող- (փող-ոտան) եւ բող- (բողո-ջոյն), իսկ նմանայանգ բառեր հայերէնի մէջ առհասարակ այնչափ յաճախադէպ են՝ որ ղող-ի քով հող-, եւ ղօղէ բառին քով հօգէ կրնան շատ դիւրութեամբ պարզ դիպուածի մ'արդիւնք ըլլալ:

§ 37. ա̭ յայնմ կը համաձայնի ĵ ձայնին հետ՝ որ նուրբ-թաւի մ'ատրիճանին վրայ կը պահէ յառաջընթաց հնդեւր. t մը: Արդէն § 32ի մէջ տեսանք որ է ներքոյ, արքայ եւն ամենայն հաւանականութեամբ -tvo- վերջաւորութիւն մը կը բովանդակեն: Կը գուշակեմ թէ Ըեքէմ բայն կրկնակազմ ըլլայ. (Մէյէի MSL VIII 289 տուած մեկնութիւնն ինծի ամենեւին համոզիչ չ'երեւար). եւ որովհետեւ "սրութիւն" եւ "ոյժ" իմաստները հհնդկ. tejas- բառին մէջ ի մի միացած են, կը նշանակէ թէ սրութիւնը ուժի (կորող զօրութեան) առանձին մէկ տեսակը կ'ըմբռնուէր, ուստի Ըեքէմ կրնար կապ ունենալ հհնդկ. tavīti "զօրաւոր է" բառին հետ. (կամ Ըեքէմ փոխ առնուած բառ մըն է յուն. θήγω է:) — Նաեւ Տ̂Աէ ծագած + ձայնն ալ բառամիջին անշուշտ անփոփոխ կը մնայ: Թերեւս օրինակ մըն է ոչքոյ (զոր Պ. Եննէն IF. Anz. XIV 50 հատեան արձանագրութեանց մէջ գտած կը համարի). այս բառը կրնար թերեւս հհնդկ. ǵṣvá-s "բարձր" բառին հետ աղերս ունենալ. յամենայն դէպս (ինչպէս որ ոչքոյն ածականը ցոյց կու տայ) -ոյ իբրեւ վերջաւորութիւն՝ բաժնելու է: Նման վերջաւորութիւն մը կը տեսնուի շատ մ'ուրիշ անձը յատկանշող բառերու մէջ՝ ծերոյ, ջորոյ, փեոյ, հոկոյ, էրէխոյ: Եւ որովհետեւ այս բառերն -ի-արմատներ են, դիւրաւ կրնան -āti-ի ձեւէն յառաջ բերուիլ: Ասոնք ի բնէ անշուշտ վերացեալ կամ հաւաքական անուններ էին: Ուստի ծերոյ (յուն. γέρων, γραῦς) նախապէս

"ծառայք, ընդոծինք" ըլլալու էր։ Անշուշտ այս տեղւոյ կը վերաբերի նաեւ կռնտոյ-ք, հայց. կռնտոյս, այժմ յոգնակի, բայց ի սկզբան անդ ստուգիւ եզակի հաւաքական մը՝ կէն բառին։ Առոր հակառակը -ոյ վերջաւորութիւնը կրնայ -āto-ի վերածուիլ հոն՝ ուր ածական է, այսպէս՝ մարգարտեայ, այծեայ (այծ). սակայն աւելի բոլորովին ապահով ալ չէ, վասն զի հնդեւր. -ti- վերջաւորութիւնը շատ անգամ հայերէնի մէջ ածականօրէն յերեւան կու գայ, հմմտ. ծանաւթ՝ § 14, հաստատ՝ § 79, ղէտատ, ղ-էտամէ (բաղադրութիւն գամ բայէն, անձին ղէտալ = Նոր հայ. ինք իրեն գալ)։ Ցայտնի չէ թէ անդրադարձ կազմութիւնները՝ ինչպէս խաւարային, ամառային (վերջաւորութիւն -ātino-) դոյականներէ՞ թէ ածականներէ յառաջացած են։ — Մէյէ (Esquisse էջ 29) կ'ուզէ ապացուցանել թէ սկզբնական dv- հայերէնի մէջ կը ներկայանայ իբրեւ երկ- (երկու-). ր "երդմնայնական dի արտասանութեան միացորդ մը" պիտի ըլլայ. դժբախտաբար առոր կը հակառակին ոչ միայն կրկին, այլ եւ թուականի միւս ածանցումները. այսպէս՝ կող (կրկնած), կից (միացեալ, ընկեր) (Մէյէ MSL VIII 296), կէս, կոյս (կողմն) (§ 38)։ Երկնչիմ, երկեւղ որեւէ կապակցութիւն ունենալու չէ յուն. δέοςի հետ. արդէն խնամի բառերն՝ երկ (վաստակ) եւ երկն սեռ. երկան (երկունք) բոլորովին կը հերքեն այս ենթադրութիւնը։ Ընդհակառակն ձայնապէս դժուարութիւն չկայ գոթ. faurhtjan-ի հետ համեմատելու (այս բառին յառաջուան ստուգաբանութեան նկատմամբ՝ հմմտ. Zupitza Gutturale էջ 5). հնդեւր. արմատ *perg- կամ *pergᵘ-։ Չեմ կրնար գտնել որ Մէյէի ենթադրութիւնը՝ dv- ի մասին, պատշաճի ժողովրդական "ստուերագրի" մը։

Մենք § 29ի մէջ հաւանական գտանք որ քմառադատականները սի առջեւ քմական կ'ըլ-

լան։ Այն առեն միեւնոյն բախտն ունեցած ըլլալու են նաեւ ղ̑ւի առջեւ. օրինակներ ծանօթ չեն ինծի։

Ի թերթին KZ XXXVIII 197 եւ հետեւ. ընդունած եմ որ k̑ʷ հայերէնի մէջ յերեւան կ'ելլէ իբր շ, իսկ g̑hʷ- իբր յ։ Անկէ կը հետեւի՝ թէ ի նկատի ունենալով արտասանութեան կերպը՝ k̑ ինչպէս ուրիշ շատ մը դրից մէջ՝ նոյնպէս եւ ղ̑ւի առջեւ՝ բաց բաղաձայն եղած է։ Արտասանութեան դրից նկատմամբ բաց բաղաձայններն աւելի դիւրաւ կը ձայնաշրջուին՝ քան փակ բաղաձայնները, ինչպէս որ § 14ին մէջ մտադիր ըրի։ Այսպէս k̑է նախ եւ առաջ սկիզբը առած § ձայնը կրնայ ղ̑ւի միջնորդութեամբ շի ձայնաշրջուած ըլլալ, թէպէտ եւ հնդեւր. g̑hէ ծագում առած ǯ անփոփոխ մնաց եւ չձայնաշրջեցաւ։

Ըրթնական անձայնեղ բաղաձայններէն վերջը՝ ծանօթ չեն ինծի ղ̑ւի օրինակներ։ p̑ բաց բաղաձայն եղած ըլլալու է ղ̑ւի առջեւ՝ ինչպէս ուրիշ դիպուաց մէջ, բայց չեմ գիտեր թէ fʷ-է անդրադոյն ինչ եղած է (>f- >?- կամ թերեւս fʷ > hʷ- > +? առաջինն ինծի ամէնէն հաւանականը կ'երեւայ)։ Բ ա ղ ր ո ւ պ ա ն ե ա ն կ'ընդունի թէ -pʷ- հայերէնի մէջ եղած է ղ, տես Հանդէս Ամսօրեայ 1903, 150 եւ 221։ Իւր օրինակներէն մէկ քանին այն ենթադրութեան վրայ կը յենուն՝ թէ սկզբնատառ հնդեւր. q, qʷ հայերէնի մէջ ξ կ'ըլլայ, որ ինծի անհաւատալի է։ Միւս օրինակները (ինչպէս՝ ողբէմ = լատ. aperiō բարդութիւններ են յուն. ἀπό ի համապատասխանող նախադրութեամբ մը։ Բաղրուպանեան իբր նախահայկական ձեւ կը դնէ *ap, իսկ ես այն կարծիքն ունիմ թէ միայն նախաձեւ *ab մ'ընդունելով կրնանք մեկնել։ Չեմ կարծեր որ ղ̑ զարգացման վրայ ազդեցութիւն մ'ունեցած ըլլայ.

ուստի փոխանակ Բագրուպաննեանի առաջարկած *ap-u̯ōr-ին՝ կրնամ *ab-ur- դնել, որ ձեւագիտական տեսակէտով հաւանականագոյն ալ ըլլալու է։

§ 38. Հաւանականագոյնն՝ ինչպէս յաջորդող i̯ կամ u̯, նոյնպէս ալ յառաջընթաց i̯ կամ u̯ նոյնպիսի պահպանիչ ազդեցութիւն մ'ունեցած է հնդեւր. նախերու արտասանութեան կերպին վրայ։ Այս նկատմամբ հազիւ թէ ժառանգեալ եւ երկրորդաբար զարգացած երկբարբառներուն միջեւ տարբերութիւն մը կը նշմարուի։ Հնդեւր. ai եւ au հայերէնի մէջ անփոփոխ մնացած են, եւ oi եւ ou բառասկզբան մէջ եղած են այ եւ ու. (հմմտ. Հեղինակիս գրածն ի Թերթին KZ XXXVI 99)։ Ասկէ զուրս՝ oi եւ ei ի մի ձուլուած են։ Շեշտին նախընթաց վանկի մը մէջ երեւան կ'ելլեն իբր է (հնդ. oiի համար պայծառ օրինակ մըն է հայ. գինի յուն. οἶνος ալբ. verε), իսկ չեշտեալ ձեւի մէջ ի յայտ կու գան իբր է. oiէ ծագում առած է ձայնաւորի օրինակներ կը գտնուին Բրուգմանի քով Grndr. I² 180. սակայն ի հարկէ հնդեւր. ei եւ oi փոխանակութեան պատճառաւ՝ դժուար է բացարձակապէս անհերքելի օրինակ մը գտնել oiի համար։ Սակայն այն կէտին համար՝ թէ oi ալ այն բախտն ունեցած է՝ զոր ունեցած է ei, կրնայ անուղղակի վկայութեան կոչուիլ այն պարագան՝ որ հայերէնի մէջ չկայ փոխանակութիւն մը՝ որ կարենար իբրեւ շարունակութիւն մ'արժել հնդեւր. ei / oi փոխանակութեանը։ Թէպէտ կէս, սեռ. կիսոյ նման է կոյս (կէ-: —արմատ "կողմն" նշանակութեամբ) բառին, սակայն անշուշտ միայն այն կերպով՝ որ "երկու" թուականին՝ երկու իրարմէ տարբեր ածանցումներ ընդունելու ենք. (*dvoiko- եւ *dvoukā)։ է նախ եւ յառաջ ei ձեւէ ծագած է. ուստի եւ հնդեւր. oi պէտք է որ ei ձեւին ձայնաշրջած ըլլայ։ Այնպէս ալ հնդեւր. eu եւ ou ի

մի ձուլուած են եւ կ'երեւան՝ շեշտին նախընթաց վանկի մը մէջ իբրեւ ս, շեշտեալ՝ իբրեւ օi. այս օi ձայնին ծագման սկիզբը պէտք է ըլլալ öս (> öü > öi > օi) ինչպէս որ ի Թերթին KZ XXXVIII 324 քսած եմ։ Ամենապարզն է ընդունիլ թէ երկու երկբարբառներուն ի մի ձուլման առաջին քայլն եղած ըլլայ՝ ինչպէս Բրուգման Grndr. I² 194 կ'ընդունի, այն՝ որ eս նախապէս օս եղած է։ Օրինակի համար օս ձեւէ öսի անցում մը կը գտնուի դանիական գաւառաբարբառներուն մէջ (տ. Valdemar Benike եւ Marius Kristensen, Kort over de danske folkemål, քարտէս 14 եւ 15). ասկէ զատ՝ կայ əս, զոր կ'ուզէի իբրեւ միջին աստիճան մը նկատել. ուստի եւ նմանեռանգութեան* արդիւնք է՝ ei եւ օi, eս եւ օս երկբարբառներուն միացումը. բայց այս նմանեռանգութիւնը մի միայն յայտնապէս բաւական փակ e եւ o ձայնաւորներուն վրայ ազդած է. աւելի բաց a ձայնաւորն անփոփոխ մնացած է, կամ, ինչպէս որ զգուշութեամբ բացատրելու է՝ ի նկատի ունենալով § 30ին կատարածը, այնչափ զօրաւոր կերպով չէ ազդուած, որ գրի գիւտին ժամանակը պէտք չէ զգացուած — ձայնէն տարբեր

* Նմանեռանգութիւն (գերմ. Umlaut) բառը կը նշանակէ ձայնաւորի մը՝ անվանկ ձայնի մ'ազդեցութեամբ երանգումը կամ գունաւորումը: "Նմանեռանգութեան„ գլխաւոր տեսակներն են 1) ի-նմանեռանգութիւն, որ iէ մը կամ j ունեցող ձայներ ձայնէ մը կամ բաղաձայնէ մը յառաջ կու գայ. գոթ. fulljan գերմ. füllen. 2) ու-նմանեռանգութիւն, որ uէ մը կամ u ունեցող ձայներ ձայնէ մը կամ բաղաձայնէ մը յառաջ կու գայ. գոթ. valus "գաւազան„ հհիւս. vǫlr. Նմանեռանգութենէ տարբեր է ձայնաւորներու ներդաշնակութիւնը (Vokalharmonie). որուն մէջ անվանկ ձայները դեր մը չեն խաղար (գ. օր. թրք. sävmäk „սիրել", եւ՝ jaz-mak "գրել„:

նշանախեց մ'ալ գործածելու։ Սակայն կարելի չէր ժխտել նաեւ այն կարելիութիւնը թէ թերեւս ոչ թէ մաքուր ai եւ au կ'արտասանուէր այլ աւելի äi եւ åu (շատ բաց ä եւ å ձայնով)։ Արդէն ի թերթին KZ XXXVIII 201 խօսած եմ թէ հնդեւր. t իբրեւ ն կը մնայ – երկբարբառներէն վերջը՝ (—ն, երէ—ոյն, վերջաւորութեան կողմանէ = παίδευσις. Բար—թի—ն՝ KZ XXXVIII 219 եւ հետեւ.)։ Նոյնպէս անշուշտ նաեւ i-երկբարբառներէն վերջը. Բագրատունեան (տես Հանդէս Ամս. 1903 էջ 380) անշուշտ իրաւամբ զծիծնը կը կապէ մեծ բային հետ. (մեծ բառին ստուգաբանութեան մասին՝ հմմտ. Հիւբշման, I 475)։ –ուր վերջաւորութեան մասին՝ հմմտ. § 81. արմատական *մեծն բառն -eiti- ձեւ մ'ունի, հմմտ. ներկայ եզ. երրորդ դէմքը մեծ՝ ծագած mugheiֽetiֽ. Նման ձեւակերպ մըն ալ կայ գոթ. arbaiֽs բառին մէջ. (Բրուգման, Grndr. II 286)։ Ինծի կը պակսին օրինակներ i-երկբարբառէն վերջը գտնուող գ, գ"ի համար. u երկբարբառէն ետքը՝ ասոնք k͡i հետ կը միանան, եւ (շեղելով tէն) բաց բաղաձայն կ'ըլլան, գ. օր. լոյս։ Եւ որովհետեւ p ընդհանրապէս kի հետ զուգընթաց կը զարգանայ՝ կը սպասուէր որ p երկբարբառներէն վերջը՝ բաց բաղաձայն եղած ըլլար. բայց ո՛րդեօք երգաձայնագո՞րկ թէ երգաձայնական։ Այս տեղւոյ վերաբերի թերեւս իգական վերջաւորութիւնն -ուհի (որբ-ուհի եւն), որուն հ ձայնը չի կրնար հնդեւր. tի կամ sի համապատասխանել. թերեւս *-oupiֽā՝ ծագած հնդեւր. *-oupīֽ վերաբերի երկարելի ստորինականաւոր արականին -ō(u)p՝ —որու— եւն բառերուն մէջ՝ § 32. (հմմտ. Գեանջեցեանի ժողոված -ուհի վերջացող բառերուն ճոխ ցանկն՝ ի թերթին "Հանդ. Հայագիտութեան" Ա. 59 եւ հետեւ.) [-ուհի վերջաւորութեան մասին հմմտ. Մսերեանց, О такъ называемыхъ ванскихъ элементахъ въ армянскомъ языкѣ, էջ

14 եւ հետեւ. բայց ես չեմ կարծեր որ -ուն վերջաւորութիւնը փոխառեալ է]: — Միջակ-թաւերն (ամէ՞նն ալ) երկբարբառէ մը վերջն այնպէս կը զարգանան՝ ինչպէս ձայնաւորէ մ՚եռքը. ոյղ, ողանեմ § 29, դեղ, դեղանեմ:

§ 39. Նորանոր երկբարբառներ սկիզբը առած են այլեւայլ կերպերով. վերջաձայնի օրինաց ազդեցութեամբ ծագած են՝ հայր, ծագում առած հնագոյն ձեւէս՝ *hai̯ir, բերէ *berei̯iէ, հնդեւր. bhereti, բնականապէս նաեւ ողջոյ: Կան զի մեր (այսինքն՝ Հիւբշմանեան) հայկական տառադարձութեամբ՝ i եւ y ձայներու մէջ դրուած տարբերութիւնը բաւական կանուան չունի ոչ բնիկ այբուբենի՝ եւ ոչ ալ լեզուին պատմութեան մէջ: Վերջատառ -յ մը թէպէտ այսօր համր եղած է (եթէ հոլովման ուրիշ ձեւերու ազդեցութեամբ մնացած չէ, ինչպէս միավանկ գոյականներու մէջ եղած է). բայց ասկէ չի հետեւիր որ իրաւացի ըլլայ այն ենթադրութիւնը՝ թէ յ հին հայերէնի մէջ նախորդ ձայնաւորին հետ երկբարբառ մը կազմած չըլլայ: Կարելի էր ոյր (ո ուղղականէն) էր (է ուղղկ.) սեռական ձեւերը (հմմտ. Մէյէ, "Հանդ. Հայագիտ., Ա. 148) այնպէս մը մեկնել՝ որ -ր վերջատառն ուրիշ դերանունական սեռականներէ անցած ըլլայ. եւ այս պարագային ոյ եւ է կրնային ներկայացընել հնդեւր. *qᵘosi̯o եւ *qᵘesi̯o: Հմմտ. տակաւին է--ո (է-, յուն. ἐπί), մի--՝ յառաջացած մի է-ոէ: Վերջաձայն օրինաց հետ առընչութիւն մ՚ունին նաեւ այն երկբարբառները, որո՛նք կը գտնուին բառերու մէջ՝ սոյն, դոյն, նոյն՝ ծագած ձեւերէս՝ *no, *do, *so եւ վերակցական բառէ մը՝ *ino- (KZ XXXVII 239): Նմանակազմութեամբ ծագում առած երկբարբառին մասին՝ որ անկատարի ձեւերուն մէջ կայ, այսպէս՝ առնոյր, հմմտ. § 32:

§ 40. Անշուշտ վերջաձայնի օրէնքներէն աւելի կարեւոր են նաեւ ղ ձայնի մ՚առջեւ գտնուող

ու– երկբարբառները՝ որոնք պարզ ձայնաւորէ յառաջ եկած են։ Մէյէ («Համդ. Հայագիտ.» բ. 27 եւ Esquisse, էջ 22) կ'ընդունի թէ – զարգացած է իրեն յաջորդող ղ ձայնէ հետեւեալ բառերուս մէջ՝ գէ–ղ սեռ. արկ. գեղջ, է–ղ սեռ. է–ղոյ (նախախնամի յուն. ἔλαιον բառին հետ), երջէ–ղ (սեռ. երջէ–ղի) եւ ծէ–ղ սեռ. ծէ–ղոյ (հմմտ. § 34)։ Դիւրաւ կրնանք աւելցնել օրինակներս՝ փէղ, փեղ, փէ–ղ, սեռ. փղի (փոխառեալ բառ), ղամբէղ, ղամբէ–ղ (փոխառեալ բառ), դէղձ, դէ–ղձ, դեղձ, սեռ. դղձոյ հմմտ. դղրոր, ձեղ, ձէղ, ձէ–ղ, սեռ. ձղի, հմմտ. ձղոտ (ըստ Բուգգէի KZ XXXII 43 այս տեղւոյ կը վերաբերի նաեւ ձղէ–+. կապ ունի անշուշտ բառերուս հետ՝ յուն. νεο-γιλός, գոթ. keinan «ծլիլ.» նաեւ լիտ. żydëti «ծաղկիլ»? Ծէ–ղ բառէն բաղադրուած է անշուշտ ընձէ–ղ, նաեւ ընջէ–ղ, ընջէղ գրուած) [νεογιλός բառին մասին ուրիշ կարծիք կը յայտնէ Բեխտէլ BB XXVII 191. իսկ Շեֆտելովից BB XXVIII 295 ձէ–ղ բառն կը կշռէ գերմ. kiel «փետրափող» բառին հետ. այն ատեն պէտք էր հնդեւրոպ. փոխանակութիւն մը ĝ/gᵘ ընդունիլ հմմտ. անգղ. quill], շէղ, շէ–ղ, շեղ, սեռ. շղի, շղոյ. շէ–ղէ, շէ–ղոյ, շեղէ (նմանայանգ բառ մը ձէ–ղ եւ ծէ–ղ բառերուն, հաւանօրէն կշռելի յունականիս հետ՝ χιλός «դալար խոտ», որ հնդեւր. ĝh ունի)։ Ամենուրեք ես այս օրինակներուն մէջ է– գրած եմ, վասն զի ամէն դիպաց մէջ ինծի ծանօթ չէ ասոնց հնագոյն ուղղագրութիւնը, որ է– ու է– ձեւերուն միջեւ տարբերութիւն կը դնէ (Մէյէ Journal Asiatique 1903, 493 եւ հետեւ.)։ Մէյէի մեկնութեանց համաձայն՝ ե ձեւէ ծագած է է–, իսկ է ձեւէ՝ է–։ Այս ոչ-նախնական երկբարբառները միայն այն դիպաց մէջ բառամիջին կը գտնուին, ուր նմանակազմութիւն մը կրնայ տեղի ունենալ վերջաձայնին համեմատ. բառա-

միջին՝ ուր ազդեցութիւն մը չեն կրած, չեն երեւար (հեղու-մ), եւ նաեւ վերջաձայնին ալ երբեմն նմանակազմաբար խափանուած են (գեղ եւ գեղջցիկ եւն.)։ Բայց նմանակազմութիւնը յաճախ հակառակ ընթացք մ'ըրած է. երկբարբառը նաեւ բառամէջը մտած է (վերյիշեալ սեռական ձեւերուն մէջ.) եւ այն՝ միշտ ի- ձեւով. (հմմտ. § 41), ե-ղ, սեռ. ի-ղոյ (Մէյէ անդ)։ Ուրեմն այստեղ ի- երկբարբառը՝ 1. կանոնաւոր է ձայնի մը տեղն անցած է, 2. ձայնական օրինաց համաձայն կորսուած է ձայնաւորի մը տեղը մտած. եւ այսպէս ծագած է ե եւ ի ձայներու խառնուրդ մը, որ յառաջ բերած է նաեւ սեռականս՝ ջեղջ, ուղղականէն՝ ջի-ղ (եւ ըստ այսմ ուղղական ձեւ մ'ալ՝ ջեղ)։ Նաեւ ուղղական տեղն ձեւն ալ (սեռ. տող-ն) պէտք է որ այնպիսի խառնուրդէ յառաջ եկած ըլլայ (անշուշտ ոչ անցմամբ իղ ձեւին դէպ ի եղ.)։ Ուստի բացորոշ է, թէ հոս խնդրոյ նիւթ եղող ոչ-նախնական երկբարբառներս՝ ե- ու ի- աւելի կրտսերագոյն են՝ քան վերջաձայնի օրէնքները, որով զարմանալի բան մը չէ որ նաեւ փոխառեալ բառերուն մէջ տանք կ'երեւան։ Չեմ նշանակած ս ձայնին երկբարբառացման օրինակ մը։ Ասոր հակառակն -ող կ'երեւայ թէ վերջաձայնին մէջ -ո-ղ եղած է. վասն զի -ո-ղ վերջաւորող գործողանուանք (Մէյէ անդ էջ 502) ինչպէս ծնո-ղ (ծնանիմ) չեն կրնար բաժնուիլ -ող վերջաւորող ածականներէն եւ դերբայներէն (կորող՝ կորեմ է, դաղող՝ դաղեմ է։) Կրնայ հին դերբայ ներկայի մ'աճում մ'ընդունուիլ (-ont-lo-, հմմտ. § 17), հմմտ. կե-նդանի (հնդեւր. -nt-ով) եւ -ղ վերջաւորող դերբայներ։ Ա-ղ (ի- կամ օ-արմատ, ուրեմն նախապէս օ-արմատ) աղերս ունի հոլով բառին հետ՝ § 30։ Գի-ղ ունի՝ ըստ Մէյէի (անդ, էջ 495) երկրորդական ձեւ մըն ալ՝ գէ-ո-ղ։ Բայց քանի որ հին ձեռագրաց ուղղագրութեան կերպին վրայ մինչեւ հիմայ

եղածէն աւելի մանրամասն ու խորազնին հետազօտութիւններ չեն եղած, ստուգիւ պէտք չէ այս ուղղագրութեան բացարձակ կարեւորութիւն տալ. եթէ որեւէ նշանակութիւն ունենար՝ այն ատեն ուրիշ սկզբնական ձեւ մ'ենթադրեր՝ գե-ղէն տարբեր: — Միջամխութիւն f ձայնին առջեւ —րճնէմ բառին մէջ՝ տ. § 16 —:

§ 41. Փակ բաղաձայններու ձայնաւորացմամբ (հմմտ. §§ 14 – 17) յառաջ եկած երկբարբառները շատ աւելի հին են՝ քան թէ մինչեւ այստեղ քննուած երկբարբառները, որոնք վերջաձայնի օրէնքներով կամ վերջաձայնի օրէնքներէն առջը յառաջ եկած են: Այն պարագային օ + ղէ ծագում առած է օա, որ յետոյ ա եղած. (այլազգ հնդեւր. օա, որ նոյն միջոցին արդէն եղած էր ծա, որմէ յետոյ օi եղած. այլազգ նաեւ aա, որ վերջատառ ղի առջեւ յետոյ ծագած է օէ, եւ որ օի աւելի բաց արտասանութիւն մը կ'ենթադրէ): Փակ բաղաձայններու ձայնաւորացմամբ ծագած ա-երկբարբառները շեշտին նախընթաց վանկին մէջ ընդհանրապէս նուազած չեն. ուստի տակաւին իրենց զարգացման վերջին աստիճանին չէին հասած այն ատեն՝ երբ ուրիշ անշեշտ ձայնաւորներ նուազեցան: eqʺէ սկիզբ առած էօ նուազած է (§ 15), բայց էօ երկբարբառին նուազումը թերեւս ժամանակաւ աւելի կրտսերագոյն ըլլայ՝ քան միւս ձայնաւորի նուազումները (§ 29): Թէ-ր, Նէ-րէմ (Մէյէ Journal asiatique. 1903 էջ 494) բառին – ձայնը յայտնապէս պէտք է որ փակ բաղաձայնէ մը ծագում առած ըլլայ: Հոս ալ փոխանակութիւնը անշուշտ նոյն հիմն ունի, զոր ունին միւս հայկական ձայնաւորի փոխանակութիւնքն, այսինքն՝ երաժշտական շեշտ մը. (KZ XXXIX 238 եւ հետեւ.) բայց կրնայ նաեւ կրտսերագոյն նոյնպիսի փոխանակութեանց կարգէն ըլլալ: Երդա-

ձայնաւորկ ձայնի մ'առջեւի ե– երկբարբառը (ե–ըն, ե–ընանաաան) այսպիսի փոխանակութեան չէ ենթարկուած, ուրեմն հոս զարգացումը դանդաղագոյն եղած է՝ քան չի առջեւ։ Արդէն վերը յառաջ բերուեցան օրինակներ, որ կը ցուցընեն թէ հնդեւր. t մը՝ ձայնաւորի փոխուած փակ բաղաձայնէ մը վերջն իբր ի կը մնայ (ե–ըն, ծանաաըն եւն)։

§ 42. Միջամխութեամբ յառաջ եկած երկբարբառներու շարքը մ'աւելի հին ալ է (§§ 42—44)։ Շատոնց արդէն ծանօթ էր թէ ժէջ բառը՝ սեռ. ժէջոյ, որ կը կշռէ լատ. mediusի եւն հետ, ջ (ծագած di̯ē, հնդեւր. dhi̯) ձայնէն յառաջացած երկբարբառ մ'ունի եւ ըստ այսմ պէտք է բնականապէս հնդեւր. ti̯ē ծագած չ ձայնին, եւ հնդեւր. di̯ē յառաջ եկած ծի առջեւ ալ նոյն զարգացման սպասել։ Բայց արդ՝ որովհետեւ ես՝ վերը § 33, ապացուցի որ հնդեւր. քմառագատականաց քմականացեալ ձեւը հայերէնի մէջ նախապէս k'i̯, gi̯ եւն կը հնչէր, ուստի պէտք է անպատճառ այս բաղադրութեանց առջեւ ալ փոխանակ հնդեւր. e ձայնաւորի մը՝ շեշտաւոր վանկին մէջ է, իսկ շեշտին նախընթաց վանկին մէջ ի սպասել։ Այսպէս՝ տեսական քննութիւններով ալ կը հաստատուի իմ այն տեսութիւնս՝ զոր զուտ փորձական ճամբով ստացած էի (KZ XXXVIII 205). Օրինակ մըն է՝ գիշեր = հսլ. večerъ, եւ ē:i փոխանակութեան հաւասարեցմամբ՝ իժ, սեռ. իժի։ Կարելի չէ նաեւ էշ, սեռ. իշոյ = լատ. equus բառին դէմ ալ բան մ'առարկել, որովհետեւ միջամխութեան միջոցին՝ ըստ ինքեան ոչ թէ նախաւոր i̯ ձայնը որոշիչ է, այլ i̯ ձայնին առջեւ գտնուած բաղաձայնին երանգը։ Բայց այս բառը ժամանակագրական կռուան մը կու տայ մեզի. հնդեւրոպական k͡ē ծագում առած էր նախ եւ առաջ ś, եւ k͡i̯ē՝ š. եւ որովհետեւ միջա-

մխութիւնը՝ թէեւ k̑ṷէն յառաջ կը հանդիպի, բայց ո՛չ k̑էն յառաջ, այն ատեն միայն կրնայ տեղի ունեցած ըլլալ, երբ k̑է ծագում առած ʒ́ արդէն մաքուր ո եղած էր։ Միւս կողմանէ ǯ-ակերպ ձայներէն յառաջ միջամխութիւնը՝ ուստի նաեւ k̑է սկիզբ առած ո ձայնն աւելի հին է՝ քան հայկական ձայնաւորաց նուաղումը։

§ 43. ǯ-ակերպ ձայներուն առջեւի միջամխութիւնը միայն e ձայնաւորէն վերջը տեղի կ'ունենայ. որով միջամխութեան այս օրինակը կը զանազանի li̯ ni̯ ri̯ ձեւերուն առջեւ եղած միջամխութենէն։ Կան զի այս վերջին միջամխութիւնը ճիշդ ա եւ ո ձայնաւորներէն ետքը կը գտնուի։ Բոլորովին որոշ ու մեկին օրինակ մըն է՝ այլ = լատ. alius եւն. Մէյէ MSL VIII 237 շատ անյաջող գաղափար մ'ունեցած է, կիպր. αἴλωνι միջնորդութեամբ՝ *ailos սկզբնական ձեւ մ'ընդունելու։ Կան զի ամեներին տարակուսելու տեղի չկայ թէ կիպր. αἶλος պարզապէս միեւնոյն է յուն. ἄλλος սովորական բառին հետ, հմմտ. Բրուգման, Griech. Gramm.³ էջ 35։ Պէտք չկայ դարձեալ յայտնապէս շեշտելու թէ նաեւ նոր կըմր. ail եւ միջին կըմր. eil հին երկբարբառ մը չի պարունակեր։ Բրետ. eil մեկնուելու չէ *ailo-է, հապա անշուշտ *aili̯o-է, բայց նոյն իսկ հակառակ դժուարութեանց՝ նաեւ *ali̯o-է։ Մէյէ իւր մեկնութիւնը յառաջ բերած է, որպէս զի կարենայ պահել այն ենթադրութիւնը, զոր արդէն Բարթոլոմէ իրաւամբ մերժած է, թէ i̯ ձայնը r եւ l ձայներէն վերջը յերեւան կու գայ իբրեւ ջ։ Այս կարծիքն անյողդողդ կը պահէ նաեւ իւր Esquisse (էջ 29) գործին մէջ ալ, ուր օր. աղ. անո–րջ բառն՝ արմատին կազմութեան կողմանէ՝ կը նոյնացընէ յուն. ὄνειροςի հետ։ Հոն նոյն իսկ սա կարծիքը կը յայտնէ՝ թէ i̯ նաեւ նէ վերջն ալ եւ բառասկզբան

իբրեւ Ղ կը ներկայանայ. բառասկզբան համար կոչում կ'ընէ Ղօր բառը, որ իբրեւ թէ լիտ. júrėsի հետ աղերս ունենայ։ Բայց ինչպէս ծանօթ է, այս լիտ. բառս առընչութիւն ունի բառերուս հետ՝ հհնդկ. vār "ջուր" հին սկանդ. ver "ծով", յուն. οὖρον, լատ. ūrīnor եւն։ Հնդեւր. ị հայերէնի մէջ երբեք Ղ եղած չէ, iէն ետքը կը կորսուի ị (մանրամասն տե՛ս KZ XXXVIII 199), նոյնպէս անշուշտ նաեւ e ձայնաւորէն վերջը. երէք, *treịes. համմտ. չէամ բառին մասին՝ § 35։ Իսկ aի յաջորդող ị ձայնին բախտին համար կարելի չէ Բրուգմանի հետ Grndr. I² 269 վկայութեան կոչել դայեակ, հհնդկ. dhayati "ծծել։" Վասն զի դայեակ՝ ինչպէս արդէն երեւոյթը ցոյց կու տայ, ածանցած է ի- արմատաւոր ձեւէս *դայի, ուղղ. *դայ. (համմտ. անեակ՝ անէ § 21). եւ այս արմատական բառիս մէջ անշուշտ -ti- վերջաւորութիւնն ալ թաղնուած է (համմտ. բայ = φάσις եւն)։ Հաւանականագոյն կարծիքն այն է՝ թէ ị ամենուրեք ձայնաւորաց մէջտեղը կորսուած է։ Այն ատեն որսամ բային՝ եզ. 3. դէմքը որսայ, յառաջ եկած ըլլալու է՝ ըստ ձայնական օրինաց, *porkāịetiէ, յոգն. 1. որսամք՝ ծագած *porkāịomesէ եւն։ Յամենայն դէպս ị բառասկզբան չ'երեւար իբր յ. ես չեմ գտած սկզբնատառ յ ձայնով բնիկ հայերէն բառ մը, որուն մէջ ị նախադրութիւնը չճանչցուէր։ Բուգգէ KZ XXXII 22 յօդ բառը կը կշռէ աւեստ. yaoiti- "կապ" բառին հետ, որուն սխալ ըլլալը ցոյց կու տայ ղօդ երկրորդական ձեւը. ասկէ անտարակոյս բաժնելու չէ օդ "կօշիկ". այս բառն ագանեմէ ածանցած չէ, որովհետեւ -dhi- վերջաւորութիւն մը տարօրինակ կ'ըլլար, այլ աղերս ունի հետեւեալ բառերուս հետ՝ լիտ. áudmi "հիւսել." հբգ. wāt "զգեստ." հհիս. váð "զգեստ." հբգ. wëtan "կապել." յուն.

ἔθμοί· δεσμοί, πλόκαμοι (հմմտ. Lagercrantz KZ XXXV 273), անշուշտ նաեւ իր. fedan "լուծք, զոյգ", cobeden "լծորդութիւն", հհնդկ. vivadhá-s "լուծ" (յուսս)։ Ըստ այսմ ոտը նշանակելու էր "ոտին ագանելիք"։ Բաց ասկից՝ Բուգգէ կ'ուզէ զյամէմ կշռել հհնդկ. yamati "նուաճէ" բային հետ, սակայն յամէմ բայն ամ "տարի" բառէն ածանցած է (ամ յամ առնել)։ Հնդեւր. i̯ կը ներկայանայ հայերէնի մէջ բառասկզբան ապահովապէս իբր ձ, ձեր անշուշտ որեւիցէ կերպով աղերս ունի հհնդկ. yūyámի եւն հետ, իսկ ձու սեռ. ձուոյ կապ ունի բառերուս հետ՝ նպ. xāya, հոլ. jaje, հբգ. ei, եւ ապահովապէս ծագած է *ōi̯o-է, այնպիսի կերպով՝ որ նախ նմանաձայնութեամբ *i̯ōi̯o- մը գոյացած էր. հմմտ. լատ. jējūnus = հհնդկ. ādyūna-s ըստ Thurneysenի, KZ XXXII 566)։ Հնդեւր. i̯է ծագած ձ ըստ բաւականի զուգընթաց է գի հետ՝ որ հնդեւր. u̯է սկիզբ առած է, սակայն բառամիջին i̯ եւ u̯ ձայներուն միջեւ համընթացութիւն մը չկայ։

Այլ բառին մէջ եղած միջամխութիւնը կը գտնուի նոյնպէս նաեւ գոյլ եւ փոյլէմ բառերուն մէջ ալ (§ 19), սակայն միջամխութիւնը հոս հնդեւր. i̯է մը յառաջ եկած չէ, այլ i̯ ձայնի փոխուած հնդեւր. գէ մը։ Միջամխութիւնը յետրեւան կ'ելլէ նաեւ բառերուս մէջ՝ ծոյլք եւ ճոյլ (§ 30) եւ բոլորովին ապահով՝ թոյլ, գոյական եւ ածական, թողումի քով։ Թուլոյ սեռականը նմանակազմութեամբ յառաջացած է, ոյ/ու փոխանակութեան ուրիշ դիպաց համաձայն, (որոնք ծագած չեն անով՝ որ ոյ եղած ըլլար ու, այլ անով՝ որ ոյ ձեւին նախապատճառը՝ öu երկբարբառը չեշտին նախընթաց վանկին մէջ ու եղած է. հմմտ. KZ XXXIX 236)։ Այն նմանակազմութիւնը՝ որ կայ թուլոյ ձեւին մէջ, տեղի ունեցած է նոյնանման ամէն դիպաց մէջ։ Թոյլ բառին յոգն. սեռականն է

Ճ––լէց. ուստի եւ այս բառն է-արմատ է, եւ մենք պէտք ենք ընդունիլ թէ ոչ միայն ը̂, այլ նաեւ ի միջամխութեան պատճառ եղած է անհետացող վերջաձայն վանկին մէջ։ Ասոր հակառակն անկորուստ մնացող ի մը միջամխութիւն յառաջ բերած չէ։ Այս պատճառաւ է-արմատներուն մէջ պէտք էր միջամխութիւնը միայն եղ. եւ յոգն. ուղ. եւ հայց. հոլովմանց մէջ յերեւան գալ, բայց ոչ միւս հոլովներուն մէջ։ Այս միջամխութիւնը շատ անգամ ալ հաւասարեցմամբ դուրս մղուած է նաեւ ուղ. եւ հայց. հոլովներէն (զ. օր. ––ւ սեռ. ––լէ), բայց երբ հաստատուն պահուած է՝ մնած է նաեւ միւս հոլովներուն մէջ (Ճ––լէց փոխանակ ըստ ձայնական օրինաց՝ *Ճ–լէց)։ Դ–ւ կամ ––յւ՝ որ է-արմատ է, անորոշ է։ Չեմ գիտեր թէ արդեօք անհետացող ի մը նաեւ բառամիջին միջամխութիւն յառաջ կը բերէ՞։ Ի յառաջագոյնէ ասոր ամենեւին հաւանելու չէ։

Միջամխութեան օրինակներ են ն ձայնի առջեւ՝ ––յն (է-արմատ), տ. KZ XXXVIII 198 եւ թերեւս նաեւ ––յն հհնդկ. *anyás*, տես KZ XXXVIII 240 [հմմտ. Հեղինակին գրածը Les pronoms démonstratifs de l'ancien arménien էջ 35]. դարձեալ ––յր, յուն. ἀνήρ, նախապէս ծագած **ainrե* (անվանկ րով)՝ Մէյէ Esquisse, էջ 32. իսկ *-i̯nr-* եռապատիկ խմբին մէջ միջին բաղաձայնը կորսուած է։ Այժմ այլ եւս չեմ ընդունիր թէ *ri* առջեւ գտնուող *n* անցած ըլլայ *i* ձայնի։

Միջամխութիւն՝ ր ձայնէն յառաջ, կայ ––յր բառին մէջ (է-արմատ կամ է-։––արմատ) ––րէմ բային քով, նոյնպէս անշուշտ ––յր բառին մէջ (է-արմատ)՝ արմատէն **k̑ō-*, *k̑a-* ի բառին հհնդկ. *çiçāti* «սրէ», լատ. *cōs catus*. արմատը լիապատիճան յերեւան կու գայ ––ր բառին մէջ, որմէ ––րէմ. (սակայն տարակուսական է թէ նաեւ ––ր «թուր»

սեռ. սուր բառն ալ ասկէ ըլլայ, նախ այն պատճառով՝ որ նշանակութեան զարգացումը բաւական տարօրինակ ըլլալու էր, եւ երկրորդ՝ որ սուր նոյն է յուն. ἄορ ի հետ. սուր բառը պէտք էր նախապէս դուստրի պէս § 24 ր-արմատ մ'եղած ըլլալ. սկզբնատառ ս մ'ինկած է, հմմտ. օրինակները՝ § 64. եթէ այս տեղւոյ կը վերաբերին հհնդկ. asi-s «սուր» լատ. ensis, այն ատեն հայերէն բառին նախաձեւը *n̥sōr ըլլալու էր. n̥ եղած է an՝ ինչպէս այլուր, եւ n կորսուած s ի առջեւ. [Sommerի՝ Griechische Lautstudien աշխատասիրութեան մէջ՝ հաստատած օրէնքներուն համեմատ *n̥sor յունարէնի մէջ պէտք էր որ *ahor > *haor *ἄορ տար. բայց ἄορ բանաստեղծական բառ մըն է եւ գաւառաբարբառական ազդեցութեամբ h- ձայնը կորսուած է]): Վերջապէս սուր նոյն ըլլալու է ի վերջոյ բառերուս հետ՝ հհնդկ. áçri-s «սայր» յուն. ἄκρις, վասն զի վերջ ի վերջոյ *k̑ō- *k̑a- արմատը նոյն է *ak̑ համանիշ արմատին հետ: Սուրէն բարդուած է սուսերտէր, եւ ասկէ ալ ածանցած՝ սուսեր (Bugge KZ XXXII 38). սուսեր յարմարապէս կը թարգմանուի գաղիերէն aegge բառով (հին սկանդ. eggja՝ յառաջացած egg է, լատ. aciēs): Սուսեր յառաջ եկած է աններդաշնակութեամբ *սուրսերէ, բայց այս ձեւին մէջ պէտք չկայ որ րի առջեւ ր̥ ձայնի մը կորուստն ընդունուի. մանաւանդ թէ ասոր մէջ *սուր երկրորդական ձեւ մը կը ծածկուի առանց միջամտութեան, հմմտ. դող եւ դոյլ: Այն կերպով կը մեկնեմ նաեւ անդ եւ այն, եւ այս պատճառաւ կը կարծեմ թէ հին հայերէնի մէջ երբեք ընդունելու չէ թէ ոյ երկբարբառը[1] պարզուած եղած

1 [Դժուարութիւն կը պատճառեն հայր, մայր բառերուն այս հոլովները՝ հարք հարց եւն: Բայց հարց մարց ուղղականները թերեւս *pateres *māteres նախաձեւերէն կը

ըլլայ ռ, ինչպէս որ Նոր Հայերէնի օրինակէն խաբուելով (ուր ռյ շատ անգամ կ՚ըլլայ ռ. ռլ = Հին Հայ. ռյլ) կրնար ընդունուիլ։ Տ——ռյր բառին մասին՝ տես. փ——ռյրէ, տ. § 68։

Ընականապէս l, n, r, որոնք ի-միջամխութիւնը պատճառած են, նախնաբար փափկահնչիւն եղած պիտի ըլլան. սակայն փափկահնչութիւնը պատմական ժամանակին մէջ տառուգիւ գադրած էր։ Ասոր նշան է ռյղ երկրորդական ձեւն՝ ռյլ ձեւին քով (Հիւբշման I 417)։ Ըստ Մէյէի՝ Esquisse էջ 22, ղ հնչումը բաղաձայնի մ՚առջեւ ունեցած դիրքէն կախում ունի, նաեւ բառավերջին ղ թերեւս ձայնական օրինաց համաձայն է, իսկ ւ՝ նմանակազմութեան մ՚արդիւնք։ Մէյէի՝ ղ եւ ւ դրերուն մասին տուած կանոններուն վրայ աւելցնելու է՝ ըստ § 17ի, որ -ln- եւ -nl- եղած են ղ։ Բայց տակաւ ղի ծագման պատմութիւնը տակաւին չէ լմնցած։ Թերեւս Բրուգման Grndr. I² 433 իրաւամբ՝ որչափ ալ առանց ապացուցի, ընդունած է թէ աննմանաձայնութեամբ ըէ ծագած կողմնական ձայն մը՝ դիրքէն անկախ, իբր ղ յերեւան կու գայ, հմմտ. ռղէր՝ § 32։ Ըստ Մէյէի՝ MSL X 280, կրկնակազմութիւն մըն է ռղրմ՝ գոթ. arms "թշուառ" բառին քով։ Սակայն այսու հանդերձ բաւական այսպիսի դէպքեր կը մնան անմեկնելի։

§ 44. Հայերէնի մէջ կայ ռ—միջամխութիւն մըն ալ, որ սակայն ի-միջամխութեան հետ շատ քիչ զուգահաւասար է։ Արփ——ռյր բառին մէջ

---

մեկնութիւն, հմմտ. չորք *qᵘetores ձեւէն § 35. այն ատեն կը մնայ միայն քննել թէ հնդեւր. -t- այսօրուան բառամիջին ի՞նչ պայմաններով անհետ կորսուած է (չորք հորք) եւ ի՞նչ պայմաններով յ ձեւով կը մնայ (փոյթով ամօթոյն եւն). իսկ ակներեւ յայտնի է որ հնդեւր. -t- այսօրուան բառավերջին միայն ու եւ ի ձայնաւորներէն վերջը կը կորսուի (լու լի / հայ հայր լոյն եւն, վերը § 31)]։

միջամխութիւնը կորսուող ու-է մը յառաջ եկած է, մինչդեռ յոգն. ուրփ-----+ բառին մէջ՝ անկորուստ մնացող ու-ի առջեւ միջամխութիւնը տեղի չ'ունենար։ Անշուշտ միջամխութիւն կայ նաեւ ու-ր բառին մէջ ալ, ծագած նախ *aumrէ՝ անվանկ rով, ապա *amōrէ (հմմտ. ույր, ծագում առած *anērէ § 43)։ Աճած բառն՝ անուրջ, յուն. ὄναρ (Մէյէ Esquisse էջ 32) ցոյց կու տայ թէ չէզոք գոյականներու -ōr վերջաւորութիւն մը (հմմտ. յուն. ὕδωρ "ջուր") կրնար հայերէնի մէջ ալ գտնուիլ։ Ուստի եւ ṃrէ դէպ ի ṷr անցում մը տեղի չունի։ Գրեթէ անհրաժեշտ հետեւութիւն մըն է ասոր, որ հիմայ ու-միջամխութեամբ (եւ ասոր յաջորդող ռնգականի կորուսմամբ) պէտք է մեկնել նաեւ այն դէպքերը՝ ուր ատամնական կամ քմական փակ բաղաձայնի մ'առջեւի հին ռնգական երկբարբառի մը տեղը՝ կայ այժմ ու-երկբարբառ մը։ Եւ ասիկա այնչափ աւելի կարեւոր է, որչափ ու-ձոնէմ եւ ու-ջ բառերուն մէջ երեւցած քմականը հնդեւր. uի մը դրացնութիւնը ցոյց կու տայ. § 29ի մէջ տեսանք թէ քմառատամնական շարքէն քմական շարքին անցնիլը միայն հնդեւր. uէ մը յառաջ կու գայ, եւ ոչ ō կամ o ձայնէ ծագում առած uէ մը. աւելի եւս պէտք չէ ռնգականի մը uի անցումն (եթէ այսպիսի անցում մ'ընդունուելու ալ ըլլայ) այնպիսի հին ժամանակի մը մէջ դրուիլ, որ այնպիսի երկրորդական ṷ մը կարենար այն անցումն յառաջ բերել։ Իսկ ռնգական երկբարբառի մը ու-երկբարբառի փոխուելու ուրիշ օրէնք մը բացարձակապէս անկարելի է գտնել՝ առանց միջամխութիւն մ'ընդունելու։

Ա-ջ բառին մէջ միջամխութիւնը ṷէ մ'ազդուած է. այսինքն որովհետեւ հհնդկ. áhi-s, աւեստ. aži-, յուն. ἔχις, հայ. իժ բառերուն մէջ երեւցող լեզուի յետսակողմամբը հնչուող փակ բաղաձայնը զուտ քմառատամնական մըն էր, եւ

նաեւ ունգական մը բովանդակող երկրորդական ձեւն ալ զուտ քմառադաստական մ՚ունէր (հմմտ. յուն. ἔγχελυς “օձաձուկ„), ուստի լատ. anguisի մէջ պէտք է հնդեւր. լիատեւ -ŭ- մ՚ընդունիլ եւ ըստ այնմ պէտք է դատել նաեւ յունարէն ὄφις թէեւ ասիկա բոլորովին ալ չհամաձայնիր ἵπποςի հետ (— արդէն ի Թերթին KZ XXXVIII 306 ապացուցի թէ քմառադաստական+ŭ յունարէնի մէջ կը զարգանայ ճիշդ այնպէս՝ ինչպէս կ՚աճի քմական+ŭ, ասոր կը վերադառնամ վարը՝ § 57). ὄφις ձեւին՝ որուն առաջին վանկը Հոմերոսի քով երկար է (նաեւ ὄπφις գրուած), եւ ἵππυςի միջեւ եղած տարբերութիւնը մեկնելու է փակ բաղաձայնին արտասանութեան այլեւայլ եղանակէն: Թէ հայ ձեւին մէջ ŭ մը գոյութիւն ունի, ցոյց կու տայ այն պարագան՝ որ ǰ չէ եղած ղ. վասն զի այս պարագան չի կրնար յառաջընթաց երկբարբառովը մեկնուիլ, ինչպէս որ ի Թերթին KZ XXXVIII 201 Բ ո ւ գ գ է ի հետ սխալմամբ ընդունած էի: Օ-ǰ բառին մէջ ունգական մ՚ընդունելու բացարձակ ստիպում մը չկայ. վասն զի բառասկզբան օ- կրնայ ou-է ծագած ըլլալ (§ 38 եւ KZ XXXVI 99), այնպէս որ օ-ǰ կրնայ յուն. ὄφιςի բոլորովին հաւասար դրուիլ: Առաղձի սակաւութեան պատճառաւ չենք կրնար ŭէ մը պատճառել միջամխութեան ճշգրիտ կանոնները գտնել: -tŭo- (§ 32) վերջաւորութեան առջեւ միջամխութիւն յերեւան չի գար. բայց հոս կրնայ նաեւ ստուգաբանական գիտակցութիւնն ազդեցութիւն մ՚ունեցած ըլլալ. ‑ր‑ (§ 37) բառին մէջ ր ձայնը կրնայ միջամխութիւնը խափանած ըլլալ:

Ընդհակառակն օ-ծանեմ բային մէջ, լատ. unguō, հհնդկ. anájmi “օծանեմ„, միջամխութիւնը պէտք է որ կորսուած վանկական ŭէ մը պատճառուած ըլլայ: Ըստ § 17ի քննութեանց՝

յանդգնական չէ գտանեմ մեկնել հնագոյն *գտա-նամ է (հմմտ. լքանեմ եւ լքնում եւն)։ Եւ ինչպէս տեսանք, -նում վերջաւորութիւնն ամէն բաղաձայնէ ետքը՝ բաց ի ռ գրէն, ծագած է *-unu-mai է։ Ամէնէն աւելի մտածել կու տայ այն պարագան՝ որ հայերէնի այն նորութիւնը՝ որով հնդեւր. *-neumi ի տեղը *-uneumi բռնած է, պէտք է խորին հնութիւն մ'ունենալ, որպէս զի գտանեմի քմական մեկնութի, եւ միանգամայն տակաւին միտ դնելու է որ գտանեմ ո՛չ թէ հնդկ. ներկայի հինգերորդ կարգին կը վերաբերէր, այլ եօթներորդին։ Սակայն այլազգ մեկնելու ուրիշ կարելի մեկնութիւն մը բացարձակապէս չեմ գտներ։

Գիւտ սեռ. գիւտի բառին մէջ անկախ զարգացում մը ստուգիւ չկայ, այլ այս դոյականը պարզապէս իր համապատասխան բայէն կախում ունի։ Պատմական լեզուին մէջ (ուղ. եւ հայցականին մէջ) կորսուած արմատական ձայնաւորէ մը (i-, -o- եւն) ածանցեալ բայանուններն այնչափ առատացած են հայերէնի մէջ որ, գոնէ բարդութեան մէջ՝ ամէն բայէ կրնան կազմուիլ։ Այս բայանունները՝ բային քով, շատ անգամ երկրորդական են, եւ ձայնաբանական խնդիրներու մէջ պէտք են մեծ զգուշութեամբ գործածուիլ (հմմտ. կանչ եւ կինչ՝ կնչեմի քով, կամ պայման–պայմանեմ պարսկերէնէ փոխ առնուած բառի մը քով՝ նպ. paimāyam "չափեմ", հպ. patiy+արմատ *mā-)։ Անշուշտ գիւտ յարաբերաբար հին շրջանի մը կը վերաբերի, բայց ամենեւին տարակոյս չկայ որ իր բային քով երկրորդական է։ Բայն է գտանեմ, հհնդկ. vindāmi, որ գտանեմի հետ բոլորովին զուգընթաց է։ Գիւտի եւ գտանեմի միջեւ եղած աղերսը բոլորովին պայծառ չէ. կրնար գտանեմ նմանակազմաբար *գիւտնամ է շրջած ըլլալ, բայց կրնայ նաեւ ըլլալ որ կորսուած ըլլայ շեշտին նախընթաց վանկին մէջ գտնուող ի- մը՝ որ հայ ձայնաւորաց

նուազման ժամանակէն յառաջ՝ u- միջամխութեամբ յառաջ եկած էր։ § 42էն կարելի է հաւանականութեամբ հետեւցընել թէ վերոյիշեալ -- միջամխութիւնը (հակառակ § 40ի մէջ յիշուած յետասադոյն --միջամխութեան) հնագոյն ըլլայ՝ քան թէ շեշտին նախընթաց երկբարբառներուն նուազումը (ei եւ öu § 38) (միւս կողմանէ շեշտին նախընթաց երկբարբառներուն նուազումը կրնայ իւր մասին քիչ մ՚անագանագոյն ըլլալ՝ քան շեշտին նախընթաց u եւ i ձայներուն կորուստը։) Ցանդուգն ենթադրութիւն մը չէ ինծի համար ընդունիլ, թէ շեշտին նախընթաց ի- երկբարբառ մը բոլորովին կորսուած ըլլայ՝ միաժամանակ ei եւ öu ձայներու վերածուելով։ Արդ՝ *viduneumi հիմնական ձեւին մէջ i ձայնը՝ անհետացող uի ազդեցութեամբն ի- եղած է. այս ի- մնացած է մինչեւ շեշտին նախընթաց երկբարբառին նուազիլը, բայց այնուհետեւ բոլորովին կորսուած է։ Դարձեալ մտադիր կ՚ընեմ որ հիմնական ձեւը պէտք է *viduneumi դնել եւ ոչ *vinduneumi (համմտ. բուծանեմ հհնդկ. bhunájmi)։ Ասկէ շատ զարտուղող ուծանեմը կրնայ ընդհակառակն *ong$^{u}$uneumiէ ծագած ըլլալ։

Եթէ գիտ եւ գտանեմ բառերուն իմ տուած մեկնութիւնս ուղիղ է, այն ատեն լքանեմ կրնայ մեկնուիլ իբրեւ կերպարանափոխութիւն մը *լքնում ձեւին, որ *liq$^{u}$uneumiէ ծագած էր։ Սակայն այս հիմնական ձեւը պէտք էր կրտսերագոյն ըլլալ՝ քան թէ ուծանեմի համապատասխանող հիմնական ձեւը, վասն զի քմառագատականն անփոփոխ մնացած է։ Այն ատեն ի- երկբարբառը՝ որ վերջէն կորսուած է, պատճառ եղած ըլլալու է որ հնդեւր. q$^{u}$ անփոփոխ մնացած է նուրբ-թաւի մ՚ատրճանին վրայ։ Եթէ չ՚ուզուիր այս մեկնութիւնն ընդունիլ, այն ատեն կրնայ երկրորդական ձեւէ մը *leiq$^{u}$ō (համմտ. յուն. λείπω) մեկնել փորձել, վասն

զի ei է վերջն ալ՝ ամենայն հաւանականութեամբ՝ նուրբ թաւին ատրիճանը հաստատուն պահուած պիտի ըլլար։ Եվ+՝ կատարեալի ձեւին մէջ + անշուշտ նմանակազմութեան արդիւնք է։ (Սխալ էր իմ այն ենթադրութիւնս KZ XXXVIII 204, թէ լ+անեմ՝ հնդեւր. անդականի եւ նուրբի զարգացման նկատմամբ զուգընթաց ըլլայ արծաթի հետ, հմմտ. լատ. argentum. վասն զի արծաթ, եթէ նաեւ ընդհանրապէս այն վերջաւորութիւնն ունեցած է՝ զոր ունի argentum, միշտ պէտք է որ՝ ինչպէս շատոնց կ'ենթադրուէր, երկաթ բառին համաձայն՝ նմանակազմաբար փոխուած ըլլայ. բայց ի նկատի ունենալով յուն. ἄργυροςը՝ անկարելի չէ որ արդէն ի սկզբանէ իսկ զարտուղի վերջաւորութիւն մ'ունեցած ըլլայ։)

Անշուշտ --միջամխութեան օրինակ մըն է նաեւ մատ՝ բայերուն մատչիմ ու մատուցանեմ։ Թերեւս մատ ն-ներկայէ մը կախեալ ըլլայ գէտ բառին պէս, հմմտ. -նում եւ -չիմ վերջաւորութեանց օրինակները՝ § 14։ Այս բառերը՝ նշանակութեան կողմանէ, շատ լաւ կը պատշաճին յաջորդներուս՝ հհիւս. mōt „հանդիպում“, mæta „հանդիպիլ“, գոթ. gamōtjan „հանդիպիլ“ հնդեւր. արմատ *mād-։ (Խնդրական է Բուգգէի եւ Մէյէի MSL X 278 այն ենթադրութիւնը թէ gamōtjan աղերս ունենայ մօտնեմ բային հետ, վասն զի մօտնեմ չի կրնար բաժնուիլ մօտենամ կամ. եմոյթ պատճառականէն. ուստի մօտնեմի o-ձայնը հնդեւր. ō չէ, այլ հնդեւր. u)։

Վերջապէս յիշեմ հայ. անաւր (ածական ո--արմատ), զոր կը կցեմ յաջորդ բառերուն հետ՝ գոթ. ga-nōhs, հբգ. ginuog, հհիւս. gnógr "բաւական„. դարձեալ աղերս ունի՝ լատ. nanciscor հհնդկ. açnōmi "հասնիմ„ եւն։ Հիմնական նշանակութիւնն է "տարածուող, սփռուող„, ասկից՝ մէկ կողմանէ "բաւող„, բայց միւս կողմանէ

«այն որ ամէն կողմ պիտի հասնի ու բաւէ, ուստի ցանցառ, եւ խնայութեամբ գործածելի։» Ճիշդ միեւնոյն կրկին զարգացումն ի յայտ կու գայ բայի մ'ածական ածանցման մէջ, որ նշանակութեան կողմանէ nanciscor հհնդկ. açnōmi բառերուն խնամի է (լիտ. spėti «շոյտ ըլլալ, պարապ ժամանակ ունենալ», ռուս. у-спѣть եւն). հսլ. sporъ կը թարգմանուի «գեր ի վերոյ, լիով, լիառատ». բայց գլխաւոր նշանակութիւնն անկից յայտնի է՝ որ spori byvъše կը համապատասխանէ յուն. πληθυνθέντεςի, որ կը գտնուի նախադասութեանս մէջ՝ πέντε ἄρτοι εἰς πενταχισχιλίους πληθυνθέντες, զարձեալ սերբ. spor «երկարատեւ, բաւող» (զ. որ. chljeb «հաց») ռուս. спорый «երկարատեւ, առատ» հմմտ. առած՝ что скоро, то не споро «շուտով եկածը՝ երկար չի տեւեր». ասկէ քանի մը սլաւական լեզուաց մէջ բոլորովին բնական եղանակաւ զարգացած է նշանակութիւն մը՝ որ մերձաւորապէս «առատ» իմաստին ճիշդ համապատասխան է, չեխ. spořiti «խնայել» (այսինքն՝ բուն «երկարատեւ ընել». հին ժամանակները կը նշանակէր նաեւ «աճեցընել, օրհնել, բազմացընել»), sporý «առատ» կամ «խնայողական», մկբ. spoře «սակաւ, ցանցառ, նօսր. (զ. որ. մազեր)։ Բնականաբար ասոնց հետ միեւնոյն է հբգ. spar «խնայող» (հհնդկ. sphirá- «առատ, շատ») հմմտ. Հեղինակիս լեհերէն գրածն՝ Materyały i prace komisyi językowej akademii umiejęt-ności w Krakowie, I, 172։ Ուրեմն նշանակագիտօրէն [illegible] բառը գոթ. ganōhsի հետ համեմատելն անկարելի չէ. հայերէն բառին նախաձեւն է մերձաւորապէս *(ŋ̥)ŋ̥͡ku-։

§ 45. Հնդեւր. s ձայնի մը հայերէնի մէջ կորսուելով յառաջ եկած երկբարբառները շատ հին են, եւ կ'երեւայ թէ գոնէ մասամբ ճիշդ այն

զարգացումն ընդունած են՝ ինչ զարգացում որ ընդունած են հնդեւր. երկբարբառները։ Հնդեւր. *sụesōr "քոյր" բառէն յառաջ եկաւ՝ հայերէնի մէջ s-ի կորսուելէն եւ ō ձայնին uի անցնելէն ետքը՝ eu երկբարբառական ձեւ մը, որ ճիշդ այնպէս՝ ինչպէս հնդեւր. eu երկբարբառն՝ ou եւ öu ձեւերէն անցնելով եղաւ ոյ = քոյր. այս պատճառաւ պէտք է անշուշտ քո—րոյան բառին շեշտին նախըն-թաց վանկին մէջ — ձեւն իբրեւ կանոնաւոր նկա-տել եւ ոչ նմանակազմ։ Չեմ կրնար վճռել թէ արդեօք անվանկ ձայնից մէջտեղ գտնուող -osi- նման կերպով oi եւ ei երկբարբառներէն անցնելով եղա՞ծ է է եւ շեշտին նախընթաց վանկին մէջ ալ ի։ Բայց յամենայն դէպս սխալ է Օստհոֆի այն ենթադրութիւնը՝ զոր ըրած է ի թերթին Բադրուպանեանի Sprchw. Abh. II 69 եւ հետեւ., թէ -osi- շեշտին նախընթաց վանկին մէջ -ո-- կ'ըլլայ. իբրեւ հիմ կ'առնու սա տեսութիւնը թէ շեշտին նախընթաց — ձայնը ծագում առած է oiē. սակայն բոլորովին ապահով է թէ — ծագած է միայն öuē։ Օստհոֆ իւր կարծիքը միայն անոր համար յառաջ բերած է, որպէս զի —ո—ղի—ն վեր-ջաւորութիւնը կարենայ բարդութեամբ (-o-sition-) մեկնել։ Թերեւս երկրորդական երկբարբառը հըն-դեւր. tē ծագած ղ (ոչ ի) ձայնի համար բաւական մեկնութիւն մ'ըլլար. սակայն —ո—ղի—ն չի բաժ-նուիր -ոյղէ = յուն. -ευσις (KZ XXXVIII 220)։

§ 46. Անշուշտ հայերէնի ամէն երկրորդա-կան երկբարբառներուն մէջէն հնագոյններն են s ձայնի մը կորսուելովը ծագում առած երկբարբառ-ները, եւ հնդեւր. s-ի՝ ձայնեղներուն եւ ձայնաւոր-ներուն միջեւ ու բառասկզբան ձայնեղներուն կամ ձայնաւորներուն առջեւ h ձայնին անցնիլը՝ յայտ-նապէս հայերէնի հնագոյն ձայնական օրէնքներէն է։ Դարձեալ h ձայնը բառամիջին միշտ կորսուած է, բառասկզբան ալ նոյնպէս հասարակօրէն կոր-

սուած է, սակայն երբեմն իբրեւ հ մնացած է: Հաւանականօրէն ասիկա ըստ ձայնական օրինաց հասկընալու է այսպէս. հ՝ որ ծագած է sէ (եւ հ ծագած p եւ q, qᵘ ձայներէ) կորսուած է (ինչ ինչ) բաղաձայններէ վերջը՝ նախադասութեան աղերսին մէջ, եւ հ- չունեցող ձեւն յետոյ հետեւ մասամբ ընդհանրացած է. ասիկա շատ յաճախ պատահած է sէ՝ քան թէ pէ ծագած հ ձայնին, եւ այս կը մեկնուի պարզապէս անկէ՝ որ sէ ծագած հ շատ երկար ատենէ ի վեր գոյութիւն ունեցած է, որով նմանակազմութեան համար շատ աւելի ժամանակ եղած է:

-si̯- վանկական ձայներու մէջտեղ -յ- եղած է, զոր օր. ո-արմատներու սեռական վերջաւորութեան մէջ՝ մարդոյ, ծագում առած *mr̥tosi̯oէ: Այս -i̯- ձայնը բնականապէս ծագած է նախ եւ յառաջ -hi̯-է, բայց խնդիր է թէ այսպիսի -hi̯-է մ'ինչ յառաջ եկած է բառասկզբան եւ բաղաձայններէ վերջը: Պատասխանը թերեւս տայ Քորշին, ՀՀնդկ. hr̥ṣyati 'սարսափի' [ĝh/gh] եւ զարհուրիմ՝ հանդերձ զարամիմ ձեւով, -զարամ -զարհուրամէ (ան-զարամ, ան-զարհուրամ բառերուն մէջ), եւ այս՝ դարձեալ կորսուած բայէ մը, որուն ներկայ ժամանակը հաւանականագոյնս կը համաձայնէր ՀՀնդկ. tr̥ṣyati "ծարաւի" ձեւին հետ: tr̥ անցնելով hr̥ ձեւին վրայէն՝ կ'ըլլայ ք: sr եւ rs կ'ըլլան ռ: sl կ'ըլլայ ւ, բառիս մէջ՝ ջիլ (է-:ո-արմատ), հսլ. žila "երակ" լիտ. gýsla "երակ" լատ. fīlum. լիտուական ձեւը՝ ըստ Jaunisի (Памятная книжка Ковенской губ. на 1893 г. էջ 40 արտասանութեան) ըմբռնելու է իբրեւ gi̯sla. ըստ այսմ եթէ միւս լեզուաց մէջ ալ հարկ է ռնգական մ'ընդունիլ, այն ատեն այս ռնգականը հայերէնի մէջ պէտք է որ sէն աւելի կանուխ կորսուած ըլլայ: Ըստ Բրուգմանի Grndr. I$^{2}$ 477 եւ 741 լու բառին մէջ ալ sl մը կը ծածկուի: Դժբախտաբար -ls-ի համար հա-

տառուն առաղձ մը չեմ գտներ. բայց կը սպառուի այն արդիւնքը՝ զոր -ցն- ունի։ Ի հարկէ ց կը կորսուի նէ եւ նէ յառաջ (նու, մէ), բայց այսու ամենայնիւ նէ եւ նէ վերջը կը մնայ (ամէն, ունու։) Ասիկա շատ կը տարբերի երանեան եւ յոյն լեզուներէ, ուր ց նաեւ ռնգականէ մը վերջը՝ h եղած է (որ յունարէնի մէջ վերստին կը կորսուի. Hirtի հետ IF. XII 223 բոլորովին անհիմն կը համարիմ այն ենթադրութիւնը՝ թէ այս կորստեան նախատիճանը յունարէնի մէջ ց եղած ըլլայ)։ Այս պատճառաւ կը կարծեմ թէ այն ժամանակին՝ ուր ց հայերէնի մէջ h եղաւ, ցի առջեւ գտնուող ռնգական մ'արդէն կորսուելու վրայ էր եւ իւր ժամանակի տեւողութենէն մաս մ'արդէն ցի տուած, որով ց երկարեցաւ եւ դիմացաւ։ Ռնգականի կորուստին խորին հնութիւնը կը հաստատուի Չէլ բառով (էջ 127). միայն թէ այս բառին մէջ ց ձայնը երկար եղած չէր. (անհիմն է այն ենթադրութիւնը թէ ց ձայնը ռի եւ նի միջեւ նախ կորսուած ըլլայ, վասն զի -ռն- հայերէնի մէջ ղ կ'ըլլայ եւ ոչ ւ)։ Սուր բառին մասին = ἄορ՝ տես § 43։ Հնդեւր. k̑ē ծագում առած ցի առջեւ գտնուող ռի կորուստը յետին ժամանակի դէպք է (զ. օր. հասանէմի մէջ). անշուշտ աւելի ուշ ժամանակի մէջ հանդիպած է ռի մը կորուստը, որ կայ յետոն բառին մէջ եւ ղի առջեւ, որ հայկական ձայնաւոր նուաղմանց ժամանակէն առաջ՝ յէ ծագած էր բաղաձայնէ մը յառաջ, հմմտ. KZ XXXVIII 226, ուր սա եղանակաւ մեկնած եմ բառերս՝ ճաղում, սեռ. ճաղմի, ճա (ծագած *i̯zē) եւ մէջ (մ- տառին նկատմամբ հմմտ. § 55). ւերու բառին մասին հմմտ. § 47. խանձեմ եւ խանձիմ (ի մանաւորի արգելեալ ցանկութիւն նշանակութեամբ) բառերուն քով կայ խող (նոյնպէս մանաւանդ ցանկութեան նկատմամբ). խանձեմ բառ ինքեան "այրել, խանձատել" կը նշանակէ. Բաղրուպանեան ի Թերթին Հանդէս Ամ. 1903,

էջ 382 կը մեկնէ եղ սեռ. եղւոյ "մի, ծագում առած *sems-ĝhet-. լաւագոյն է ընել *sem-ĝho-է յառաջ եկած, հմմտ. լատ. singuli (եւ ĝով փոխանակ ĝhի՝ յուն. ἴγγια· εἷς. Πάφιοι, հմմտ. Solmsen, IF XIV 437։) Անշուշտ այս եղ բառին հետ միեւնոյն է հեղ, սեռ. հեղւոյ (կը նշանակէ մերձաւորապէս "պարզ" բարուց նկատմամբ)։ Սակայն այս բառը խոտորում մը կը պահանջէ i ձայնին՝ որ ռնգականի մ՚առջեւ e ձայնէ ծագած ըլլայ (§ 47)։

§ 47. Այս ձայնաւորի անցման պայմաններն եւ ըստ այնմ ժամանակագրութիւնը դեռ ճշդիւ քննուած չեն։ Զգենում է (որմէ՝ զ-գենում) յուն. ἕννυμαι կը հաստեցուի թէ ե անփոփոխ կը մնայ հնդեւր. snի առջեւ։ Ասոր հետ չի համաձայնիր գին, հհնդկ. vasná-, լատ. vēnum։ Ի հարկէ կրնայ հնդեւր. *vesno-ի քով *vēsno- մըն ալ ընդունուիլ. վասն զի յուն. ὦνος ցոյց կու տայ թէ այս բառախմբին մէջ հնդեւրոպական ձայնաւորաց փոխանակութիւններ տեղի կ՚ունենան, սակայն այլուստ *vēsno- ձեւ մ՚ուղղակի ամենեւին չէ ցուցուած։ Աւելի տարակուսական կ՚ըլլայ զգենում բառին մէջ ի ձայնաւորին պահպանութիւնը՝ որ երբ թէ nի առջեւ եղող հնդեւր. sէ պատճառած ըլլայ, եթէ նկատի առնունք նաեւ հենում, կար. հենի։ Այս բառը կշռուած է ցայժմ յաջորդներուս հետ՝ գոթ. spinnan "մանել", լիթ. pinù, pìnti "հիւսել", հսլ. pęti, pьną "ձգտել", ռուս. пять եւ пнуть "ոտքով զարնել", запнуть "կեռ տալ, թաթել", распять "խաչել", препять "արգելուլ" (препятствіе "արգելք"։) Եւ եթէ տակաւին անորոշ ձայնական խնդիրը զանց առնուի, չեմ գիտեր թէ ասոր դէմ ինչ կրնայ առարկուիլ։ Ի մասնաւորի սլաւերէնի մէջ շատ տարածուած արմատը հնդեւր. միւս լեզուաց շատերուն մէջ հետքեր ձգած է, որոնցմով հոս պիտի չզբաղիմ. միայն կը յիշեմ լատ.

*pendō* (Meillet MSL XI 311)․ նոյնպէս πένομαι, πόνος (այս է՝ «ինք զինքը, իր զօրութիւնը լարել, ձգտում») պէտք չկայ զատելու։ Անշուշտ յենում է բաղադրուած է յ-ենում, կատ. յեցոյ, ածանցմամբս՝ ն-եցոյ-ի (յ- եւ ն- երկու կազմութեան ձեւեր են նախադրութեան մը՝ որ կը համապատասխանէ լատ. *in*, յուն. ἐν նախադրութեանց)։ Տարակոյս չկայ որ կատարեալի զարտուղի ձեւը պէտք չէ որ զմեզ խրտչեցընէ․ յեցոյ տ-կատարեալի մը կերպարանափոխութիւնն է (հմմտ. հին սլաւ. pęsъ)․ ասոր քով կրնար արմատական կատարեալ մը (յենի) գոյութիւն ունեցած ըլլալ, վասն զի ներկան -*neu*- կարգին համաձայն կազմուած է։ Դարձեալ յենում-ի ուրիշ կազմութիւն մըն է ստուգիւ նաեւ ղ-ենում, կատ. ղենի. Թէպէտ հոս քիչ մը զարմանալի է նշանակութեան զարգացումը. հաւանականագոյնս պէտք է «մորթել, քերթել» նշանակութիւնն իբրեւ նախնական ընդունիլ, հմմտ. ասոր համար լեհ. *od-piąć* «(կոճակի կամ օղակի սլաքը) քակել՝ հանել»։ Բաց աստի՝ հոս պաշտպանուած ստուգաբանութիւնը մերժելով՝ կարելի չէ յենում-ի ձեռքէն ազատիլ։ Այս յենում-ը՝ *յե-նում կամ «*յեն-ում» ձեւէ մը համարելու (Հիւբշմ. Arm. Gramm. I 520) ձեւախօսօրէն ամենեւին հիմ չկայ՝ յենի կատարեալին պատճառաւ։ Եւ այսպէս կը ստիպուինք է ձայնին ի ձայնաւորի (եւ ոի՝ ու ձայնաւորի) անցման համար՝ ուրիշ կանոն մ'ենթադրել։ Այս անցումը միայն այսօրս եղած վերջին վանկին մէջ մնած պիտի ըլլայ, եթէ նի նախապէս ձայնաւոր մը կը յաջորդէր․ բայց նոյն անցումը տեղի ունեցած կրնայ ըլլալ հաւասարապէս թէ հնդեւր. -*sn*-, -*sm*-ի՝ եւ թէ հնդեւր. -*n*-, -*m*-ի առջեւ (այսինքն՝ անցումն այն ատեն հազիւ տեղի ունեցած պիտի ըլլայ՝ երբ հնդեւր. *s* ձայնը բոլորովին համր եղած էր այս յարաբերութեան մէջ. ես հաստատուն

մնացած է եւով, որուն մէջ ալ ո դեր մը չի խաղար, Հմմտ. էն եւն։) Անշուշտ այն ատեն պէտք է առնել նմանակազմութեան մ'արդիւնք ըլլալ, եթէ ե ձայնէ ծագում առած է ձայնաւորի մը համապատասխանէ շեշտին նախընթաց վանկին մէջ գտնուող ը։ Սեռ. ընոյ՝ ուղղ. ընէն եւ ամէն այսպիսի դէպքեր նմանակազմութիւններ ըլլալու են։ [Ծանօթ նմանակազմութիւնը կորսուած արմատական բառին համաձայն ըլլալու է. վերջաւորութեան մասին Հմմտ. ծղօտ / ծէղ. իսկ ժամ եւ գնամ բայերուն մէջ ես կ'ընդունիմ հնդեւր. ē կամ ō. Հմմտ. վարը § 50]։ Որչափ ալ կանոնաւորապէս տեղի ունեցած ըլլայ նմանակազմական փոխանակութիւնս՝ է (ծագած էէ) / ձայնին կորուստը, սակայն բուն կանոնաւոր վիճակի մնացորդներ ալ տակաւին մնացած են։ Ստէն բառին, հհնդկ. stana-s "ծիծ, ստին", բացառականն է ստէնէ բոլորովին կանոնաւոր է, եթէ ենթադրուի թէ այս բառը հայերէնի մէջ է-:ա- արմատ (այս է՝ հնդեւրոպ. ā-արմատ) մ'եղած է։ Այս բացառականէն նմանակազմաբար զարգացած է ստեան սեռական մը՝ ըստ ծանօթ օրինակներու (Քորո—Քեան եւ է Քորո—Քէնէ, ուղղ. Քորո—Քի—ն եւն)։ Ձայնագիտական կանոնաւոր հանգամանաց ուրիշ քանի մը մնացորդները նսեմացած են հայերէնի (յետոյ ազդող) ձայնաւորաց նմանաձայնութեամբ։

Արդարեւ մինչեւ հիմայ յայտնապէս վճռուած չէ թէ հայերէնի մէջ ձայնաւորաց նմանաձայնութիւն մը կայ, բայց անտարակուսելի ըլլալու է։ Միայն ձայնաւորաց նմանաձայնութեամբ կը մեկնուի ո- ձայնաւորը՝ որ կը գտնուի բառերուս մէջ՝ ողորմ, ողոք, ողորկ, վասն զի ամէն սկզբնաձայն ո՝ բաց վանկի մէջ սովորաբար ա եղած է (Հեղ. KZ XXXVI 99)։ Այս դիպաց մէջ ո- ձայնաւորը կրնայ մասամբ ա-է ծագած ըլլալ, մասամբ համապատասխանել նախաւոր ո-ի մը (որուն ա-ի փո-

խուփը խափանուած ըլլայ), վերջապէս մասամբ eէ մեկնելու է (այսպէս ողորմ բառին մէջ, եթէ յուն. ἐλεαίρω ի հետ աղերս ունի, տե՛ս՝ Torp, Zum Phrygischen էջ 18, Videnskabsselskabets skrifter, Kristiania 1896. սակայն Մէյէ MSL X 280 ուրիշ կերպով կը մեկնէ, հմմտ. վերը § 43ին վերջը)։ Չեմ վճռեր թէ արդեօք օ՝ որ կայ բառերուս մէջ՝ նոր սեռ. նորոյ, հմմտ. նորոգ եւ չոր սեռ. չորոյ, նմանաձայնութեամբ e ձայնէ՞ յառաջ եկած է (հմմտ. յուն. νεαρός եւ ξερός). շատ աւելի տարակուսական փաստ մը կ'ըլլար գործ սեռ. գործոյ, հմմտ. յուն. ἔργον։ [Հմմտ. այժմ նաեւ Հ ե ղ ի ն ա կ ի ն գրածը Les pronoms démonstratifs de l'ancien arménien էջ 22]։ Բայց ես բոլորովին հաւանական կը համարիմ թէ e եղած է o, երբ յաջորդող օէ մ'ազդեցութիւն կրած է։ Ընդհակառակն յաջորդող a կամ u ձայնաւորի մ'առջեւ o եղած է։ Անիկա յայտնի կ'ըլլայ ի մէջ այլոց կրկնաւոր կազմութիւններէն։ Մէյէ MSL X 280 դիտել կու տայ, թէ "Շատ պարագայի մէջ հայերէնը կը ներկայացընէ o ձայնաւորի կրկնութիւն մը՝ թէ յաջորդ վանկին o ձայնաւորին առջեւ (տոտորել) եւ թէ ու-ի առջեւ (մոմուռ, հմմտ. մուխս)"։ Ուրիշ օրինակներ են՝ չորչոփ հսլ. gradŭ, փոփոխ, մամուռ հսլ. mŭchŭ լատ. muscus (Բուգգէ KZ XXXII 17), տոտրակ, տուրտամ հսլ. drěmati "ննջել", լատ. dormiō (հմմտ. ընդհակառակն դէդեւեմ, ըեըե- եւն)։ Հրահանգիչ է դարձեալ գործոն, որուն գոր- վանկը՝ ինչպէս Հ ի ւ բ շ մ ա ն I 433 մտադիր կ'ընէ, պէտք է *gehar- *vesr- ձեւերէն մեկնել, բայց աւելի պէտք է՝ որ կողմնակալ դառնանք, նախ եւ յառաջ ծագած ըլլալ *ger-։ Խալամ բառը՝ հայերէնի մէջ արդասաբեր -mo- վերջաւորութեամբ՝ ածանցած է խելէ սեռ. խելոյ. այստեղ հնդեւր. ձայնաւորաց փոխանակութիւն մը չի կրնար ընդունուիլ։ Նոյնպէս

ամենադոյզն հնարաւորութիւն ալ չկայ հնդեւր. ձայնաւորաց փոխանակութիւն մ'ընդունելու յաջորդ բառերուս մէջ՝ ընփէ-փառան, մեփառան, փառանց ևտն. (որուն համաձայնած է ուղ. փառն) կամ ճռնառն եւ ճէց։ [Հենառմի քով կը գրուի նաեւ Ըառնառմ]։ Երկու համանման ձայնաւորաց (ի մասնաւորի ա կամ օ) յաջորդութիւնը հայերէնի մէջ յաճախադէպ է, այնչափ յաճախադէպ՝ որ հայերէնի արմատոյ-կազմութեան նկատմամբ նխալ գաղափարներու պատճառ եղած է (հմմտ. § 28 կողոպուտ, կորուստ, կատակն)։

Հայերէնի ձայնաւորաց նմանաձայնութիւնը նմաներանգութիւն մը չէ (այսինքն՝ բաղաձայնից միջնորդութեամբ յառաջ եկող նմանաձայնութիւն մը), այլ ձայնաւորներու ներդաշնակութիւն մը (այս է՝ առանց բաղաձայններու միջնորդութեան յառաջ եկած նմանաձայնութիւն մը)։ Բաղաձայնից միջնորդութիւնը պէտք չէ անոր համար ընդունիլ որ ե ձայնաւորն ա-ի քով անմիջնորդաբար աննմանաձայն կը մնայ, այլ ասի ընդհակառակն կը մեկնուի անով՝ որ եա երկբարբառ մը կը կազմէր։ Հայերէնի ձայնաւորաց նմանաձայնութիւնը բացայայտ կերպով զուգընթաց է Թրքերէնի ձայնաւորներու ներդաշնակութեան հետ, որուն օրէնքները նկարագրած եմ ի թերթին ZDMG LVII 540 եւ հետեւ.։ Լեզուի յետսակողմամբ հնչուող a եւ u կրկին ձայները պատճառ եղած են ei դէպ ի լեզուի յետսակողմը ձայնաշրջելու (հմմտ. հնագոյն Թրքերէն ձայնաւորներու ներդաշնակութիւնը, որ միայն լեզուի յօդաւորութեան մէջ համաձայնութիւն կը պահանջէ). բայց o միեւնոյն ատեն կլորութիւն պատճառած է ձայնաշրջած ei (հմմտ. Թրքերէնի ձայնաւորաց նոր ներդաշնակութիւնը, կլորութեան կամ շրթանց ներդաշնակութիւնը, որուն մէջ լայն ձայնաւորներն աւելի մեծ գունաւորող կարողութեան մ'ունին՝ քան թէ նեղ ձայ-

նաւորները, այնպէս որ o կրնայ կլորութիւն յառաջ բերել, մինչդեռ u կլորութիւն յառաջ չէր բերեր)։ Մոնղոլեան ձայնաւորներու ներդաշնակութիւնն ալ նոյնպէս զուգընթաց է։ Ցայտնի է. թէ ասիկա գրաւոր մոնղոլերէնի մէջ միայն լեզուի արտասանութեան հետ աղերս ունի. կրտսերագոյն կլորութեան ներդաշնակութիւն մ'ի յայտ կու գայ կալմիւքերէնի մէջ, եւ հոն դարձեալ oէ եւ öէ յառաջ կու գայ, բայց ոչ՝ u եւ ü ձայներէ, կալմ. xolo „հեռու" մոնղ. xola, կալմ. xojor „երկու" մոնղ. xojar, բայց կալմ. unaxu „վար իյնալ" մոնղ. unaxu։ Այս կանոնը բոլորովին պայծառ ու յայտնի կը տեսնուի „Սիդդհի-Կիւրի զրոյցներուն" մէջ (Märchen des Siddhi-Kür), զոր Jülg հրատարակած է։ Անշուշտ հոս կայ դիպուածական կլորութիւն մըն ալ՝ որ u, üէ յառաջ եկած է, բայց ո՛չ այնպիսի կանոնաւորութեամբ։ Նոյնպէս դիտել կու տայ Castrén (Burjätische Sprachlehre էջ 4 § 16) թէ արմատավանկ օի մը յաջորդող a մը կը կլորցընէ եւ կը շրջէ o ձայնաւորի։ Ասոր հակառակն միեւնոյն կլորութիւնը u յառաջ կը բերէ միայն քանի մը գաւառաբարբառաց մէջ։ Ի վերջոյ հայերէնի ձայնաւորաց նմանաձայնութիւնը թրքերէնի, մոնղոլերէնի եւ ֆիններէնի ձայնաւորներու ներդաշնակութեան հետ անով զուգընթաց է, որ շեշտաւոր վանկէ յառաջ կու գայ։ Միայն շեշտին դիրքը բոլորովին տարբեր է։ Ֆիններէնի եւ մոնղոլերէնի մէջ շեշտը կ'իյնայ առաջին վանկին վրայ, միեւնոյն բանն էր նախաթրքերէնի մէջ։ Այս պատճառաւ ձայնաւորներու ներդաշնակութիւնն այս ամէն լեզուաց մէջ յառաջախաղաց է։ Հայերէնի այս օրւան վերջին (լիա)վանկը (այս է՝ հնդեւր. վերջընթեր վանկը) շեշտաւոր է։ Այս պատճառաւ հայերէնի ձայնաւորաց ներդաշնակութիւնը յետախաղաց է (սակայն եւ այնպէս կրնայ գտնուիլ նաեւ երկրորդական

չեշտէ յառաջացած յառաջախաղաց ձայնաւորաց ներդաշնակութիւն մը, զ. օր. բառիս մէջ՝ ողոչէմ, ծագում առած *ողո- ձեւէ, Համմտ. ողոփ § 32): Շեշտի այս տարբերութիւնն որոշիչ էր ձայնաւորաց ներդաշնակութեան անդրադոյն բախտին համար: Ասիկա Թրքերէնի (մոնղոլերէնի եւ ֆիններէնի) մէջ կրնար բոլորովին կերպաւորուիլ. վասն զի առաջին վանկը՝ իբր արմատական եւ իբրեւ ի մասնաւորի կարեւոր զգացուած՝ միշտ անփոփոխ մնաց: Հայերէնի մէջ ընդհակառակն ձայնական օրինաց միայն մեքենապէս իսկ տիրելովն՝ նոյն արմատին պէսպէս ածանցումներն, մինչեւ անգամ միեւնոյն բառին հոլովման այլեւայլ ձեւերն, արմատականերպի տեսակէտով իրարմէ բոլորովին պիտի խոտորէին: Բնականապէս ասոր թոյլ տրուած չէ. Ասիայի պարագայից մէջ պէտք չէ զարմանալ, որ է չէ փոխուած ու, զոր օր. բառերուս մէջ՝ ուչէօօր սեռ. ուչէօրէ, եւ ըէղոա, սեռ. ըէղոաի: Ընդհանրապէս ձայնաւորաց ներդաշնակութեան զարտուղութիւնները մեծաւ մասամբ կը մեկնուին իբրեւ բոլորովին բնական նմանակազմութիւններ: Ինչ ինչ բառ՝ որ ըստ երեւութին կղզիացած է, եթէ մանր միտ դրուի՝ կղզիացած չէ (զ. օր. ֆէօօր § 9), եւ ինչ ինչ բառ ալ՝ որ այժմ բոլորովին կղզիացած է, թերեւս աւելի կանուխ՝ պատմական ժամանակին սկզբէն քիչ մ՚իսկ յառաջ կղզիացած չէր: Այսպէս՝ օր. աղ. ֆէօօյ մեզի համար կղզիացած է եւ ստուգաբանօրէն մթին: Բայց կը բովանդակէ արդիւնաբեր վերջաւորութիւնն՝ -օյ (§ 37), իսկ արմատական բառը շատ դիւրութեամբ կրնայ երկար ժամանակ ֆէօօյ բառին քով մնացած ըլլալ: Եըչօն եւ ուրիշ նման բառեր թերեւս մեկնուին է նախատառին նախադրական նկարագրէն: Եթէ իմ ենթադրութիւնս ողոչէմի մասին (վերը) ուղիղ է, այն ատեն կարելի է նաեւ էըչօն, սեռ. էըչօնի եւ ջէրօն սեռ. ջէրօնոյ, անկէ մեկնել, որ եռավանկ

ձեւերուն առաջին վանկն աւելի զօրաւոր շեշտ մ'ունէր՝ քան երկրորդը։ Թէպէտ անհաճոյ՝ բայց միշտ ելք մըն է որ հեր– մակբային համար՝ անոր վերաբերող հեր–ին ածականը յիշել ստիպուած ենք։

Հայերէնի ձայնաւորաց ներդաշնակութիւնն ըստ այսմ եապէս յայնմ կը կայանայ՝ որ գլխաւոր շեշտն ունեցող ա կամ ու– մ'իրմէ անմիջապէս յառաջ եղող վանկին ե ձայնն ի կը փոխէ. մինչդեռ գլխաւոր շեշտն ունեցող օ ձայնաւորը նոյնը ի կը փոխէ։ Աստ հակառակն ա, ու–, ը ձայնաւորներու ազդեցութիւն մ'ի ձայնաւորին վրայ ամենեւին չի նշմարուիր։ (Մէյէ՝ Esquisse էջ 32 սխալմամբ կ'ընդունի թէ ու–՝ իրմէ յառաջ եղող ի մը էի կը փոխէ. հենում եւ գնենում բառերուն մէջ ստուգիւ երբեք ի մը գոյութիւն ունեցած չէ [ñենում գրութիւնն անշուշտ հենում գրութենէն կրտսերագոյն է]։ Մէյէ՝ ի թերթին Journal asiatique 1903 էջ 500, վկայութեան կը կոչէ ընկենում, կատ. 3 եզ. ընկեց. բայց ընկենում ձայնապէս *-էանում- ձեւէ կը ծագի, եւ ձեւախօսօրէն ալ աստ դէմ ծանրակշիռ բան մը չի կրնար առարկուիլ. (ի վերջոյ ընկենում կրնար ըստ ընկլնում-ի օրինակին՝ *ընկենում ձեւէ մը շրջած ըլլալ). թերթում- բառին առաջին վանկին մէջ կը թագնուի ոչ թէ հին ei, այլ հին եա եւ լեզու՝ գոթ. tuggōi համապատասխանող բառի մը կերպարանափոխութիւնն է, եւ կրնայ օրինապէս -en- ունեցած ըլլալ. լեզու սեռական ձեւին մէջ ու կրնայ յէ ծագում առած ըլլալ. ո ձայնը գին առջեւ կորսուեցաւ. իսկ լեզու– դաւառական ձեւը՝ զոր վկայութեան կը բերէ Մէյէ, կրնայ լեզու–մի համաձայն կազմուած ըլլալ)։ Նոյնպէս գլխաւոր շեշտն ունեցող ե կամ ի մը նախորդ վանկին ձայնաւորին վրայ ազդեցութիւն մ'ըրած չէ։

Ծանօթ է թէ կէն բառին քով կայ յօգն. կանայք։ Աստ վրայ աւելցընելու է յոգն. սեռ.

կանանց եւ յոգն. գործ. կանամբք։ Այս ձեւերուն շատ նոր ըլլալն անկէ յայտնի է որ եզ. գործիականը՝ որ այլուստ միշտ յոգն. գործիականին եւ միւս յոգնակի հոլովներուն հետ կը համաձայնի, հոս Ս. Գրոց թարգմանութեան մէջ տակաւին կնաւ կը հնչէ (Հիւբշման՝ I 460)։ Իմ ենթադրութեանս համեմատ՝ կանայ-ք (§ 37) ծագած է հին հաւաքականէ մը՝ *կանայ։ Իսկ կանամբք եւ կանանց կը հիմնուին ուրիշ հաւաքականի մը վրայ *կանան (որմէ անդրադարձ կազմութիւն մըն է կանանի, որ իրօք գոյութիւն ունի. հմմտ. էշ-ան, ձի-ան, Հայր-ան՝ § 15)։ Կանամբք ածանցած է տակաւին հաւաքական *կանան ձեւէն եզ. գործիականէն, իսկ կանանց՝ յոգն. կանայ սեռականէն։ [Թէպէտ եւ իռլ. ben “կին„ ban “կանանց„ ձեւերուն մէջ կայ հնդեւրոպական ձայնաւորաց փոխանակութիւն մը. բայց հայերէնի համար ես ուրիշ մեկնութիւն մը նախամեծար կը համարիմ] (կանանց եւ կին)։ Ուրեմն ա այս ձեւերուն առաջին վանկին մէջ ձայնաւորաց ներդաշնակութեան արդիւնք մըն է. ուստի ասիկա ե ձայնաւորէն ծագած է, եւ ցոյց կու տայ թէ ե ձայնաւորը գլխաւոր շեշտը չունեցող վանկերուն մէջ նաեւ ռնգականներու առջեւ անփոփոխ մնացած է։

Թերեւս բոլորովին նման է այն աղերսը՝ որ կայ բառերուս միջեւ՝ հանապաղ եւ հին, հհնդկ. sána- (ուր ոչ ոք անշուշտ կ'ուզէ հնդեւր. ձայնաւորի փոխանակութիւն մը փնտռել)։ Միայն թէ հանապաղի կազմութիւնը պայծառ չէ։ Բայց անշուշտ շատ մը բառերու միացում մըն է. այսպէս՝ հան-ապա-ղ (ապա) կամ հան-ապ-աղ (հաղ)։ Բայց ո՛չ առաջին տարեր նախնական վերջաւորութիւնն եւ ո՛չ ալ վերջին տարեր նշանակութիւնն որեւէ կերպով պայծառ է։

Անշուշտ ղջէնոոմ, հէնոոմ, է օրէնէ, կանայք, հանապաղ ձեւերը յայտնապէս ցոյց կու տան թէ

է կրնայ ն+ձայնաւորէ յառաջ՝ շեշտին նախընթաց վանկերուն մէջ անկորուստ մնալ։ Այս պատճառաւ օրէնքը կարելի էր այսպէս ձեւել. ե ձայնաւորը միեւնոյն վանկին մէջ ռնգականի մ՚առջեւ եղած է ի (իսկ օ փոխուած է ու-ի)։ Այն ատեն այս օրէնքը պէտք էր վերջաձայն ձայնաւորաց օրէնքէն աւելի կրտսերագոյն ըլլալ. եւ զարմանալի կ՚ըլլար որ ասի փոխառեալ բառերուն մէջ տեղ մ՚ալ չի տեսնուիր (ճեմ, ճենգ պրսկ., ձօմ ատր., ջեմ, ջեմբ, տփոմ յուն. [տղ-ոնգ կր խոտորի]). բաց ասկէ՝ անըմբռնելի կ՚ըլլար օ-ծի անցման դադարումն եւ բոլորովին անկարելի կ՚ըլլայ ժամանակի այս որոշումն, եթէ մտածուի որ եէ յառաջացած ի ձայնաւորն երբեւան կու գայ ի նախադրութեան մէջ՝ յուն. ἐν, ուսկից կը հետեւի թէ անցումը հնագոյն է՝ քան վերջաձայն անվանկ ռնգականի մը կորուստը (ուստի ո̂ եւ նո, դո, սո (նոյն, դոյն, սոյն), որոնց վրայ խօսած եմ ի թերթին KZ XXXVIII 239, այս պատճառաւ չեն կրնար -om վերջացող հայցականներէ մեկնուիլ, այլ միայն s-ազուրկ ուղղական ձեւերէ. Մէյէ՝ ի թերթին Journal asiatique 1903 էջ 504, « կը համեմատէ լատ. quī-ի հետ որ ծագում առած է quo-iē. « ձայնաւորը հնդեւր. o վերջաձայնի մը շեշտեալ ձեւն է, իսկ « անշեշտ։) Վերջաձայն անվանկ ռնգականի մը կորուստն ալ անպատճառ հնագոյն է՝ քան թէ վերջատառ ձայնաւորաց օրէնքը։ Այս պարագայից մէջ կ՚երեւայ թէ ե ձայնէն ի ձայնաւորին անցումն (իսկ օէ՝ ու-ի) ոչ թէ վանկերու բաժանումէն կախեալ է, այլ մի միայն շեշտէն։

Եթէ ասիկա ուղիղ է, այն ատեն ստուգիւ չի կրնար ընդունուիլ թէ ռնգական+բաղաձայն ուրիշ ազդեցութիւն մ՚ունեցած է՝ քան ռնգական+ձայնաւոր։ Հնգետասան հինգի քով, հնգէ սեռ.՝ հինգ ուղղականի մօտ եւ նաեւ հնգեր (հինգ բառէն ածանցած՝ հանդերձ արդիւնաբեր -եր- վեր-

ջաւորութեամբ, հմմտ. վարը՝ § 81, բայց նշանակութեան կողմանէ խօնդ բառին կրթնած) եւն պէտք է որ նմանակազմութեանց արդիւնքն ըլլան, այնպէս՝ ինչպէս սեռ. ձնոյ, ձիւն ուղ. ին քով: Ընդէր-ոյ՝ ինչպէս Հիւբշման I 447 կ'ենթադրէ, պէտք է ընդ-ով բարդուած բառերուն նմանած ըլլալ. Նոյնպէս ընծայ, եթէ հհնդկ. *amhati*- «ընծայ» բառին հետ աղերս ունի: Նաեւ Մէյէ (Journal asiatique 1903 էջ 497 եւ հետեւ.) կ'ընդունի թէ ձայնաւորին կորուստը (կամ անոր անցումն յը) այնպիսի դիպաց մէջ նմանակազմաբար է: Նախնականն՝ ըստ իւր տեսութեան՝ անկորուստ մնացող ի մըն է, հմմտ. Եփնփեր-րդ: Մէյէ այս օրինակներէն բոլորովին անըմբռնելի եղանակաւ կը հետեւցընէ թէ անշեշտ ի՝ դի առջեւ անկորուստ կը մնայ, եւ ասոր վկայութիւն կը բերէ դի առջեւ գտնուող ի կամ ո-նախաձայնով դէպքերու ցանկ մը: Սակայն նախաձայն ի կամ ո- երբեմն շեշտին նախընթաց վանկին մէջ ալ անկորուստ կը մնայ. ուրեմն դ ամենեւին ազդեցութիւն ըրած չէ: Հայերէնի ի եւ ո- ձայնաւորներուն կորուստն ընդհանրապէս շրջապատող բաղաձայններուն բնութենէն կախում չունի: ի եւ ո- ձայնի մ'անկորուստ մնալն (ի բաց առեալ բառասկզբան) միայն անով կը մեկնուի՝ որ այս *i* եւ *u* ձայնաւորները հայկական ձայնաւորաց նուաղումներէն աւելի կրտսերագոյն են: Սակայն *i* եւ *u* ունդականի առջեւ աւելի հնագոյն են՝ քան վերջաձայնի օրէնքները: Դարձեալ՝ ըստ Հիւբշմանի I 410, վերջաձայնի օրէնքները հնագոյն են՝ քան շեշտին նախընթաց ձայնաւորին նուաղումը (ի հարկէ այս ժամանակախօսութիւնն ապահով չէ, եւ § 17ին վերջին անշուշտ աւելի հակառակը կ'ապացուցանէ): Մէյէ իւր կանոնին համար կոչում կ'ընէ տակաւին յիսուն, (ընդհանրապէս անդոյ) նիւթ ցուցընող ածականը՝ խունկեղէն — խունկ բառէն, եւ վերջապէս Եփձն, սեռ. Եփման, զոր կ'ուզէ *hiŋgmn̥e

ծագած մեկնել (առանց ստուգաբանութեան)։ Սակայն ասով Մէյէ կատարելապէս ինք իրեն հակասած է. վասն զի *hiŋgmŋ̥ նախաձեւի մը մէջ g շատ կանուխ կորսուած ըլլալու էր եւ -ŋm- եղած ըլլալու էր -մ- (հմմտ. ատամն, ծագած *odn̥tmn̥ կամ *edn̥tmn̥ ձեւէ)։ Հիմայ կը կարծեմ թէ հինգ ծագում առած է *penmŋ̥e, եւ հինգ-մի հետ աղերս ունի, հմմտ. հսլ. osnova "հիմն" snutik "առէջները պրկել, նիւթել"։ Հիման սեռականին ի ձայնաւորը կրնայ միայն նմանակազմ ըլլալ (կանոնաւոր կ'ըլլար անշուշտ ա ծագում առած է ձայնէ)։ Անշուշտ նմանակազմութեան վրայ կը հիմնուին նաեւ հինգերորդ եւ յիսուն (ծագած *y-hing-sun)։ Մէյէ նմանակազմութեան մը հնարաւորութիւնը կ'ուրանայ, վասն զի իբր նախաւոր ձեւ միայն *hng-եւն կրնայ կարծել։ Ըստ իմ հետազօտութեանցս՝ նախաւոր ձեւը պէտք էր աւելի *heng- հնչել։ Ուստի ըստ ձայնական օրինաց է ինգ- § 18։

Ուրեմն § 47ի հետեւութիւնն է՝ ի եւ ու շեշտաւոր վանկին մէջ՝ նոյնավանկ կամ այլավանկ ռնգականի մ'առջեւ եղած ի եւ ու. բայց այս բանը չպատահեցաւ շեշտին նախընթաց (ու յաջորդ- հմմտ. § 20) վանկերուն մէջ։ Այս հետեւութեամբը ժամանակախօսական որոշ յենակէտ մը ստացուած չէ։ Բայց ամենեւին տարակոյս չկայ ձայնական այս օրէնքը հնագոյն համարելու ռնգականի կորստեան ամենահին դէպքերէն, վասն զի ամիս, միս, ուս (յուն. ὦμος) կրնան հնդեւր. ē եւ ō բովանդակել։ Առանց ամենեւին ժամանակագրական խնդիրը նկատողութեան առնելու՝ կրնայ լեզու բառին մէջ ռնգականի մը կորուստ ընդունուիլ, եւ նոյնպէս եղ "մէկ", հեղ բառերուն մէջ՝ այն ենթադրութեամբ՝ թէ ուղղականին է (գ. օր. բառերուս մէջ՝ էս, վէղ) բուն կանոնաւոր ձայնաւորին տեղն ե մ'անցած է, համեմատ սեռականին (էղոյ, հէղոյ), ածանցներուն (էղակ, էղական, էղակի) եւ բարդութեանց

(եղջեւր եւն)։ Հազիւ թէ սխ կատարուած լմնցած էր՝ ջ եղաւ ղ, եւ անդականին կորուստը պատճառեց.

§ 48. Փակ բաղաձայնի մը հետ միացած s՝ հայերէնի մէջ հ եղած չէ։ Հնդեւր. st եւ sq (sqᵘ) յերեւան կու գան իբր ստ (ստէն հհնդկ. stana-) եւ սչ (սչոտնչ հսլ. štenę, KZ XXXVIII 297)։ Բայց թէ սովոր հնդեւր. ձուստրբերը պահպանուած չեն, այլ արդէն կազմուած նուրբ-թաւերը յետաշրջած են՝ անկէ յայտնի է որ s͡k կ՚ըլլայ ց (անհամանաձայնութեամբ ըսէ ծագած), եւ sp՝ ս (KZ XXXVIII 200), որ անշուշտ spʿ, sf, sh միջին աստիճանները կ՚ենթադրէ։ Նաեւ sv-է ծագում առած + մը սկզբնատառ ․է մը վերջը՝ կ եղած է (ոչխար բառին մէջ KZ XXXVIII 197)։ Այսպիսով հնդեւր. st, sq խառնուած են հնդեւր. zd, zgի հետ (նէստ, գերմ. nest. zb կը գտնուի թերեւս բառերու մէջ՝ ողանանէմ, կամ. ողանի, ողան-ող, սեռ. յոգն. ողանդի-ց)։ Տարակոյս չկայ թէ sq, sqᵘ, zg, zgᵘ որոնք e եւ i ձայնաւորներէն յառաջ կը գտնուէին պէտք էին քմականացման դիպաց մէջ՝ s կորսնցընել անհամանաձայնութեամբ։ Այն ատեն zg, zgᵘ չէ կրնար ուրիշ արդիւնք տալ՝ բայց եթէ ն [օրինակ մըն է թերեւս ածէն հ. սկանդ. aska ըստ Շեֆտելովիցի BB. XXVIII 310]. ṡq, sqᵘ պէտք էր ւ տալ, եթէ անհամանաձայնութիւնը միաժամանակ ըլլար այն անհամանաձայնութեան հետ՝ որ s͡kի քով տեղի ունի։ Բայց որովհետեւ հայերէնի քմականացման ամէնէն հին աստիճանը kʿi̯ էր (§ 33), կրնայ skʿi̯ (ծագած ṡq, sq է քմականացման դիպաց մէջ) արտասանուած ըլլալ տակաւին այն ժամանակը՝ երբ ց (s͡kէ ծագում առած) եղաւ ց, եւ որովհետեւ ասոր ոչինչ կը հակառակի՝ ուստի անկարելի չէ որ s հոս բաւական երկար ատեն անկորուստ մնացած ըլլայ,

որով նուրբ-թաւին յետաշրջում մը պատճառած է դէպ ի զուտ նուրբը, եւ ըստ այսմ իբրեւ հետեւութիւն այս խմբին՝ կրնայ հաւասար կերպով թէ ճ եւ թէ շ ապասուիլ։ Ներկայից կազմութեանց մէջ՝ ինչպէս Հանդ-չիմ եւն, որոնց մէջ յառաջագոյն ես ալ ուրիշ լեզուաքննիններու հետ sq փնտռած եմ, պարզ զ կը գտնուի (հմմտ. § 14)։ Կրնար դիւրընդունելի երեւալ ճեղքեմ ի համեմատութիւնը բառերուս հետ՝ հսլ. *skolьka «պատեան, կեղեւ», լատ. siliqua «կեղեւ, պատեան» եւ լատ. silex (հմմտ. Johansson, KZ XXX 436 եւ հետեւ. Բրուգման, IF V 377), իսկ ճեղ գաւառական բառը՝ եթէ փոխառեալ չէ, կրնայ համապատասխանել բառերուս՝ իռ. sciath կըմր. ysgwydd «ուս» (հնդեւր. փոխանակութիւն i : ei)։ Հնդեւր. նուրբ-թաւերը թերեւս այս դիպաց մէջ ալ իրենց անեղծ ներկայացուցիչն ունին. սխալ, սփլի, սփլու, սփռեմ (Հիւբշման I, 490, 494), խոչխոխ, խոչխոխ KZ XXXIX 254 (sthի համար օրինակ մը չեմ ճանչնար)։ Միտ դնելու է արդի հայերէնի արտասանութեան՝ որ կը հնչուի սըխալ, սըփռեմ։ Սակայն այս արտասանութիւնը ստուգաբանութեան (գոնէ սխալի) նկատմամբ չի կրնար զմեզ շփոթցընել. «ձայնին եւ նախաւոր նուրբ-թաւին միջեւ պէտք է որ ը մ'աճած ըլլայ (միաժամանակ աճած է ը մը սփ, սկ, սղ ձեւերուն առջեւ, որ արդէն հին հայերէնի մէջ այնպէս է, տես Մէյէ, Esquisse, էջ 30), սակայն միայն քմանականացման ժամանակէն վերջը, վասն զի քմականացեալ sqh յերեւան կու գայ իբր շ (շեղ, շերտ KZ XXXVIII 207)։ Սփլու այս օրս ըսփ- ձեւով կ'արտասանուի, բայց անշուշտ այլեւս կենդանի չէ։ Իսկ s + միջակ-թաւի համար պայծառ օրինակներ ցանցառ են. մոզի բառին նկատմամբ, յուն. μόσχος, μοσχίον, հմմտ. § 3. ողն (ի- : ա-արմատ) — ուսկից է ողն սեռ. ողին, յոգն. սեռ. ողանց, որուն մէջ ղ եւ ն

ձայներուն միջեւ գ կորսուած է եւ նոյնը սեռական ձեւերուն մէջ ալ նմանակազմութեամբ հեռացած — եւ ոսկր՝ մինչեւ ցայժմ ծանօթ ձայնական օրինաց համաձայն՝ չեն կրնար համեմատուիլ յաջորդ բառերուս հետ՝ յուն. ὄσχη, ὄσχος եւ ὀστέον, հհնդկ. ásthi։

§ 49. Ակնարկն իսկ կը սորվեցընէ թէ փակ բաղաձայն+sի միութիւններն երբեք անկորուստ մնացած չեն իբրեւ այսպիսի. բայց թէ ասոնք ի՞նչ ձեւ առած են՝ ամէն դէպքի մէջ պայծառ չէ։ Առատ ատաղձ կը մատակարարեն հին s-կատարեալին մնացորդները՝ որոնց վրայ կ'աւելնան -es- արմատներուն քանի մ'անդրադարձ կազմութիւնները։ Բայց այս ամէն դիպաց մէջ միշտ նորակազմութեան մը հնարաւորութիւնը կայ, այնպէս որ այս կազմութեանց քննութենէն ստացուած հետեւութիւնները (§ 50) կրկին քննութեան մը (§ 51) պէտք ունին։

§ 50. Շատ յաճախ -անեմ վերջաւորութեան օգնութեամբ՝ հին s-կատարեալներէն նոր ներկայ մը կազմուած է։ Ասիկա եղած է անշուշտ մասամբ անոր համար, որպէս զի ներկայի եւ կատարեալի միջեւ ձայնապէս աճած մեծ տարբերութիւնը բարձուի։ Այս հանգամանաց մասին արդէն գրած եմ ի թերթին KZ XXXVIII 206. էմուտ եւ էմոյծ (ներկ. մտանեմ եւ մուծանեմ) իրարու հետ այնպէս կապակցութիւն ունին՝ ինչպէս ἔβην եւ ἔβησα։ Արդէն ասկէ կը հետեւի թէ ds եղած է ծ. իբրեւ ուրիշ օրինակներ յառաջ բերած եմ՝ անիծանեմ = յուն. ὄνειδος, խածանեմ = հհնդկ. khādati, հեծանեմ = յուն. ἕζομαι, որոնք անշուշտ ամէնն ալ բացորոշ են. (ըստ այսմ ուրեմն khādati չի կրնար այն ատեն յուն. χνώδαλονի հետ աղերս ունենալ)։ Նման կերպով դատելու է անշուշտ՝ աղծել, հմմտ. աղտ, թերեւս նաեւ խոյծեմ, եւ խոյզ (խառարծել բառն՝ խառուրդ բառին քով՝ թերեւս

կարենայ բարդուած ըլլալ, հմմտ. խաւարծիլ, որուն ծիլն է = ծիղ § 40)։ Տ-արմատէ մը ծագում առած է անշուշտ դէղձ (սեռ. դեղձոյ կամ դեղձի), եւ դդում-որ (վերջաւորութեան նկատմամբ՝ հմմտ. § 81), բայց ասկէ՝ դղձեմ։ Անէծ բառին ծ ձայնը յառաջ եկած է $d+$ուղղականի նշան s ձայնէն, տ. § 30 եւ § 10։ [Շեֆթելովիցին BB XXIX 30—31 սխալ ձայնական մեկնութեանց հանդերձ տուած օրինակներէն մաս մը թերեւս հոս կը վերաբերի։]

Բնորոշին նման կերպով յառաջ կու գայ հնդեւր. $-dh+s$-է ղ, իսկ ղ եւ ր ձայներէ վերջը՝ ʒ։ Այսպէս՝ ել-ղանեմ բային մէջ, հմմտ. յուն. ἐλεύσομαι. ել-ղանեմ պատճառական է ելանեմի, որ յուն. ἐλαύνω-ի մէջ գտնուող ela- արմատին հետ աղերս ունի. ելանեմի չէզոք նշանակութիւնը նման է գնամի, որ ծագում առած է *gʷhōnā-է, հոլ. gnati "մղել, վարել" (այնպէս կը հաստատուի թէ ἐλαύνω բառին մէջ գտնուող -υνω պէտք է վերջաւորութիւն ըլլալ, բայց ասիկա առանց ասոր ալ անհրաժեշտ ենթադրութիւն մըն էր)։ Եթէ նկատողութեան առնուի որ թէ ելանեմ եւ թէ եղանիմ կրնան լատ. ēvādō բառով թարգմանուիլ, այն ատեն հայ. երկու բայերն ալ դիւրաւ կրնան նոյնացուիլ. եղ- կրնար ելան-ի հետ նոյնպիսի աղերս ունենալ՝ ինչպէս յուն. σχίδνημι ունի σκεδάννυμι բառին հետ, այսինքն՝ ղ ծագած է -ln-է, ուստի եւ եղանիմի մէջ կրկին ռնգական ձեւացուցիչ կայ. բայց ասկէ՝ եղանիմ պէտք է անշուշտ հին միջին-բայէ մը յառաջ եկած ըլլալ, ընդհակառակն ելանեմ՝ հին ներգործականէ մը։ Ելանեմի կատարեալն է՝ ելի, ելեր, ել, ելաք, ելիք, ելին, ընդհակառակն եղանիմի՝ եղէ, եղեր, եղէ—, եղաք, եղէք, եղեն. հոս ղ ձայնը կրնայ ներկայէն առնուած ըլլալ. եզ. 3. դէմքին մէջ նախաւոր -ե վերջաձայնին վրայ աւելցած է

այն դերանունը՝ որ կայ կրաւորականի կատարեալին մէջ (խ...եցա..., KZ XXXVIII 234). յոգն. Հ. եղէ+ ունի -etesէ յառաջացած կանոնաւոր վերջաւորութիւնը՝ որ այլուստ կատարեալի մէջ (եւ նոյն իսկ եղէ+ ձեւերին մէջ՝ ելանէմի քով) խափանուած է նորակազմութեամբ մը (KZ XXXVIII 213). եղէր, եղէ-, եղէ+ ձեւերուն է ձայնաւորին համաձայնած է յոգն. 3. եղէն (հմմտ. 3. յոգն. ներկ. բէրէն՝ բէրէմի քով). Նոյնպէս եզ. 1. դէմքն ալ է ձայնաւորն ունի, բայց ասկէ զատ՝ կրաւորական կատարեալին ալ (եզակի 1. դէմք՝ խ...եցայ) կը պատշաճի: Ուստի ելանէմ եւ եղանէմ կանոնաւոր արմատական կատարեալ մ'ունեցած են, որով յուն. ἐλαύνωէ էապէս կը շեղին: Արմատական ա վերջաձայնը նաեւ աղերս ունեցող գոյական-ներուն մէջ չի տեսնուիր: է- կամ օ-արմատ մըն է եւ յոգն. ելէ. ել...ոփ՝ ելո-ղանէմի նմանած է. ել...նոփ (է- կամ օ-արմատ) ելանէմի հետ այնպիսի աղերս մ'ունի՝ ինչպէս ծն...նոփ՝ ծնանէմի եւ ...ն...նոփ՝ ...նանէմի հետ:

Ելո-ղանէմի յուն. ἐλεύσομαι ἤλυθον բայերուն հետ զուգընթաց է ...ո-ղանէմ կատ. 3. եզ. է...յղ = χεύϑω (§ 29): Դարձեալ Բուգգէ IF I 449 զ...եղյանէմ կատ. 3. եզ. էհէղյ անշուշտ իրաւամբ կշռած է խէղք բառին հետ: Հէղյանէմի քով կայ — եւ այս հանգամանքը բնորոշ է — հէղյ...մ. ասի ծագած է *...էղո-մէ (որուն ղ ձայնը dh միջին բաղաձայնին իյնալով՝ -ln-է յառաջ եկած է): Ստուգաբանութիւնը պէտք է անսա-պահով մնալ, վասն զի որոշ գիտնալ կարելի չէ թէ նախնական սկզբնաձայնը խ ձա՞յնն էր թէ հ:

Այս կատարեալի ձեւերուն մէջ տեսնուած արդիւնքը տուեալ նաեւ հայ ք եւ օի երկրորդական բախումը՝ յոր...ն բառին մէջ, զոր Բուգգէ IF I 451 իրաւամբ կշռած է յոր...հ... բառին հետ: Միջնավանկ ձայնաւորին կորստեան նկատմամբ

Հմմտ. ուտրէմ եւ ույրուտէր § 43, հուորուկ եւ հուաաուր՝ վարը (կանոնները դեռ գտնուած չեն)։

Հնդեւր. *t+s* անշուշտ կը գտնուի անցանեմի մէջ, կամ. 3 եզ. է-անց, լատ. ante, յուն. ἄντομαι.

Քմառադատական+*s* կը գտնուի էջանեմ բային մէջ՝ կամ. 3. եզ. էջ (էջ բայանունը՝ որ բաց աստի "գրքի երես" ալ կրնայ նշանակել, բայեն կախում ունի)։ Իջանեմ հակառականիշն է ելանեմի, եւ ինչպէս որ ելանեմ իւր ելուզանեմ պատճառականով յարաբերութիւն ունի ἐλεύσομαι-ի հետ, այսպէս ալ էջանեմ աղերս ունի οἴχομαι-ի հետ՝ որ ἐλθεῖν-ի ընդդիմակաց է։ Այս պատճառաւ հնդեւր. *g+s* պէտք էր անշուշտ ճ տալ, հնդեւր. *q+s*՝ ղ։

Քմական+*s* կը գտնենք լուցանեմ բային մէջ՝ կամ. 3. եզ. ե-լոյց — լոյս բառով հանդերձ, քմական միջակ+*s*՝ թերեւս լու-ծանեմի մէջ, որ նախ եւ յառաջ գոթ. *lukan*ի հետ աղերս ունի. միջակ-թաւ+*s* անշուշտ ըն-կլուզանեմի մէջ կամ. 3. եզ. ընկլոյզ, որ պատճառականն է ըն-կլնումի, որ ըստ ձայնական օրինաց՝ զ մը կրնայ կորսնցուցած ըլլալ (նմանակազմ է կամ. ընկլայ, ընկլար, ընկլաւ։) Այս տեղւոյ կը վերաբերի նաեւ կղզի. արմատաձեւն անշուշտ նախապէս երկավանկ էր եւ ածանցական վերջաւորութիւն մ'ունի (որ այլուստ ալ հայերէնի մէջ յաճախադէպ է)։ Ընկլուզանեմի պէս կազմուած է փլուզանեմ = փլուցանեմ. *g̃h+s* կը գտնենք նաեւ լեզուի մէջ, կամ. միզէ (ներկայի մէջ մտած է -զ- -*ghn*-է ծագած հնագոյն -*n*-ի մը տեղը)։

Շրթնական+*s* կը գտնենք ցասնումի մէջ կամ. 3. եզ. ցասեաւ՝ ցաս բառին հետ, հմմտ. հհնդկ. *kṣāpayati* "այրէ"։ Նման կերպով երեւ (է-:ու-արմատ) բառին մէջ կը տեսնենք հին *s*-արմատի մ'աճումը՝ երեւ-իմ բային քով, յուն.

-էստ, -ուստ (KZ XXXVIII 218)՝ մեծաւ մասամբ յայտնապէս s- կատարեալէն ածանցած են։

n+s կրնար թերեւս գտնուիլ յաջորդ բայից մէջ՝ սկսանեմ, կատ. սկսայ, 3. եզ. սկսաւ, գոյակ. սկիզբն (-քն վերջաւորութեամբ -mnē ծագած KZ XXXVIII 213) ծագում առած *sqēn-st, իր. intin-scann "սկիզբն"։ n+s կամ s+s կայ ջեռնումի մէջ, կատ. ջեռայ, եջեռ եւ ջեռ. ներկայի մէջ -ռնում է փոխանակ *-ննումի (-sn- կամ -nn-)։

Անտարակոյս l+s կը գտնուի ստեղծանեմ բառին մէջ՝ կատ. 3. եզ. (ե)ստեղծ, որ ստուգիւ յուն. στέλλω "լաւ վիճակի մէջ դնել, հանդերձել" բառին հետ միեւնոյն է. [στέλλω, στολή բառերն ըստ այսմ եւող. σπελλάμεναι՝ στειλάμεναι եւ σπολάς գոյականին հետ աղերս չունին]. բաց ի ստեղծանեմէ կայ նաեւ ստեղծում, որ արդէն վերը բացատրուած կերպով՝ *ստեղում ձեւէ (ղ ծագած lnē) կերպարանափոխուած է։ l+s-ի նոյն զարգացումը կը տեսնուի բառիս մէջ՝ կեղծ-ք, որուն քով կայ կեղ-կործ (§ 28)։ Այն առեն կեղծ-ք անշուշտ -es-արմատի մ'աճումն է։ Այսու հանդերձ ես կը կարծեմ թէ՝ ինչպէս որ § 46-ին մէջ ակնարկեցի, հնդեւր. ls պէտք է ըստ ձայնական օրինաց ղ եղած ըլլալ։ Ուստի ստեղծանեմի մէջ խնդիրը նորէն մէջտեղ եղած կատարեալի յայտարար նշանին վրայ է։ Նորէն մէջտեղ եղած այսպիսի s մը նաեւ ղ ձայնէն ետքը ծ կ'ըլլայ. այսպէս՝ պղծանեմի մէջ, եւ որ կապ ունի պղրջեմի հետ (ստուգաբանութիւնը տես՝ § 37). հմմտ. անձն-տուր լինել = անձնա-տուրծ լինել։ Սկզբնատառ ձայնաւորին կորստեան մասին հմմտ. § 64։ Ապրուստ գոյականը ստուգաբանութեան համար ծանրակշռութիւն չունի. արդէն սովորական -ուստ վերջաւորութիւնն ունի։ Արդեօք կրծում (§ 12) լատ. vorāre բառին հետ կապ ունի՞։ Կարելի է մինչեւ անգամ որ նաեւ կրծանեմի ծ ձայնը նորէն մէջտեղ եղած կատարեալի s ձայնէն յառաջ եկած

ըլլայ. այն ժամանակը կրնար չօրոտտանէմ եւ չօրըն-չէմ բայերուն հետ խնամի ըլլալ (արմատ *gᵘor- եւ *gᵘorus-)։ Քերծում աղերս ունի քերեմի հետ (§ 28)։

§ 51. Կատարեալի կազմութեանց քննութիւնը կրնար այն հետեւութեան հասցընել թէ փակ բաղաձայններու արտասանութեան այլեւայլ կերպերը տի առջեւ անփոփոխ մնացած էին։ Սակայն այն ատեն զարմանալի կ'ըլլար որ -bs- իբրեւ նուրբ-թաւ կը ներկայանայ, իսկ -bhs- կը ձուլուի -ps-ի հետ։ Բայց արդ՝ ամէն այս դիպաց մէջ կրնայ նորոգուած ձեւ մը (ի հարկէ բաւական հին ժամանակի մէջ) ընդունուիլ. եւ այս բանս կրնայ ընդունուիլ յատկապէս շրթնականաց համար։ Այն ատեն s ոչ թէ հնդեւր. -ps-է՝ այլ պէտք էր ենթադրել (զ. օր. հին ներկայի մէջ երեւցող) ս կամ f+նմանակազմաբար սկսած տէ մը ծագում առնուլ։ Այն ատեն առանց այլեւայլութեան՝ կարելի էր ընդունիլ թէ հնդեւր. -ps-, -phs-, -bs- եւ -bhs- պէտք էին կանոնաւորապէս ֆի վերածուիլ։ Իրապէս կայ անստուգաբանութեանց ցանկ մը՝ ուր ֆ յուն. ψի մը կը համապատասխանէ, եւ դժուար է հաւատալ թէ ψ այս ամէն դիպաց մէջ phsէ յառաջ եկած ըլլայ։ Այս ենթադրութիւնը տակաւին հնարաւոր է եփեմ բառին մէջ, յուն. ἕψω (հմմտ. ἑφθός), թերեւս նաեւ ոփ բառին մէջ (օ-արմատ, սակայն ներգոյակ. յ-ոփէ իբրեւ է- արմատ. ուստի անշուշտ սկզբան անդ չէզոք -os-արմատ) յուն. ὄψος "յօդուածք"։ Բայց հազիւ թէ հնարաւոր ըլլայ յաջորդ բառերուս մէջ՝ փռնգտամ, փռնչեմ, յուն. πτάρνυμαι, լատ. sternuo (նախապ. pst-, հայ. ps-), փետեմ, յուն. ψεδνός "նօսր, ցանցառ", փխրեմ յուն. ψώχω "փշրել, մանրել" (Բուգգէ՝ IF I 457), հմմտ. հհնդկ. bábhasti "մանրէ, ջախջախէ", փափուկ յուն. ψαφαρός "փափուկ" (? Բուգգէ, Beiträge, էջ 21) եւ ծեփ սեռ. ծեփոյ՝

եթէ աղերս ունենայ յուն. γύψος (իբր *gvepso-. Բուգգէ՝ Beiträge, էջ 21. տարբեր կերպով γύψοςի մասին՝ Պ. Ենսէն IF Anz. XIV 49, արտաք-պարսիկ բառը՝ Prellwitzի քով, յունական ծագում ունի եւ ոչ թէ հակառակը): Չեմ գիտեր ստուգաբանօրէն կղզիացած բառ մը՝ որուն մէջ ps եղած ըլլայ ս: Ստուգիւ ոո—փ աղերս չունի (ինչպէս արդէն ի Թերթին KZ XXXVIII 199 ըսած եմ) ոչ ψυδρόςի եւ ոչ ψεύδομαιի հետ. վասն զի ψυδρός չի կրնար Uhlenbeckի "ընականապէս„ ընելով՝ բաժնուիլ հհնդկ. kṣudrá-sէ (IF V 61), նոյնպէս եւ ոո—փ դժուարաւ կրնայ բաժնուիլ բառերէս՝ հոլ. sujb "ունայն„ հհնդկ. çūnyá-s "դատարկ, ունայն„: Ուստի շրթնականաց արտասանութեան ամէն կերպերը նախահայերէնի մէջ՝ sի առջեւ ալ վերածուած են. այս ղ ձայնն ալ փ եղած է, բայց չէ բացուած. վերջապէս s ձայնը ֆէն ետքը՝ պարզ հադադային շնչոյ փոխուած է (ընդհակառակն շրթնական փակ բաղաձայնի մ՚առջեւ s չի կորսուիր, հմմտ. § 48. հոն՝ ուր փ ըստ երեւութին սկզբնաձայն sph-ի մը կը համապատասխանէ՝ ընդունելու է ծանօթ հնդեւր. փոխանակութիւնը՝ որ կայ s+բաղաձայնի եւ բաղաձայն առանց sի միջեւ): Բայց որովհետեւ մենք բաց ատի՝ § 14ին մէջ տեսանք թէ փակ բաղաձայններու արտասանութեան զանազան կերպերն ի մի միացած են tի առջեւ, ուստի այժմ ինծի անհաւանական կ՚երեւայ թէ հայ. ոեւէ կղզիացած բառի մը մէջ եղած փակ բաղաձայնի արտասանութեան այլեւայլ կերպերն իրարմէ բաժնուած ըլլան՝ sի առջեւ: Ի Թերթին KZ XXXVIII 209 ըստ Բադրուպանեանի Ձ--ըը կշռած էի հհնդկ. kṣarati "հոսէ„ բառին հետ: Այժմ կը վերադառնամ իմ սեպհական հնագոյն մեկնութեանս (զոր այն ատեն յանիրաւի անտես ըրած էի) եւ -ո-ը կը համարիմ իբրեւ վերջաւորութիւն հնդեւրոպական -ōr, զ. օր.

բառերուս մէջ՝ ուր յուն. ἄορ (§ 43), ուր յուն. ἦμαρ (§ 44), անուրջ ὄναρ, տես եւ յուն. ὕδωρ, νύκτωρ, յուն. σκῶρ, τέκμωρ, πέλωρ, ἐέλδωρ, ἕλωρ. Բրուգման իւր Տարերաց (Grundriss I 244 եւ հետեւ.) առաջին տպագրութեան մէջ -ωρ վերջաւորութիւնը -ջէ ծագած կը մեկնէր. եւ այս մեկնութիւնը տակաւին I² 477 յայտնապէս ուղիղ կը համարի. Թէպէտ այս դէպքը բացայայտ կերպով չի յիշեր, բայց դեռ կ'ընդունի թէ վերջատառ -ջ յերեւան կու գայ իբր -ωρ, որուն համար ուրիշ ապացոյց չունի։ Բայց հայերէնն այս ենթադրութեան կը հակառակի. միայն Joh. Schmidtի (Pluralbild 193 եւ հետեւ.) մեկնութիւնը հնարաւոր է. այսինքն թէ հնդեւր. -ōr վերջացող նախաւոր հաւաքական կազմութիւն մըն է։ Ջուր բառին արմատը կը թագնուի ջ տառին մէջ, յորում ես հնդեւր. dhi̯- մը կը տեսնեմ, հմմտ. հին հնդկ. dadhi "մածուն" (կրկնեալ), dhayati "ծծէ, խմէ"։ Նշանակութեան զարգացման համար վկայութեան կը կոչեմ հհնդկ. páyas "կաթ, ջուր" բառը։ Արդ՝ եթէ փակ բաղաձայններու արտասանութեան այլեւայլ կերպերը sի առջեւ իրարմէ չեն բաժնուիր՝ կրնայ սպասուիլ որ քմառագատական+s սուղադարանօրէն կրղզիացած բառերուն մէջ միշտ ղ տայ (չոր յուն. ξερός, ξηρός), իսկ քմական կամ ատամնական +s՝ միշտ ց (քաղց թերեւս աղերս ունի հին սկանդ. svelta "անօթենալ, քաղցնուլ" բառին հետ. չեմ համարձակիր զքաղցը բաժնել քաղց բառէն. այս բառին նախնական ձեւն է մերձաւորապէս *svl̥d-su-s մը՝ որ նախապէս կը նշանակէր "քաղցեալ, անօթի", բայց յետոյ, "ախորժակ գրգռող, քաղց" — հմմտ. հոլ. sytš "յագեալ, կուշտ" բառին հետ լիտ. sotus "յագեցընող"։ Քաղց ո- կամ ի-արմատ է, ուստի նախապէս անշուշտ s-արմատ մըն էր. Թեր-

եւս կրնայ ճիշդ ածականին ազդեցութեամբ մեկնուիլ թէ այս ամէնուն հակառակ ց մը ծագած է, թերեւս եւ այն ձեւերը՝ որոնց մէջ đ եւ s ձայնաւորով մ՚իրարմէ բաժնուած էին, կը հակազդէին եւ ծ ձայնի մը ծագման կը նպաստէին)։

§ 52. Տակաւին կը մնայ միայն այն խնդիրը՝ թէ արդեօք առաջին ատամնականին զանազան արտասանութեան կերպը կը նշմարուի՞ դեռ ատամնական +tի միացումներուն մէջ։ Այսպիսի ատամնական միացմանց վրայ նորերս գրեց Johansson, IF XIV 265—339։ Johannson այն տեսութիւնը կը յայտնէ թէ t+t, հնդեւր. tst, անցնելով -ts-է՝ արեւմտեան-հնդեւրոպական լեզուաց մէջ -ss- կ՚ըլլայ, յունարէն եւ satəm-լեզուաց* մէջ ընդհակառակն st։ Սակայն այս տեսութիւնը չի կրնար ուղիղ ըլլալ։ Նախ եւ առաջ չեմ կարծեր թէ -st- հնդկերէնի համար կարենայ ապացուցուիլ։ Եթէ այս խնդիրը հոս մանրամասն քննութեան առնունք՝ զմեզ շատ հեռուները կը տանի. որովհետեւ այն կէտը Յովհանսոնի հետազօտութեան գլխաւոր առարկան կը կացուցանէ։ Բայց յայտնապէս սխալ է Յովհանսոնի այն տեսութիւնը՝ ալբաներէնի մասին (էջ 267 եւ հետեւ.)։ Անօգուտ է անոր լուծումը սա բառերուն՝ bišt "ագի, պոչ" եւ glišt "մատ", սա յայտնի իրականութեան հանդէպ թէ pata "ունեցայ" ձեւին ընդ. անց. կրաւ.

* Satəm-լեզուք կը կոչուին այն արեւելեան-հնդեւրոպական լեզուները (հնդիկ-իրանական. հայերէն, ալբաներէն, սլաւ-բալտիկ), որոնց մէջ հնդեւրոպական k̑ առաւել կամ նուազ s-անման ձայներու փոխուած է. centum-լեզուք (կարդա՛ kentum-լեզուք) կ՚անուանուին այն արեւմտեան-հնդեւրոպական լեզուները (յունարէն, իտալ. կելտերէն, գերման), որոնց մէջ հնդեւր. k̑ յերեւան կ՚ելլէ իբրեւ k (որմէ ալ գերմաներէնի մէջ՝ h)։ Այս անունները յառաջ կու գան յաջորդ բառերէն՝ աւեստ. satəm, լատ. centum (կարդա՛ kentum) "հարիւր"։

pasε „ունեցուած“ կ'ըլլայ. նաեւ dh+t ալբաներէնի մէջ s տուած է (հմմտ. Հեղ. KZ XXXVI 308)։ Թէպէտեւ Յովհաննոն կրնար իւր կրկին բարբառոց-խմբերու միջեւ դրած սահմանն այնպէս մը գծելու աշխատիլ, որ այսու ազերաւ ալբաներէնը միանար արեւմտեան-հնդեւրոպականին հետ։ Բայց այն ատեն ալ պէտք էի զինքը ղրկել KZ XXXVI 340 թերթին, ուր պիտի տեսնէ թէ pas:ի մէջ գտնուող ալբանական s ձայնը չի մեկնուիր՝ իբր թէ նախալբանական tsէ մը ծագում առած ըլլայ (անկէ ğ ակիզբ առած կ'ըլլար, KZ XXXVI 290)։ Ընդհակառակն այս s կրնայ միայն ալբանական գետնի վրայ երկրորդաբար յառաջ եկած tsէ մը մեկնուիլ։ Նախալբաներէն կրնանք միայն մերձաւորապէս t*t ենթադրել։ Յովհաննոն (էջ 271) կ'ուզէ նաեւ հայերէնի համար ալ st ենթադրել։ Բայց այնպիսի st մը ցուցընել չկարենալուն պատճառաւ՝ կ'ընդունի թէ st կրնայ ծի շրջած ըլլալ։ Սակայն ասի բացարձակապէս անապացուցանելի կարծիք մըն է։ Ասոր համար զԲուգգէ վկայութեան կը կոչէ. բայց այս հանճարեղ գիտնականին՝ որուն ունեցած արդիւնքը հայերէն լեզուին քննութեան մէջ օրէ օր աւելի կը գնահատեմ, այնպիսի տառատեղափոխութեան մը համար իբր ապացոյց յառաջ բերած առաղձն, որչափ ուղիղ է, այլազգ մեկնելու է։ Բուգգէի ըրած համեմատութիւնը՝ ոչծանեմ բայն ոչխեմ ողոպոփ բառերուն հետ կցելու, արդէն վերը՝ § 50, գործածեցի։ Բայց ամենեւին չեմ կրնար ընդունիլ այն ձայնական օրէնքը՝ որուն համեմատ ծ յառաջ եկած ըլլայ stէ։ Յովհաննոնի ի մասնաւորի վկայութեան կոչած հոյծ բառը՝ յայտնապէս սխալ մեկնած է (հմմտ. վերը § 28)։ Յովհաննոն նաեւ էջ 330 հասոփ բառին մէջ կ'ուզէ հնդեւր. d+t մը գտնել. բայց ասով ձայնական օրինաց դէմ կը պակսի. հասոփ բառին ա ձայնաւորն ստուգիւ չի

կրնար e կամ o ձայնաւորէ մը մեկնուիլ։ Նաեւ Մէյէ երբեմն ընդունած էր թէ d+t հայերէնի մէջ -ստ կ'ըլլայ, երբ ի թերթին MSL VII 165 ըստ նախադրութիւնը կը կշռէր ՀՀնդկ. udi հետ (գոթ. ut, հին սկանդ. ūt, հրդ. ūz, յուն. ὕστερος ὕστατος), բայց ապէ՝ վերջաւորութիւնը համեմատելով ընդի վերջաւորութեան հետ, որ իբր թէ յուն. ἐντόςի կը համապատասխանէր։ Սակայն ընդի այս մեկնութիւնն ի թերթին MSL IX 155 ետ առաւ Մէյէ, եւ իր ըստի մեկնութիւնն ալ խախտուած է։ Յամենայն դէպս չի կրնար -tos վերջաւորութիւն մ'ընդունուիլ, որովհետեւ վերջաձայն -s չի կորսուիր, այլ + կ'ըլլայ։ Եւ ըստի նշանակութիւնն ալ բացարձակապէս չի համաձայնիր ՀՀնդկ. udi հետ կամ անոր համապատասխան բառերուն ուրիշ լեզուաճիւղերուն մէջ։ Ընդհակառակն այս բառը լաւ կերպով կը համաձայնի սլաւ. poi հետ։ Ըստի զանազան գործածութեանց յաջող նկարագրութիւն մը կայ Ջախջախեանի բառագրքին մէջ. ուսկից կը հետեւի թէ ըստ 1. նմանութիւն կամ համաձայնութիւն մը ցոյց կու տայ. ըստ առջինաց, ըստ ախ-ձ-ուն, ըստ իս, հմմտ. հոռ ռուս. по закону "ըստ օրինաց", по христiански "ըստ քրիստոնէի", по моему "ըստ իս". ապէ կը յառաջանայ պատճառական նշանակութիւն մը. ըստ նախահարցն յանցանաց, հմմտ. ռուս. по ненависти "յատելութենէ". 2. ըստ բաշխական նշանակութիւն մ'ունի. ոչխար ըստ երդ, ըստ կուրքի հմմտ. ռուս. по десяти верстъ въ часъ "10 վերստ ամէն ժամ", по порядку "ըստ կարգի, ըստ կանոնի". ապէ կ'ելլէ ճամբու համար շարժման մը նշանակութիւնը. անցանել ըստ սահմանս քո, հմմտ. ռուս. гулять по улицѣ "պողոտաները շրջագայիլ". հայերէն կ'ըսուէր նաեւ ելանել ըստ դուռն տանն, սկզբան անդ ըստ դուռն կը նշանակէր մարդու դացած ճամբան. բայց

վերջէն՝ "դանէն դուրս ելել„, ահա ասկէ է նաեւ ելանել ըստ փողոցն. Նմանապէս անցանել ըստ Յորդանան եւ ըստ հեռաւորդի նաեւ անցանել ըստ օրէնս Աստուծոյ։ Ուստի որոշ կապակցութիւններէն նոր նշանակութիւն մը կը հանուի նախադրութեան. ճամբու շարժման մը նշանակութիւնը յերեւան կելլէ նաեւ ասացուածիս մէջ՝ Բողոքանք ըստ հաստատութեան երկնից. 3. ըստ կը նշանակէ "ետքը, զկնի„. Բոլորովքն որք ըստ նմանէ էին, մի ըստ միոջէ, հմմտ. ռուս. по "ետքը, զհետ„, один по одному "մի ըստ միոջէ„։ Արդ՝ po հնդեւր. նախադրութեան վրայ տ-ով մ'աճած ելած է (լիտ. pàs), եւ անդրադոյն աճում մըն է լատ. poste, post. ես այս բառին հետ կը նոյնացընեմ հայ. ըստ նախադրութիւնը։ Ձայնապէս ասոր դէմ բան մըն ալ չի կրնար առարկուիլ. պէտք չկայ որ կորսուած (կամ ըի նուաղած) ձայնաւորը ճիշդ i կամ u եղած ըլլայ. որեւիցէ ձայնաւոր կրնայ բառասկզբան կորսուիլ (տ. § 64). ասիկա եւս աւելի կրնայ յառաջական կամ նախադաս նախադրութեան մը համար ընդունուիլ։ Բանաստեղծներուն քով փոխանակ ըստի գոյութիւն ունի նաեւ ստ (յաջորդող բառին հետ կցուած). այս պատճառաւ կարելի է թէ ստոր, որմէ՝ ստորին, ըստի հետ աղերս ունենայ եւ լատ. posterusի համապատասխանէ։ Ստոր բառին նկատմամբ ուրիշ ենթադրութիւն մ'ունի Բագրուպանեան IF XIV 59, որ ինծի նուազ հաւանական կ'երեւայ։ Ստ-որ (է ստոր) զուգընթաց է բառերուս հետ ն-էր, ի նէր "մէջ„, ի վէր (KZ XXXVIII 194). բաց ասկէ՝ ստոր կը նշանակէ նաեւ "յետ(ոյ)„։ Ո՛րդեօք խոր, խորին բառերուն ձայնաւորն ստոր բառին վրայ ազդեցութիւն մ'ունեցա՞ծ է. — չեմ վճռեր։

Ուստի ամենեւին կռուան չկայ ընդունելու թէ d+t կամ t+t հայերէնի մէջ իբրեւ ստ կը ներկայանայ. եւ ես պէտք եմ կանխաւ իբր հաւանա-

կանագոյն համարիլ թէ այս խմբերն աւելի ցի կը համապատասխանեն։ Հոց (է-արմատ) բառին ց տառը՝ ինչպէս Պատրուբանեան KZ XXXVII 428 կ՚ընդունի, թէպէտ կրնար skt ծագած ըլլալ. հմմտ. լատ. pascō. սակայն այժմ ինծի շատ հաւանական կ՚երեւայ թէ Հոց *pat-ti- ձեւ մը կը ներկայացընէ եւ աղերս ունի բառերուս հետ՝ յուն. πατέομαι "ուտեմ", գոթ. fodjan "սնանել", հին սկանդ. fóstr "սնունդ, կրթութիւն"։ d+t կամ dh+t ձեւերուն համար օրինակներ չեմ կրցած գտնել մինչեւ ցայժմ։ [Հեփտալովից BB XXIX 32 իբր օրինակներ հնդեւր. t(d)+t-է ծագած հայերէն ոփ խմբի մը՝ յառաջ կը բերէ խէոփ, նէոփ, լոոփ բառերը. այս օրինակները թէպէտ եւ նկատողութեան արժանի են, բայց շատ անապահով են]։

§ 53. Քանի մը դիպաց մէջ՝ ուր նախընթաց քննութեանց համաձայն՝ ց կը սպասուէր, յերեւան կու գայ Ջ. արՋ յուն. ἄρκτος, աւեստ. arəša-, օֆրեոՋէ+ (եզ. 1, 2, 3. օֆրեցէց, օֆրեոցեօ, օֆրեոցէ, յոգն. 1, 3 օֆրեոցո—+, օֆրեոցէն)։ Իմ մեկնութեանս համաձայն KZ XXXVIII 208 եւ 213 արՋ բառին մէջ կայ հնդեւր. k͡sį̑, ընդհակառակն ապառնւոյ մէջ sk̑՝ երկրորդական į̑ (հնդեւր. tէ ծագած) ձայնով մը։ Եթէ ապառնւոյ այս մեկնութիւնն ուղիղ է՝ այն ատեն պէտք չկայ ընդունելու թէ նաեւ հնդեւր. sk͡į̑ նոյն արդիւնքը տուած կ՚ըլլար, որ փակ բաղաձայններէն վերջը՝ հնդեւր. į̑ ձայնին այլուստ զարգացման հետ բացարձակապէս չէր համաձայներ։ Բայց թէ հնդեւր. k͡sį̑ (եւ անշուշտ նաեւ tsį̑) կրնայ Ջ տալ՝ ըստ իմիք հաւանելի է. į̑ այս բոլորովին առանձնայատուկ դրից մէջ ժ եղած պիտի ըլլայ. ցժ յետոյ Ջի պարզուած է։ Ուրիշ օրինակ մըն է աՋ սեռ. աՋոյ (կամ աՋի), որ յուն. ἄξιος բառին հետ միեւնոյն է (Ենսէն

IF. Anz. XIV 52 կը կարծէ սոյն բառը հատեան արձանագրութեանց մէջ գտած ըլլալ)։ Այս բառէն ածանցած են ողող, յողողել, յող-որդ եւ փող թերեւս *su̯-aksi̯o-s է (ընդհակառակն ողող բառն ասկէ բաժնել կ'ուզէի, հմմտ. § 32)։

§ 54. Նախընթացներուն մէջ միայն ժառանգեալ բաղաձայնից-խմբերուն վրայ ճառեցի, բայց շատ անգամ նաեւ անցողակի՝ երկրորդական ձայնաւորաց-խմբերուն վրայ ծանօթութիւն տուի։ Սակայն այստեղ կ'ուզէի անգամ մըն ալ շեշտել թէ երկրորդական բաղաձայնից-խմբերը, որոնք զանազան փոփոխութեանց եւ պարզմանց ենթակայ են, Հայերէնի մէջ գլխաւորաբար երկու կերպով յառաջ կու գան.

1. Ձայնաւորի կորուսմամբ. [illegible] եւ [illegible]՝ § 50, յորձան եւ յորդահոս՝ § 50, [illegible] եւ [illegible]՝ § 43. ցուցանեմ, սկզբնատառ ց ձայնով՝ ծագած ծէ, այս ալ յառաջ եկած t + st, հմմտ. յուն. δείχνυμι, տես KZ XXXVIII 410. քսան լատ. vīgintī. եւ պըռուղ, լատ. findō § 7. յիսուն, յուն. πεντήκοντα, կորուսմամբ ē ձայնաւորի մը՝ որ ի եղած էր, -նէ-ի (հմմտ. Հինգ) եւ -ս-ի միջեւ, կորստեամբ գի, եւ կորուսմամբ նի՝ սի առջեւ. դարձեալ [illegible] եւ [illegible], երկուքն ալ [illegible] բառով յօրինուած են. (այսպէս ըստ Հիւբշմանի՝ IF Anz. VIII 48. իսկ Mitteilungen des Seminars für orientalische Sprachen, II 2, 91 պարբերականէն կ'իմանամ թէ Ն. Մառ այս կարծեաց դէմ մաքառած է, սակայն այնպիսի փաստերով՝ զորոնք համոզիչ չեմ համարիր.) ս, ղ, շ, ժ ձայներուն մասին՝ որոնք ծագում առած են բաղաձայնի մ'առջեւի սկզբնափակ բաղաձայնէ մը, հմմտ. KZ XXXVIII 207 հետեւ. ու 225 եւ հետեւ., Մէյէ՝ Esquisse էջ 16, վերը § 46, իսկ [illegible] բառին նկատմամբ՝ § 47. թերեւս նաեւ աշուն սեռ. աշնան (այն վերջաւորու-

թեամբ՝ զոր ունի կոչուն սեռ. կոչնան) աղերս ունենայ «ճեմ բային հետ, հմմտ. լատ. auctumnus եւ augeō։ [Հմմտ. այժմ նաեւ Աճառեան ՀԱ 1905, էջ 346]։

2. Բաղադրութեամբ նախադրութեանց հետ. ընկեր բաղադրուած ընդ եւ կերել, հմմտ. գոթ. gahlaiba գաղղ. compagnon. ը-ննեմ, ը-նէն՝ փննեմ, փնէն ձեւերէ, ը-մբըէմ՝ ըմբըէմէ (նաեւ ըմբըէմ, կորուսմամբ ըի)։ Վերջին երկու շատ զարմանալի օրինակները ղ նախադրութեան ծագման խնդիրը կը յարուցանեն։ Ամէնէն յառաջ արտասանութեան գալով՝ հիմայ բաղաձայնի մ'առջեւ ըղ կ'արտաբերուի. բայց հնագոյն արտասանութիւնը՝ ըստ վկայութեան Զախջախեանի, ըղ էր. (թէ արտասանութեան նկատմամբ այսպիսի շփոթութիւն մը կրնայ ըլլալ, յառաջ կու գայ անկէ՝ որ երբեմն ինքնակաց նախադրութիւնն այս օրս այլեւս անգործածական է. սակայն ի նկատի ունենալով բարդութիւնները՝ կը տարակուսիմ թէ ամէն դիպաց մէջ իրապէս ըղ արտասանուած ըլլայ)։ Այս հնագոյն արտասանութիւնը աննպաստ չէ Մէյէի MSL IX 54 տուած ստուգաբանութեան (սլաւ. za) համար. բայց հանդերձ այսու՝ այս ստուգաբանութիւնը հազիւ թէ ուղիղ ըլլայ, վասն զի սլաւ. za նախադրութիւնն անշուշտ ժառանգեալ նախադրութիւն մը չէ, հապա Zupitzaի (Gulturale էջ 200 եւ հետեւ.) նշանակած կերպով յառաջ եկած։ Դարձեալ, ինչպէս Հիւբշման I 446 մտադիր կընէ, հայ. ղի եւ սլաւ. zaի միջեւ եղած նշանակութեան համաձայնութիւնները միայն վայրավատին են. ընդհանուր համընթացութիւն մը գոյութիւն չունի։ Ասոր հակառակն մէկ կողմանէ ղ, իսկ միւս կողմանէ ըստ, սլաւ. po, նախադրութեանց միջեւ զարմանալի զուգընթացութիւն մը կը տիրէ։ 1. ըստ կը նշանակէ՝ ինչպէս որ § 52ին մէջ տեսանք, ամէնէն յառաջ նմանութիւն

կամ համաձայնութիւն մը. միեւնոյն նշանակու-
թիւնն ունի ղ. «վանոան բերան ղ-երեխոա մեո
էմանէ» = ըսոփ կրկէն մոռցայ. ղ-այս սարէնակ կամ
ղ-սարքէնակ ղ-այս = ըսոփ այսմ սարէնակի. «ինչ-
պէս եօ» նշանակութիւն ունեցող ըսոփ էօ սաստ-
ցուածին հետ համանիշ է՝ որդէօ ղ-էօ կամ էքրէ-
ղ-էօ. (որդէօ եւ էքրէ = «ինչպէս»)։ Այս տեսա-
կէտէն առեալ՝ տան բաղդատականին յաջորդող
ղ մասյուն նախադրութիւնը կը մեկնուի. էմաոփնա-
գոյն տան ղ-նա։ Դարձեալ ղ՝ ինչպէս ըսոփ, պատ-
ճառը կը յայտնէ. ղ-մէ՞, ղ-է՞, ղարմանալ ղ-էմն։ Ես
կը կարծեմ թէ վերջապէս առարկային (սեռի
խնդրոյն) առջեւի ղն ալ հոս զետեղելու է. ծանօթ
է թէ ղ միայն որոշ առարկայի (հյց.) առջեւ կը
կենայ. ասոր համար շատ անգամ գոյականի
մը քով կեցածածականի մը, սեռականի կամ
նման որոշիչ բառի առջեւը կը դրուի, եւ այն
ատեն երբեմն միայն այս անդրադոյն որոշիչներու՝
բայց ոչ նաեւ գոյականին վրայ կ'աւելցուի. Ե-
եփոան նմա գէրո ղ-Եոայեայ մարգարէէ. անոցոտ
պտոաղ ղ-գեղէցէէ ծառոց. հոց ղ-մեր կէրէցոտ Ե-
հանդերձ ղ-մեր ղգեցցոտ. որ ղ-էնչ աոէցէ ջեղ տրաջէտ.
նաեւ փոտ ղ-էոայոերն էոյոէր Ե- ղ-ատփոաձոյն տա-
փոածոյ (ուր միայն առարկային որոշումը բա-
ցատրուած է, եւ ո՛չ թէ առարկան)։ Ես այս
դէպքերն ուղղակի սկզբնապատճառ կը համարիմ,
ուստի սկիզբն եղած է ղ որոշեալ առարկային
(հյց.) համար առհասարակ գործածելու։ Բայց
հոս ղ կրնայ նախապէս ըսոփ նշանակութիւնն
ունեցած ըլլալ. եւ յաջորդող գոյականին սեռա-
կանը կամ ածականին հայցականը՝ խնդիր առած.
հմմտ. Եփ էորոտանչէոր ըսոփ էորոամ կորէ կամ
հափոացէ էորոտանչէոր ըսոփ գործօ էոր։ Բայց վերջէն
այնպէս ըմբռնուած է, իբր թէ սեռականը յա-
ռաջընթաց գոյականին (փոխանակ ղի) իբրեւ
խնդիրն ըլլայ, իսկ ածականն իբրեւ վերադիր՝

գոյականին։ Այս պատճառաւ նախադրութիւնն առարկային առջեւ ալ սկսուեցաւ կրկնուիլ (օրինակները տե՛ս Ջախջախեանի քով, էջ 487ա.) եւ վերջապէս նաեւ անորոշեալ առարկային քով ալ գործածուեցաւ։ Մասուգաբանական ձեւի այս դէպքերը՝ զ. օր. ածել ղ-ածոամ, երնչիլ ղ-երչի-ղ, թերեւս այս զարգացմանէն անկախ են, եւ ուղղակի ղի նախադրական նշանակութենէն յառաջ եկած։ [Հուխսարդարին WZKM XIX 217 յառաջ բերած մեկնութիւնը ինծի անհաւանական է]։ 2. ըստ բաշխական նշանակութիւն մ'ունի, կը նշանակէ շարժման մը ճամբան եւն։ Նոյնպէս եւ ղ շարժման մը ճամբան կը նշանակէ. գնացին ղ-ճանապարհ անապարհն. անցանել բային քով ինչպէս ըստ՝ նոյնպէս ալ ղ կը գործածուի — անցանել ղ-Ցորդանան. նաեւ գործիականին հետ՝ ածել ղ-քոցով։ Այս տեղւոյ կը վերաբերի դարձեալ ժամանակախօսութեանց (ժամանակի որոշմանց) շարք մը — ղ-մինոյն ատուրս երկրէ մի դադարեսցէ. նաեւ գործիականով՝ ղ-հասարակ ատուրբ. նոյնպէս գործիականով՝ որ “շուրջ„ տեղական նշանակութիւն ունի, եւ ընդարձակագոյն զարգացմամբ՝ որք ղ-նովաւն էին, ղ-հի-ախով երթալ (հմմտ. ըստ հի-ախոյ երասխոյ)։ Ճամբու շարժման նշանակութենէն դարձեալ յառաջ եկած են ասացուածներս՝ հարկանել ղ-ոտն ղ-փարբ, հարկանել ղ-մանկանս փս ղ-փարբ. հմմտ. ռուս. задѣть ногою за порогъ “հարկանել ղոտն զսեմոց„ (փոխաբերութեամբ՝ ղ-ահն հարկանէմ), կախել կայր ղ-ծառոյն։ 3. ըստ կը նշանակէ նաեւ “յետ(ոյ), զհետ.„ նոյնպէս եւ ղ. — հետ ղ-հետե (հետք), հմմտ. մի ըստ միոջէ. նաեւ ապա ղ-ապայն (հմմտ. Ջախջախեան էջ 488բ). ամ ղ-ամի չինէ = ամ ըստ ամէ. ղ-այգոյ (այգ)։ Անշուշտ “յետոյ„ նշանակութենէն յառաջ կու գան այն ամէն գործածութիւնները՝ որոնց մէջ ղ բացառական խնդիր

կ'առնու — կուլայ ղուզեյ յերանէ նորա. (սլաւ. *za*), աստեղեց ու էս ղոտարերաց էմոց, չդէյէ+ ղզճուա-ղանայ, երբուլ յ-Ոկէէր ղոոկայ (ռուս. *идти по дрова* "փայտի երթալ„. Նման գործածութեամբ կայ սակայն նաեւ *za*)։ Բացառականով՝ ղ կը նշանակէ դարձեալ "վրայ, նկատմամբ„. (ի մէջ այլոց այն բայերուն քով՝ որոնք "խօսիլ„ կը նշա-նակեն)։

Այս պարագայից մէջ ինծի տարակոյս չի մնար թէ ղ միեւնոյն է ըստի հետ. սակէ կը մեկնուի նաեւ այն պարագան՝ որ ըստ գրեթէ ամենեւին բայերու հետ բաղադրուած չի գտնուիր։ Նախաւոր նշանակութիւնը ղ, ըստ *posti նախա-դրութեան՝ եղած պիտի ըլլայ "ետքը, յետոյ„. վասն զի սլաւ. *za* նման հիմնական նշանակութիւն մ'ունի, երբեմն ղ, ըստ նախադրութեանց հետ կը համաձայնի։ Ըստ բաղաձայնի մ'առջեւ իւր տ գիրը կորսնցուցած է. ուստի երգաձայնազուրկ բաղա-ձայնի մ'առջեւ պէտք է ս ըլլալ, իսկ երգաձայնա-կան անձայնեղ բաղաձայնի մ'առջեւ՝ ղ։ Երգա-ձայնական ձեւն անյայտ պատճառներով ընդ-հանրացաւ, մտաւ նաեւ ձայնաւորներու առջեւ, եւ այսպիսի ձեւերու մէջ ալ՝ զ. օր. ղննեմ՝ քննեմի քով (հմմտ. Մերձաւորապէս լեհ. *od* եւ *z*, հսլ. *otъ, sъ*)։ Միայն երգաձայնազուրկ ձայներուն առ-ջեւ. անկորուստ մնաց երգաձայնազուրկ ս ձեւը։ Թերեւս նաեւ ղ երբեմն միացած է այնպիսի ձեւերու հետ՝ որոնք արդէն յ նախադրութիւնն ընդունած էին։ Ես դեռ միշտ այն մտքին վրայ եմ թէ ժողովէմ անծանցած է յոլովէ, թէպէտ եւ ղ / լի տարբերութիւնը դժուարութիւն կը յարու-ցանէ։ Կ'ուզէի նաեւ ժամանեմ, ժամանակ մեկնել ղ + է + ամէ "տարի, ժամանակ„ (յամեմ եւ ժա-մանակ բառերուն միայն արմատը միեւնոյն է. բո-լորովին ապահով ըլլալու է թէ ժամանակ պարս-կերէն չէ, հմմտ. Հիւբշման, I. 156)։

§ 55. Այն բազմաթիւ բառերը՝ որոնք ղ-ով բարդուած են, հայերէնի բառակազմական դիւրքին համար (ուր այլուստ բնիկ բառերուն մէջ հազիւ թէ ղ մը գտնուի) մեծ նշանակութիւն ունին (Համմտ. զ. օր. ղ-ենոամ՝ § 47, ղ-եղոամ եւ Հեղոամ՝ § 17 եւն)։ Նման կերպով է նախադրութիւնը յառաջ բերած է նախատառ յ- մը (յ-ատք, յ-ամեմ § 43, յ-ոլով, յ-ոգն, յ-աճախ, յ-աւրայ, յ-իստան, յ-եպ § 26. յ-ապաղ (զ-աստեալ), այս բառը նշանակութեան զարգացման կողմանէ կը համեմատի լատ. prīvus, prīvātus բառերուն հետ, եւ աղերս ունի հոգանեմ, ղ-ոգանեմ բայերուն հետ. յ-արեմ, յ-ար կապակցութիւն ունին առնեմի հետ, յուն. ἀραρίσκω եւ գործ չունին նպ. yār "բարեկամ" բառին հետ). Այս յ-ին հետ համանիշ է ն-, յաջորդ բառերուս մէջ՝ ն-եցուկ եւ յ-ենում, ն-այիմ եւ հայիմ, ն-իւթ եւ հիւթ [Համմտ. արդէն Մէյէ MSL XI 396]։ Յիշեալ վերջին բառիս հնագոյն նշանակութիւնն է անշուշտ "խոնաւութիւն", համմտ. հիւթեղ։ Ով որ Օստհոֆի հետ, PBrB XVIII 247, հին գերմ. *fūht* կը մեկնէ թէ **pi̯ūqᵘtu-*է ծագած ըլլալով՝ աղերս ունենայ բառերուս հետ՝ յուն. ὑγρός լատ. *ūdus*, այն ատեն կրնայ նաեւ հիւթ (ու կամ է-արմատ) բառը **pi̯ūqᵘto-*է կամ **pi̯ūqᵘti-*է մեկնել. (այն ատեն հրաժարելու է այն ենթադրութենէն՝ թէ գերմ. *feucht* կապ ունենայ հհնդկ. *paŋka-* "տիղմ" բառին հետ, Lidén Språkvetensk. sällsk. i Upsala förhandlingar 1891—94 էջ 60)։ Նի-թեմ "մանել, հիւսել" կը բաժնեմ ես հի-թ եւ նի-թ բառերէն. այստեղ թ կը մեկնեմ *-pt-*է ծագած եւ կը համեմատեմ հիւսեմ, հիւսումի հետ (§ 50)։ Բայց նաեւ նի-թեմի մէջ ալ ն- նախադրութիւն մը մնացած է։ Նոյնպէս նախ կրնար առոյեան բառին հետ կապ ունենալ։ ն նախադրութիւնն անշուշտ է նախադրութեան հետ միեւնոյն է, եւ երկուքն ալ հնդեւր.

*enē ծագում առած են. այն ատեն ն- միայն ձայնաւորներուն առջեւ կրնար իրաւապէս գտնուիլ։ Առոր հետ աքանչելապէս կը համաձայնի այն՝ թէ նաեւ խնդիր առնող ն նախադրութիւն մ'ալ կայ, որ սակայն միայն ձայնաւորով սկսող բառի մ'առջեւ կը կենայ. (այս նախադրութիւնը մեծաւ մասամբ հին հայկական յիշատակարաններէն դուրս վտարուած է). հմմտ. այս նկատմամբ Կարստ՝ Hist. Gramm. էջ 409։ Ուստի *ni մը չի կրնար ընդունուիլ, իսկ նախաքաղաձայն սկզբնատառ n մը (արտասանուած նը) ստուգիւ չի կրնար իբրեւ բնիկ-հայկական նախադրութիւն ճանչցուիլ։ Ընդհակառակն կրնար ի յառաջագունէ սպասուիլ որ քաղադրութեանց մէջ նախաւոր նախաքաղաձայն i- մը գտնուէր. բայց թէ իրապէս գոյութիւն ունի ասի՝ տարակուսական է. (չմանամ բային մասին հմմտ. KZ XXXVIII 350). այսպիսի նախադաս մասնիկ մը կենդանի չէ մնացած. (կենդանի է միայն յ-)։

Ինչ աղերս որ ունին ի եւ ն՝ ներքի հետ, նոյն յարաբերութիւնն ունի վ՝ ի վէրի հետ։ վ- նախադաս մասնիկ մը յերեւան կու գայ բառերուս մէջ՝ վ-ոքեմ, KZ XXXVIII 195, եւ վ-էղ (KZ XXXVI 340, XXXVIII 225)։ Վէղ աղերս ունի պրուշ. *winsus* “վիզ” բառին հետ։ Բայց սակայն սլաւական փոխառեալ բառ մըն է, ինչպէս կ'ընդունի Mikkola, Finska vetenskaps-societetens förhandlingar XLV թ. 4, էջ 13. չ. *vaz* “ծոծրակ”. *vaz* յարաբերութիւն ունի հսլ. *vęzati* “կապել” բառին հետ, որուն ս տառն յառաջադիր է (ձայնաւորաց բախման առթիւ մուծուած)։ Ըստ այսմ վ հայերէնի մէջ կրնայ միայն նախադրութիւն մ'ըլլալ։ Այս տեղւոյս կը վերաբերին նաեւ յուն. αὐχήν ἄμφην եւ գոթ. *hals-agga*. Ուստի յուն. φ պէտք է որ *gh*+սէ յառաջ եկած ըլլայ [ինչպէս որ արդէն Zupitza Gutturale էջ 100 ընդ-

ունած է]. կ'երեւայ թէ αὐχήν բառին մէջ պէտք է միջամխութիւն եւ ηի կորուստ ընդունիլ՝ γի եւ χի միջեւ։ Վորջանիմ, վորջ չի կրնար բաժնուիլ բառերէս՝ հորջանեմ, հորջանիմ, հորջ եւ որջանեմ։ Շատ անապահով է վայելում բայը կապել հոյիմ, նոյիմ բառերուն հետ. սակայն հոյիմ ունի այլեւայլ փոխաբերական կիրառութիւններ, որոնք դէպ ի վայելումի նշանակութիւնը տանելու կամուրջը կրնային կազմել։

Նմանապէս քանի մը դիպաց մէջ հ- ալ նախադրութիւն մ'ըլլալու է. այսպէս՝ յաջորդներուս մէջ՝ հեծանիմ, հասանեմ, հայցեմ եւ այցեմ, հագանիմ = ագանիմ։ Այն ատեն այս հ-ն պէտք է մեկնել ծագած *p-է որ ձայնաւորաց առջեւ գտնուող ձեւ էր *pi-ի։ Ըստ երեւութին հէ-ը եւ նէ-ըեմ (տ. էջ 162) բառերով կը հաստատուի թէ *pi նախադրութիւն մ'իրօք գոյութիւն ունեցած է հայերէն լեզուին մէջ։ Արդէն վերը (§ 36) ենթադրած էի թէ *p-ի քով կրնայ երբեմն *pį մըն ալ գոյութիւն ունեցած ըլլալ։ Սակայն եւ այնպէս հ- հաւանական նախադրութեան մասին վճիռ մը բերելը շատ դժուար եւ անապահով է, անով որ փոխանակութիւնն՝ հ+ձայնաւոր = ձայնաւոր, յաճախ նաեւ ձայնական ճամբով ի գլուխ ելած է (այսինքն՝ երբ բառասկզբի հ մ'ինչ ինչ նախադասութեան պայմաններու մէջ կորսուած է)։

Յայտնի է թէ հնդեւր. *epi (*pi ձեւին լիակատար ձեւը) հայերէնի մէջ իբր շաղկապ (եւ-), այսինքն՝ նախնաբար իբրեւ մակբայ կը ցուցուի։ Իբրեւ յետադրութիւն (-է ձեւով) մնացած է *etì (KZ XXXVIII 224). բացառական նշանակութիւնը կը համաձայնի հոլ. բառիս հետ՝ otъ, որուն քով tъ- ալ (KZ XXXVIII 421) կայ. այս պատճառաւ Մէյէ (Etudes sur l'étymologie et le vocabulaire du vieux slave էջ 155) շատ ուղիղ կը կշռէ յուն. ἔτι եւն բառերուն հետ։ Ընդի մասին՝ տես § 18,

-ու (= յուն. παρά?) նախադրութեան նկատմամբ՝ տ. § 32։

§ 56. Շատ անգամ ըսուած է թէ Հայերէնի ձայնական դրութիւնը կովկասեան լեզուներէն ազդուած է։ Եւ այս կարծիքը բնականաբար ապագային ալ ստէպ պիտի կրկնուի, մինչեւ որ այս կարծիքը կրկնողներուն մէկուն միտքն իյնայ՝ կովկասեան լեզուաց վրայ հայեցուածք մ'արձակելու։ Ով որ այս բանը կ'ընէ՝ անմիջապէս պիտի համոզուի թէ նախ եւ առաջ բոլորովին դիւրին չէ սահմանել թէ յո՞րում կը կայանայ ըստ ինքեան ընդհանուր կովկասեան ձայնական դրոշմը, վասն զի զանազան բարբառները շատ կը շեղին իրարմէ եւ երկրորդ՝ թէ կովկասեան լեզուաց աչքի զարնող ամէն ձայնական երեւոյթները Հայերէնի մէջ կը պակսին, չեն գտնուիր։ Նախընթացներուն մէջ տեսանք թէ Հայերէնի ձայնական դրութեան փոփոխութիւնն իբրեւ հիմ ունի այնպիսի երեւոյթներ՝ որոնք մեզի քաջածանօթ են միւս ամէն հնդեւրոպական լեզուներէն։ s ձայնին հի անցման կը հանդիպինք յոյն եւ իրանական լեզուաց մէջ. հնդեւր. քմականներուն զարգացումը ձայնաբնախօսօրէն գրեթէ բնական է եւ կը համաձայնի միւս արեւելեան հնդեւրոպական լեզուաց հետ. նոյնպէս քմառագատականաց քմականացումը. փակ բաղաձայններու եռապատիկ արտասանութեան կերպը նախալեզուէն ժառանգուած էր. ձայնաշրջութիւնն իւր սկզբնական շրջանին մէջ (նուրբը կ'ըլլայ նուրբ-թաւ, միջակը կ'ըլլայ ղուտ նուրբ) բոլորովին զուգընթաց է գերմանական ձայնաշրջութեան հետ, եւ այս զուգընթացութիւնն անշուշտ պատահական չէ, այլ ձայնաշրջութեան ատաղձ անշուշտ արդէն նախահնդեւր. արտասանութեան կերպերուն դրութեան մէջ ծածկուած էր. գոնէ այս շրջման առաջին գործողութեամբը առեղծուեցաւ դրութիւն մը՝ որ հին յունական ու

նախիտալական փակ բաղաձայններու դրութեան հետ չափազանց նման էր։ Եթէ շրջման առաջին գործողութենէն ետքը՝ գոյութիւն ունեցող նուրբ-թաւերը շատ անգամ բաց բաղաձայններ եղան ապագային, ասիկա ալ կը համաձայնի դարձեալ գերմաներէնի, նոր յունարէնի եւ իտալերէնի զարգացման հետ։ Եւ այն՝ որ k̂ եւ ք միւս հնդեւր. նուրբ-թաւերէն աւելի արագ ու կատարեալ կերպով բաց բաղաձայն եղաւ, կը հիմնուի յայտնապէս այնպիսի բնախօսական պատճառներու վրայ, որոնք ամենուրեք կը հանդիպին. k̂, ծանօթ է, նաեւ արիական ու բալտիկ-սլաւ (եւ ալբաներէն) լեզուաց մէջ բաց ձայն եղած է (ի մասնաւորի հրահանգիչ է հին հնդկերէնը, ուր հնդեւր. ĝ փակ բաղաձայն մնացած է. առանց զօրեղ պատճառի կ'ընդունուի թէ ĝ նախ եւ առաջ եղած ըլլայ ǰ, այս ալ դարձեալ ǰ). իսկ ք նաեւ կելտերէնի մէջ բացուած է, նոյնպէս օսետերէնի մէջ (ուր սակայն այս դիպուածն աւելի կրտսեր ըլլալու է՝ քան թէ հայերէնի մէջ) եւ — օտար լեզու մըն ալ յառաջ բերելու համար — արաբերէնի մէջ։ Բաղաձայնխմբերուն պարզումն երկրիս ամէն լեզուաց մէջ ազդող ձգտումէ մը կը ծագի, եւ զ. օր. սլաւերէնի մէջ ալ նոյն հետեւողութեամբ ի գլուխ ելած է (անշուշտ նման՝ նաեւ թրքերէնի մէջ, եւն)։ Պարզման ճամբան իր առաջին շրջանին մէջ (§ 11) կը յիշեցընէ իրանական ձայնական օրէնքները։ r-խմբերուն տառատեղափոխութիւնը կը գտնուի նաեւ օսետերէնի մէջ (*furtʿ* "որդի" աւեստ. *puθra-*) եւ կովկասեան լեզուաց մէջ (աւար. *gabur* "վիզ" յոգն. *garb-al*), բայց նաեւ օտար աշխարհներու եւ նոր պարսկերէնի մէջ ալ. յամենայն դէպս բոլորովին անապացուցանելի է թէ հայերէն լեզուն՝ այս կէտիս մէջ, կովկասեան լեզուներէն ազդեցութիւն կրած ըլլայ. վասն զի նոյն իսկ հակառակն ալ նոյնչափ հաւանական է։ Վերջապէս ոփ, ոչ,

ող եւն ձեւերուն առջեւի ը ձայնաւորի մը յաւելումը զուգընթաց է իտալերէնի եւ գաղղիերէնի հետ։ Բաղաձայն-խմբերուն պարզման յաջորդեց (ու եւ ի ձայնաւորներուն կորուստէն վերջը) բաղաձայններու հոծ կուտակում մը (որուն արդիւնք եղան նոր պարզումներ) ճիշդ այնպէս՝ ինչպէս եղած է սլաւերէնի մէջ։ Հայերէնի ձայնաւորաց նուաղումները կը հիմնուին ընդհանուր բնախօսական օրինաց վրայ, եւ վճռական կերպով զուգընթաց են մասամբ սլաւերէնի եւ կըմրերէնի, եւ մասամբ լատիներէնի (KZ XXXIX 235 եւ հետեւ.)։ Այս պատճառաւ տարօրինակ դիւրահաւատ մարդ մ'ըլլալու է, որ հայերէնի ձայնական զարգացման մէջ օտար ազդեցութեան հետքեր գտնել կարծէ։ Միայն թէ զարգացման արագութիւնը կրնայ ազգին փոթորկալից պատմութեան յայտանիշ ըլլալ, բայց նաեւ այս տեսակէտը պէտք չէ չափազանցել. վասն զի հայերէնը շատ բազմաթիւ դիպաց մէջ ապշեցուցիչ հնութիւն մ'ունի։ — Նաեւ պարսկերէնէ փոխառեալ բառերն ալ հայ. լեզուին մէջ ներմուծած չեն ձայն մը՝ որ բնիկ հայերէն բառերուն մէջ չգտնուէր. եւ սակայն ձայնական դրութեան վրայ աւելի դիւրութեամբ կարելի էր պարսկական՝ քան թէ կովկասեան ազդեցութիւն մ'ընդունիլ։

§ 57. Բայց ձայնադիտութիւնը կրնայ մեծապէս նպաստել լեզուին տեղը՝ հնդեւր. լեզուաց շրջանին մէջ որոշելու համար։ Հոս ակներեւ է թէ հայերէնը satəm-լեզու մըն է. սակայն satəm-լեզուաց մէջ ալ բոլորովին եզական դիրք մը կը դրաւէ եւ առով ցոյց կու տայ թէ satəm-լեզուաց եւ centum-լեզուաց միջեւ եղած վիհն այնչափ խոր չէ, որչափ յաճախ ընդունուիլ կ'ուզուի. Տեսանք § 29ին մէջ թէ քմառագատականներն uէ յառաջ եւ վերջը քմականներու փոխուած են։ Ասիկա չի կրնար այն կերպով եղած ըլլալ որ ku,

սk եղած ըլլայ ճս, սճ. վասն զի սա անըմբռնելի կ'ըլլար այնպէս՝ ինչպէս եթէ ku, սk անցնէր տս, ստի։ Պէտք ենք աւելի հնագոյն աստիճան մը փնտռել՝ ետ երթալով։

Լեզուի յետսակողմամբ հնչուող բաղաձայններուն հնդեւր. երեք կարգը՝ ինչպէս ի Թերթին KZ XXXVI 306 ապացուցած եմ, ալբաներէնի մէջ միայն յայտնապէս իրարմէ անջատ մնացած է։

Շրթնականացում չունեցող երկու կարգերն արեւմտեան-հնդեւրոպականին մէջ իրարու հետ միացած են։ Ուշ-քմական կրկին կարգերն ալ արեւելեան-հնդեւրոպականին մէջ ի մի ձուլուած են։ Սակայն ի յառաջագունէ կարելի չէ գիտնալ թէ արդեօք $q^u$ եղա՞ծ է $q$, թէ ընդհակառակն $q$ եղած է $q^u$։ Ես՝ ի Թերթին KZ XXXVI 85, վերջին ենթադրութիւնը կարեւոր նկատեցի արիական լեզուին համար։ Այս ենթադրութիւնը նաեւ հայերէնի համար ալ ձեռնտու է։ Ուստի հայերէնին եւ արիականին համար երկու կարգ դնելու է, $q^u$-կարգ մ'եւ k̑-կարգ մը։ Արդ՝ հայերէնի մէջ սէ յառաջ եւ ետքն աննմանաձայնութիւն մը մտաւ, որով $q^u$-ի շրթնականացումը կորսուեցաւ։ Բայց որովհետեւ լեզուին մէջ այլուստ մաքուր k մը գոյութիւն չունէր՝ նաեւ հոս սպասուած մաքուր kն եղաւ k̑։ Վերը (§ 6) խօսեցայ այսպիսի նմանութեանց մասին, ուր ցանցառ հանդիպող ձայներն ստէպ հանդիպող ձայներուն նմանած են։ Սակայն յառաջ բերուածներէն պայծառ կը տեսնուի որ k̑ տակաւին այն ժամանակը՝ երբ հայերէնի ինքնուրոյն զարգացումն սկսած էր, իրական (քմական) k մըն էր։ Ուստի գաւառաբարբառական այն ալիքը՝ որ satəm-լեզուները բաժնեց centum-լեզուներէն, հնդեւր. լեզուի հնագոյնը՝ անջատումը չի ներկայանար։ Գաւառաբարբառական այս ալիքէն յառաջ եւ նոյն իսկ վերջին եղող ժամանակներուն մէջ ալ կրնային շատ

դիւրութեամբ արեւելեան եւ արեւմտեան լեզուի մը միջեւ անձուկ աղերսներ տեղի ունեցած ըլլալ եւ հասարակաց զարգացումները յառաջ բերած։ Եւ չեմ ուզեր թաքցընել համոզումս թէ արդէն կանխաւ ապահովուած ստուգաբանական ատաղձն եւ միանգամայն այս ուսումնասիրութեանս մէջ ձեռք բերուած արդեանց կշռադատութիւնը զիս այն կարծեաց կը տանի թէ հայերէն լեզուն հնդեւր. ուրիշ որեւէ լեզուի այնչափ մերձաւոր չէ՝ որչափ յունարէնի։

## Բ.

## ՀԱՅԵՐԷՆԷ ՓՈԽԱՌԵԱԼ ԲԱՌԵՐ ԹՐՔԵՐԷՆԻ ՄԷՋ

§ 59[1]. Թրքերէն այն բառերը՝ որոնք Հայերէնէ փոխ առնուած են, այնպիսի հին ժամանակէ են՝ որ Թրքերէնի նախապատմութիւնը չի կրնար մեզի անտարբեր ըլլալ։ Այլեւայլ Թրքական լեզուաց համեմատութեամբ կրնանք կազմել նախա-Թրքերէնի ձեւերը, որոնք սովորաբար Օրխոնեան արձանագրութեանց ձեւերուն հետ միեւնոյն են։ Բայց Հայկական փոխառեալ բառերը 1200 տարիէն աւելի հնագոյն են՝ քան Օրխոնեան արձանագրութիւնները։ Ամենայն իրաւամբ կ'ընդունուի թէ մոնղոլերէն ու մանջուերէն լեզուները Թրքերէնի ամէնէն մերձաւոր խնամիները համարուելու են։ Սակայն այս ծանօթութեամբն առժամս շատ բան ձեռք բերած չենք ըլլար։ Վասն զի այս երեք լեզուաճիւղերու ձայնական դրութեան երկակողմանի աղերսը տակաւին բացարձակապէս անորոշ է։ Երկակողմանի չմիաբանութիւնը շատ աւելի մեծ է՝ քան թէ զանազան հնդեւր. լեզուաճիւղերու միջեւ եղած տարբերութիւնը, եւ ընդհանրապէս դեռ հազիւ ձեռնարկուած է այս դժուար ճիւղին լեզուագիտական ուսումնասիրութեան։ Այս պատճառաւ՝ նախախնամի եւ փոխառեալ

---

[1] Խորագնին ուսումնասիրութեանս արտաքոյ կարգի հետաքրքրական Բ. մասին առաջին համարին (§ 58) թարգմանութիւնը զանց կ'առնունք, վասն զի անոր մէջ յուզուած օտար լեզուաց տառադարձութեան խնդիրը Հայոցս համար այնչափ կարեւոր չէ։

բառերուն միջեւ որոշ բաժանում մ՚ընել տակաւին կարելի չէ։ Նաեւ մանական լեզուաճիւղերուն մէջ ալ այլեւայլ գլխաւոր առեղծուածներ դեռ չեն լուծուած։ Թէպէտ արդէն կարելի է ըստ բաւականին պայծառ գաղափար մը կազմել այն երկակողմանի աղերսին վրայ՝ որ կայ այլեւայլ Թուրք լեզուաց մէջ։ Բայց արդէն մոնղոլերէնի համար նոյնչափ չէ մեր գիտցածը. սակայն կարելի է բաւականաչափ վստահութեամբ ըսել որ թէ՛ կալմիւքերէնը, եւ թէ՛ ի մասնաւորի բուրեաթերէնը հնութեան կողմանէ շատ աւելի կրտսեր են՝ քան գրաւոր մոնղոլերէնը. այնպէս որ մանրամասնութիւնները նկատողութեան չառնողը յամենայն դէպս ինք զինքը մեծ՝ վտանգի մը չ՚ենթարկեր, եթէ Թրքերէնի հետ լոկ գրաւոր մոնղոլերէն ձեւերը համեմատութեան առնու։ Սակայն մանչուերէնի մէջ շատ աւելի մեծ դժուարութեանց կը բախինք, վասն զի այնպէս մը կ՚երեւայ թէ տունգուզերէն գաւառաբարբառները շատ անգամ հնագոյն ձայնական ձեւեր պահած ըլլան քան թէ մանչուերէն գրաւոր լեզուն։ Այսու հանդերձ առ ժամս կը կարծեմ թէ գրաւոր լեզուն աւելի հին է վերջաձայնի կերպաւորութեան եւ ձեւական դրութեան գլխաւոր գծերուն կողմանէ՝ քան թէ տունգուզերէնի գաւառականները։ Այս ենթադրութեամբ կը հաւանիմ այն տեսութեան զոր այս ճիւղին այլեւայլ մասնագէտներն արդէն արտայայտած են, այսինքն թէ Թրքերէնը կորսնցուցած է շատ մը վերջատառ ձայնաւորներ, որոնք մոնղոլերէնի եւ մանչուերէնի մէջ անկորուստ մնացած են. եւ նոյն իսկ կը կարծեմ թէ հոս ըստ բաւականի պայծառ ձայնական օրէնք մը կայ. (մինչդեռ այլուստ գրեթէ ոչինչ գիտենք Թուրք-մոնղոլ-մանչուերէն ձայնական օրինաց մասին)։ Այս ձայնական օրինաց օրինակները տուած ժամանակս՝ կրնայի միայն Թրքերէնի եւ մոն-

գոլերէնի համեմատութեամբ շատանալ. բայց լիապէս համոզուած ըլլալով թէ հոս մեր կոխած հողը բոլորովին անապահով է, մանջուերէն քանի մը ձեւեր ալ յառաջ կը բերեմ: Այն սխալները՝ զորոնք ժամանակաւ կրնան ապացուցուիլ թէ հոս գործած ըլլամ, հազիւ թէ այս ձայնական օրէնքը փոփոխութեան ենթարկեն:

Կ'երեւայ թէ բովանդակ լեզուաբնին նախաւոր վերջաձայնը՝ ըստ կանոնի, կամ ձայնաւոր մըն էր եւ կամ -n մը: Բայց այս -n վերջաձայնը փոփոխական ըլլալու յատկութիւնն ունէր: Յաճախ կը պակսի մոնղոլերէնի մէջ վերջատառ -n մը, ի մանաւորի հայցականին մէջ: Այսպիսով morin "ձի" բառին քով կը գտնուի mori. -d յոգնակի վերջաւորութեան եւ այլեւայլ ածանցման վանկերու առջեւ կը պակսի -n վերջաւորութիւնը. morid "ձիեր" (հմմտ: I. J. Schmidt, Mongolische Grammatik § 48 եւ 41, 2): Բոլորովին նման է մանջուերէնի մէջ ալ. sargan "կին" յոգն. sargata. նման է դարձեալ թրքերէնի մէջ, ուր Օրխոնեան արձանագրութեանց մէջ՝ tarkan տիտղոսին յոգնակին կ'ըլլայ tarkat (ինծի անհաւանական է թէ այս բառն եւ իւր յոգնակի կազմութիւնը պարզապէս մոնղոլերէնէ փոխ առնուած ըլլայ. աւելի կ'ուզէի կարծել թէ մոնղ. darxan "ազնուականութեան բարձրացող մը" թրքերէնէ փոխ առնուած ըլլայ):

Այս նախաւոր վերջաձայնին անդրադարձն զարգացման համար՝ այն կանոնը կ'արժէ թրքերէնի մէջ թէ վերջատառ ձայնաւոր մը սովորաբար կ'իյնայ. վերջաձայն -n մ'ընդհակառակն անկորուստ կը մնայ. մոնղ. մանջ. aba "որս" թրք. (օսմաներէն) av. մոնղոլերէն ere "այր, մարդ" թրք. är. մանջուերէն alifi "առած ըլլալով" թրք. alyp "առած ըլլալով". մանջ. alire "առնու" ("ապառնի"). թրք. alyr "կ'առնու" ("ներ-

կայ»)․ մանչ․ alime «առնուլ» թրք․ «alym» «առումն, գնումն» (ուսկից կազմուած է աներ․ almak «առնուլ», y ձայնաւորին զեղչմամբ)․ մանչ․ ali «ա՛ռ» թրք․ al «ա՛ռ»․ մանչ․ aliha «առած» հմմտ․ թրք․ ačyk «բաց» ač-makt «բանալ»։ Ačyk բառին -k վերջաւորութիւնն այն է՝ որ կը տեսնուի նաեւ բազմաթիւ գոյականներու մէջ, այլեւայլ ձայնաւորներու հետ կապուած (-ak -uk -ik) եւ կը թաքնուի նոյն իսկ՝ գ․ օր․ աներեւութի -mak վերջաւորութեան մէջ․ բայց այս գոյականները մոնղոլերէնի մէջ -k վերջաւորութիւնն ունին․ buduk «դոյն» budu- «դունաւորել» բայէն (աներեւոյթ budu-xu)։ Ուստի կ'երեւայ թէ նաեւ մոնղոլերէնի մէջ սեպհական պայմաններու տակ՝ վերջատառ ձայնաւոր մը կորսուած է։ Ասի պէտք է՝ ի մէջ այլոց, յոգնակի կազմութեանց համար ընդունուիլ․ արդէն վերը յառաջ բերի վերջաւորութիւնս՝ -ta, մոնգ․ -d, թրք․ -t. ուրիշ վերջաւորութիւն մը s կը պարունակէ՝ մանչ․ mergen «գիտուն մը», յոգն․ mergese, մոնգ․ üile «գործողութիւն», յոգն․ üiles. ասոր կը համապատասխանէ թրք․ -z, դերանունական ձեւերուս մէջ՝ bi-z «մենք», si-z «դուք» եւ բայի դիմորոշ վերջաւորութեանց մէջ՝ 1․ եզ․ -m, 1․ յոգն․ -myz, -miz. անշուշտ այս տեղւոյ կը վերաբերին նաեւ քանի մը թրքերէն եզակի ձեւեր, որոնք նախապէս կրնան հաւաքական եղած ըլլալ․ օսմ․ gökü̈s «կուրծք» (s երկրորդական է՝ ծագած չէ, հմմտ․ չուվ․ kŏgŏr ZDMG, LVII, 554) մոնգ․ kükün, մանչ․ huhun. դարձեալ շատ մը թրքերէն թուականներ -z մ'ունին, ուր մոնգ․ ու մանչ․ -n կը ներկայացընեն (օսմ․ օրխ․ jüz «հարիւր»․ յակ․ sǖs, մոնգ․ ʒaγon եւն․)։ Երրորդ յոգնակի վերջաւորութիւն մը կը բովանդակէ r մը․ մանչ․ mafa «նահապետ, նախահայր», յոգն․ mafari. (միեւնոյն վերջաւորութիւնը նախաւոր ․հաւաքական նշանա-

կութեամբ, մանջուերէնի մէջ՝ dobori «գիշեր» եւ dobon «գիշեր»։). Ասոր հետ կը միացընենք եւ մոնղոլերէնի յոգնակի վերջաւորութիւնը՝ -nar -ner: teŋgeri «աստուած» յոգն. teŋgeriner. եւ -nar -ner կը համարիմ երկու յոգնակի ձեւերու կուտակութիւն մը. (Մոնղոլերէնի -n յոգնակի վերջաւորութեան մասին հմմտ. I. J. Schmidt, Mong. Gramm. § 41, 1 էջ 26. ebertü «եղջիւրաւոր» յոգն. eberten. այս վերջաւորութիւնը յաճախադէպ է կալմիւքերէնի մէջ, abači «որսորդ» յոգն. abačin, xancu «թեզանիք» յոգն. xancun եւն ձեւերս կը գտնուին Jülgի հրատարակած Սիդդ-հի-Կիւրի զրոյցներուն մէջ)։ Նաեւ թրքերէնի (այժմ գրեթէ միահեծան իշխող) յոգնակի վերջաւորութիւնը՝ -lar -lär (հանդերձ իւր զուտ ձայնական ճամբով յառաջ եկած գաւառական յարակից ձեւովս՝ -nar -tar եւն.) Նոյնպէս երկու վերջաւորութեան կուտակում մ'ըլլալու է (-l- կը յիշեցընէ տունգուզերէնի յոգնակի վերջաւորութիւնն՝ -l, որ յաճախ կը միանայ մանջուերէնէ ծանօթ -sa յոգնակի վերջաւորութեան հետ եւ կ'ըլլայ -sal. տունգ. bira «գետ» յոգն. biral, äʒän «տանուտէր» յոգն. äʒäsäl, տ. Castrén, Tungusische Sprachlehre էջ 7)։

Վերջատառ ձայնաւորաց անկումը մէկ կողմանէ եւ նեղ ձայնաւորաց (i, y, ü, u) միջավանկերու մէջ զեղչումը միւս կողմանէ (ZDMG LVII 541), այն հետեւութեան հասուցած են՝ որ թրքերէնի բայարմատներուն մեծագոյն մասը բաղաձայն վերջաձայն մ'ունի. մանչ. obo-me «լուալ» թրք. juv-, մանչ. aga-me «անձրեւել» թրք. jag-. հմմտ. ածանցական վերջաւորութիւններս մանչ. gisu-re-me «ճառել, խօսել», յառաջ եկած gisunէ «բառ, խօսք», մոնղ. ʒögele-re-kü «կակղանալ» ʒögelenէ «կակուղ», օսմ. sararmak (ուրիշ գաւառաբարբառներու մէջ sargar-)

«դեղնիլ» յառաջ եկած saryէ (կոյբալերէն՝ saryg) «դեղին», կամ օսմ. suvar-mak «ջրել» su «ջուր» բառէն (օրխ. sub)։

Անշուշտ չ՚ուրացուիր թէ կայ Թրքերէն բառաձեւերու եւ բայարմատներու ստուար թիւ մը, որոնց մէջ վերջատառ ձայնաւոր մը մնացած կ՚երեւայ (գ. օր. ներգոյական վերջաւորութիւնը՝ -da -dä, հմմտ. մանչ. -de, մոնղ. uri-da «յառաջագոյն», կամլ. ger-te «ի տան». գործող անուանց վերջաւորութիւնը՝ -či: օսմ. av-ǯy «որսորդ» մոնղ. aba-či. այս վերջաւորութիւնը մոնղոլերէնի մէջ նաեւ դերբայի պաշտօն ալ կը կատարէ. abu-k-či «առնող». գրեթէ ճիշդ այսպէս է Թրքերէնի մէջ՝ օրխ. it-gü-či «գործիչ» օսմ. ädiǯi եւն եւն։ Յաճախադէպ Թրք. ածանցական վերջաւորութիւնը -la- -lä, որ նաեւ մոնղոլերէնի եւ մանչուերէնի մէջ շատ արդասաբեր է. մոնղ. nari-la-xu «բարակ ըլլալ», յառաջացած narinէ «նուրբ», մանչ. kundu-le-me «մեծարող ըլլալ» յառաջացած kundunէ «մեծարող» եւն.)։ Չգիտեմ թէ այստեղ ի՞նչ մասնաւոր սկզբունքներ ընդունուելու են (ձայնաւորի երկարութիւն, փոխառութի՞ւն)։

Արդէն վերը յառաջ բերուած tarkan յոգն. tarkat (եթէ այս բառն՝ ինչպէս ես կը կարծեմ, բնիկ Թրքերէն է) տիտղոսէն կրնայ հետեւցուիլ թէ վերջաձայն -ն մը Թրքերէնի մէջ չի կորսուիր. հմմտ. դարձեալ դերբայն՝ ինչպէս օսմ. sävän «սիրող՝», յառաջ եկած säv-mäkէ «սիրել», մոնղ. abun «առնող՝», յառաջացած ab-xuէ «առնուլ»։ Անշուշտ W. Bang, Keleti szemle, IV 113 իրաւամբ կը մեկնէ մոնղ. ներկան abumui իբր ծագում առած abun + bui «եմ, է». մանչուերէն ներկան ալ (gisurembi ծագած gisure-me «ճառել, խօսիլ», o-mbi յառաջ եկած o-է «ըլլալ» եւն.) կը մեկնէ միեւնոյն կերպով, այսինքն՝ մանչ. bi

"եմ, է" բառին հետ բաղադրուելով։ Նաեւ այլեւայլ կղզիացեալ Թրքերէն բառեր կը ցուցընեն թէ վերջաձայն -ն պահուած է. յակ. tün օրխ. tün "գիշեր" օսմ. dün "երէկ". հմմտ. մանչ. dobon "գիշեր" (թէեւ տունգ. dolboni "գիշեր" dolbo "գիշերային"). յակ. xān, օսմ. kan, մոնգ. čisun "արիւն" (?. Dr. Vilh. Grönbech, բերանացի)։ Ուստի -p եւ -pan, -pän վերջաւորութեամբ կրկին դերբայներն Օրխոնեան արձանագրութեանց մէջ՝ կրնան մեկնուիլ այնպէս՝ ինչպէս են մոնգ. mori եւ morin "ձի"։ Նման կրկնաձեւերուն (բայց ոչ -ni մը կորստեան) արդիւնք է գ. օր. ǯirüken "սիրտ" օսմ. jüräk, մոնգ. küčün "զօրութիւն" օսմ. güǯ, մոնգ. մանչ. miŋgan "հազար", Թրք. biŋ եւն։

Համառօտութեան համար՝ նախընթացին մէջ հրաժարեցայ տարակոյսներս յայտնելէ, ուրիշ հնարաւորութեանց մտադիր ըլլալէ, մանչուերէն ձեւերուն աղերսը տունգուզերէնի հետ քննելէ եւն։ Բայց յամենայն դէպս Թրքերէնի համար յառաջ բերուած ձայնական օրէնքն ուղիղ պիտի ըլլայ. սակայն նոր չէ, ինչպէս կը տեսնուի, թէպէտ եւ այլուր տեղ մ'ալ՝ վերը նշանակուած կերպով բանաձեւուած չի գտնուիր։

§ 60. Ի Թերթին ZDMG LVII 567 իբրեւ հայերէնէ փոխառեալ բառ նշանակած եմ՝ ի մէջ այլոց, Թրք. äsäk "էշ", զոր արդէն այլք ինծմէ յառաջ ըրած են՝ թէպէտ եւ անորոշ եղանակաւ։ Այս բառը Թրքերէն լեզուին մէջ բաւական շատ տարածուած է, ինչպէս որ Radloffի Թուրք գաւառաբարբառներուն բառգրքի մը փորձէն կրնայ տեսնուիլ. Թրքերէնէ է ռուս. ишакъ "ջորի" բառը։ Հայկական էշ բառը միեւնոյն է լատ. equusի եւն հետ (KZ XXXVIII 197 եւ 205). հմմտ. հհնդկ. açvatará- "ջորի, իշակէս" նպ. astar։ Չեմ կրնար որոշել թէ այս բառը

Թրքերէնի մէջ ընդունուած է նախաւոր e ձայնաւորո՞վ թէ կրասերագոյն ei-ով (§ 42), որովհետեւ չեմ գիտեր թէ äšäk բառին առաջին վանկին ä ձայնաւորը նախապէս երկա՞ր էր թէ սուղ. -äk շատ սովորական վերջաւորութիւն մըն է, որուն մասին § 59ին մէջ ալ խօսուեցաւ: Չեմ կարծեր որ Թրք. äšäk որեւէ աղերս ունենայ մոնղ. elǯigen "էշ" բառին հետ. § 59ի համաձայն՝ -en վերջավանկն անշուշտ արգելք մը չէ. չեմ գիտեր թէ մոնղ. -ǯig- կրնա՞յ Թրք. -šäkի համապատասխանել. բայց յաճախ դէպս նի մը կորըստեան հաւան չեմ: Հոս գործածական բայերու ձեւակերպը չի կրնար վկայութեան կոչուիլ, զ. օր. մոնղ. abu-lca-xu "երկակողմանի առնուլ, առնուլ տալ" յառաջ եկած ab-xuէ "առնուլ" եւ օսմ. al-yš-mak "առնուլ տալ". ակիզբ առած al-makէ "առնուլ": Վասն զի տարակոյս չկայ թէ հոս մոնղոլերէնի մէջ ձեւակերպաներու կուտակում մը կայ. -l- յերեւան կու գայ նաեւ ուրիշ ձեւակերպի հետ բաղադրուած՝ բառիս մէջ՝ abu-ldu-xu = abu-lca-xu, իսկ -ca- առանձին ալ կը տեսնուի բառիս մէջ՝ ʒoki-ca-xu "համաձայնիլ՝", որուն քով կայ ʒoki-xu "ի կարգի ըլլալ", եւ nökü-ce-kü "երթեւեկել," nökür "ընկեր, ուղեկից" բառէն: -l- կրնայ միեւնոյն ըլլալ մերձաւորապէս Թրք. կրաւորական -l-ին հետ, իսկ -ca-՝ մերձաւորապէս Թրք. -š-ի եւ մանչ. գործածականներուս հետ՝ -ča-, -če- (omi-me "խմել", omi-če-me "միասին խմել"): Այս պատճառաւ իբրեւ պատահական կը համարիմ այն նմանութիւնը՝ որ կայ Թրք. äšäk, մոնղ. elǯigen եւ՝ իսկոյն կը յաւելում՝ մանչ. eihen բառերուն միջեւ: — Այն կէտին՝ թէ իշու եւ ձորւոյ բուծութիւնը Հայոց քով մեծ դեր խաղացած է՝ կը վկայէ նաեւ ընիկ անուանակոչութեանց առատութիւնը. զ. օր. ցէշ, Ձորէ, Ծորաղէ, Էշայր, Էշաձոր ("արոր էշ վայրենի"). Մատդըրու-

թեան արժանի են նաեւ էշ բառին ածանցումները՝ օր. աղ. էշանամ (հմմտ. էշանդամ՝ “որոյ ամօթոյք են իբրեւ գիշոյ„), էշու-կ, էշան (յոգն. էշանք, էշանց իբրեւ ն-արմատ)։ Պ. Ենսէն՝ IF Anz. XIV 51, էշ բառը կը կարծէ գտած ըլլալ հատեան արձանագրութեանց մէջ՝ a-i-s կամ i-s ձեւով։ Իւրաքանչիւր ձայնանիշ շատ նշանակութիւն ունի, իսկ Ենսէն կ'ուզէ այն բառին արտասանութիւնն ընդունիլ իբր *oišo-, որ իմ ստուգաբանութեանս չի համաձայնիր։ Ենսէնի ընթերցածներն իբր ուղիղ ենթադրելով՝ կրնանք ստուգիւ ընդունիլ մերձաւորապէս նաեւ eišo- արտասանութիւն մը։ ei երկբարբառը կրնար անշուշտ ai-ով ալ նշանակուիլ, նոյն իսկ եթէ a այլուստ չկարենայ e նշանակել. (Ի հարկէ Ենսէն էջ 49 կ'ուզէ զt-i-i “տէր„ նշանակութեամբ կարդալ եւ տէր բառին հետ կցել. տէր բարդ բառ մըն է, որուն առաջին տարրը՝ ըստ § 29ի, նախապէս *tei- կամ *toi հնչած ըլլալու է, բայց հաստատապէս “տէր„ նշանակած չէ, հմմտ. տի-եղէր-ք, ըստ ինքեան՝ „*tei-ի կամ *toiի սահմանները“. ուստի *տէր կը նշանակէ „*tei-ի կամ *toi-ի մարդը“. ուստի “տէր„ նշանակութիւնը բարդութեանս միայն վերջին անդամին արդիւնքն է, հմմտ. նոր իռլ. fear an tighe “տան տէր, տանուտէր„ (Առան կղզիներու մէջ) եւ հին սկանդ. húsbóndi, անգղ. husband. այս օրինակաց եւ յաջորդ բառերուս համաձայն՝ իռլ. tigerne “տէր„, ծագած techէ “տուն„ կըմր. teyrn “թագաւոր, բռնաւոր„ յուն. δεσπότης δέσποινα, շատ յարմար կ'ըլլայ առաջին անդամին համար ընդունիլ թէ “տուն„ կը նշանակէր եւ դարձեալ “աշխարհ„. — այս երկու նշանակութիւնները միացած են նաեւ հայ. տուն բառին մէջ, որ նախ՝ “տուն„ կը նշանակէ, յետոյ “ընտանիք, գերդաստան, ազգ„, ըստ Fr. Müllerի WZKM IV 356 նաեւ “աշխարհ, երկիր„ —.

ընտականապէս *tei, *toi կրնար ուրիշ նշանակու-
թիւն մըն ալ ունեցած ըլլալ. բայց Հատեան
t-i-i "տէր" ձեւի մը չի կրնար համապատաս-
խանել. Ենսէն պէտք է որ այս բառին համար ու-
րիշ կապակցութիւն մը փնտռէ)։

Հայ. էշ բառը (Թրք. äšäk) ամենեւին գործ
չունի սումերական anšu "էշ" բառին հետ։ Յուն.
ὄνος (հմմտ. ὄναγρος) եւ լատ. asinus բա-
ռերը յառաջագոյն (ենթադրելով՝ որ anšu եւ էշ
միեւնոյն ըլլան) ատոնց կարգէն կը համարուէին,
հմմտ. Schrader, Reallexikon էջ 206 եւ
G. Meyer, IF, I 318 եւ հետեւ. սակայն չեմ
կրնար զὄνος համաձայնեցընել էշ բառին հետ.
asinus բառը կրնար ի վերջոյ ոեւէ փոքր-
ասիական լեզուի մը միջնորդութեամբը՝ հայերէն
էշ–ն (հնագոյն *e(i)šan-) բառէն ծագում առնել։
Այս ենթադրութեան հաւանականութիւնը կա-
խուած է գլխաւորաբար անկէ՝ թէ արդեօք
կա՞ն անդրագոյն փաստեր, որ այսպիսի փոխառու-
թիւն մ'ապացուցանեն. այս խնդրով այսօր
զբաղիլ չեմ ուզեր։ Ծանօթ է թէ կելտերէն,
գերման՝ ու սլաւ լեզուաց մէջ "էշ" բառին ծա-
գումը լատիներէնէ է։

§ 61. Յայտնի է թէ Թրք. koč (Օրխոնեան
արձանագր.) "ոչխար" չի կրնար Հայ. խոյ բառէն
բաժնուիլ։ Բայց հազիւ թէ կարելի ըլլայ մտածել
թէ հայերէն բառը Թրքերէնէ փոխ առնուած
ըլլայ. ոչխարաբուծութիւնն ամենահին ժամանակ-
ներէն ալ ծանօթ էր հնդեւրոպական ազգաց.
ընդհակառակն Թրքաց քով անշուշտ կրնար
կրտսերագոյն ըլլալ (Ֆիններու քով նոր է, ըստ
Schraderի Reallexikon էջ 708)։ Թերեւս խոյ
(սեռ. խոյէ, սեռ. յոգն. խոյոց) նոյն իսկ ուրիշ
հնդեւրոպական լեզուաց մէջ խնամիներ ունի.
հմմտ. իր. cit cetnait "ոչխար". cit կրնայ հնդեւր.
*qhetni-է ծագում առած ըլլալ (հմմտ. Օստհոֆ

Etymologische Parerga էջ 250), խոյ կրնայ *qhotiի արդիւնքն ըլլալ։

Կրնայ առարկուիլ թէ խոյ հայերէնի մէջ կղզիացեալ է, մինչդեռ թրք. koǰ բառին քով խնամի ձեւեր կան, զ. օր. օսմ. koč «խոյ»։ Սակայն koč՝ թրքերէնի ձայնական օրինաց համաձայն՝ չի կրնար koǰ բառին հետ միացուիլ. ընդհակառակն č կրնար համապատասխանել հայերէն ղ ձայնին, որ tʲ-է ծագած է։ Եւ չի կրնար տարակուսի տակ ձգուիլ թէ հայերէն ոչխար բառին հետ միեւնոյն է չաղաթայերէն ձեւս՝ kočkar «խոյ» Vámbéry, Et. Wtb., Pavet de Courteille, Dictionnaire Turk-Oriental قوچقار, Radloffի քով՝ այլեւայլ գաւառականներէ ապացուցուած). Վասն զի հայերէն ձեւը կրնայ բառաակզբան խ մը կորսնցուցած ըլլալ աննմանաձայնութեամբ (հմմտ. ուրախ եւ խրախ § 30)։ Աննմանաձայնութիւնն անշուշտ այն կերպով տեղի ունեցած է՝ որ խ նախ եւ յառաջ հ եղած է. (այս հ ձայնն այն ատեն խոյի վրայ ալ ազդած է եւ հոյ երկրորդական ձեւ մը յառաջ բերած)։ Ոչխարը բարդ բառ չէ, այլ ածանց մը՝ վերջաւորութեանց կուտակմամբ ճոխացած. -խ վերջաւորութիւնը կը գտնուի դարձեալ զ. օր բառերուս մէջ՝ գլուխ (KZ XXXIX 252 եւ հետեւ.) եւ յուճախ (§ 26). -ար հաւաքական վերջաւորութիւն մըն է, որուն մասին վարը՝ § 81՝ մանրամասն պիտի խօսուի։ ղ եւ խ ձայներուն միջեւ կորսուած ձայնաւորը պէտք է որ կամ ի եւ կամ ու եղած ըլլայ. ու ինծի ամէնէն հաւանականը կ'երեւայ ձեւագիտական տեսակէտով. Նախ ի նկատի ունենալով սա ձեւը՝ չանուխ, երկրորդ՝ որովհետեւ խի առջեւ գտնուող ձայնաւորը թերեւս ենթադրեալ *xoč̣ի արմատոյ-վերջաձայնին հետ միեւնոյն էր, եւ ասիկա շատ դիւրաւ կրնայ *qhotǰu-է յառաջ եկած մեկնուիլ։ Կորսուած ձայնաւորը տակաւին գոյութիւն ունեցած պիտի

ըլլար այն ժամանակը՝ երբ հայկ. բառը թրքերէնի մէջ ընդունուեցաւ. բայց թրքերէնի մէջ ալ պէտք էր կորսուիլ այնպէս՝ ինչպէս հայերէնի մէջ (ZDMG LVII 541)։ Բաց աստի՝ թրքերէն եւ հայերէն ձայնական օրինաց միջեւ եղած համաձայնութիւնը շատ աւելի ընդարձակ է. այսպէս կ'երեւայ թէ թրքերէնի մէջ ալ tš անցեր է č-ի։ Գտնէ Dr. Vilh. Grönbech (Forstudier til tyrkisk lydhistorie էջ 63) կը գուշակէ թէ օսմ. ožak "կրակետղ, քուրայ" (օճախ), կազանի թաթար. učak յակ. osox՝ ածանցում մըն է բառերէս՝ օսմ. od "հուր", յակ. uot, ալտայական գւռ. ot։ Ուստի եւ այս կերպով կրնար նաեւ kočkar բառին մէջ tš-է ի č անցումը տեղի ունեցած ըլլալ՝ թրքական գետնի վրայ։ Բայց նոյնպէս ի յառաջագունէ ալ շատ հնարաւոր է՝ թէ հայերէն բառն արդէն փոխառութենէ յառաջ՝ ւ մը զարգացուցած էր (P. Jensen IF Anz. XIV 51 հայ. ոչխ բառին համար կ'ընդունի հատեան ձեւ մը՝ որ արդէն ւ ունէր. եթէ ասի ուղիղ ու ճիշդ ըլլայ՝ այն ատեն տառով kšէ ծագած ւի համար ժամանակաչափ մը կ'ունենանք, որուն tš-է ծագում առած ւ ձայնն ալ ստուգիւ ժամանակակից կ'ըլլայ)։ Եւ թերեւս հայերէնի մէջ տակաւին կը գտնուի *xoč բառին ուրիշ ածանցում մը. խոշն սեռ. խոշին, սեռ. յոգն. խոշանց ("հաւտ ոչխարաց") կը յիշեցընէ հաւաքականներս՝ Հօրան, իշան, ձիան (§ 15) եւ յոգն. սեռ. շանանց (§ 47)։ Եզ. ուղղականը՝ ն- արմատի մը համար, ինչպէս որ վերջին երեք բառին մէջ կը տեսնուի, պէտք էր կամ կրնար -ո̥ վերջաւորութիւնն ունենալ կամ նմանակազմաքար ընդունած ըլլալ (խոշն). այս նին առջեւ ւ ձայնը շ եղած կրնար ըլլալ (§ 54). եւ ոնոն, ոչխրն (§ 17, KZ XXXVIII 217) բառերէն կը հետեւի թէ ո̥ ձայնը կ'ազդէ նաեւ իբր բաղաձայն. հմմտ. ողն եւ ողէ § 48։ Թերեւս խոշանց եւ նման

ձեւերուն մէջ գտնուած ․ ձայնաւորը կրնար ներդաշնակութեամբ յառաջ գալ, թէպէտ եւ ներդաշնակութեան ապահով օրինակները (§ 47) ցոյց կու տան e (ոչ o) նախաւոր ձայնաւորը: — Թրքերէն koč "խոյ" բառը փոխառութեամբ մոնգոլերէնի մէջ ալ մտած է (xuca), եւ այն՝ հազիւ այնպիսի ժամանակ մը՝ երբ վերջատառ ձայնաւորը թրքերէնի մէջ ինկած էր. եւ որովհետեւ բաղաձայն վերջաձայնը շատ ցանցառ է մոնղոլերէնի մէջ (վերջաձայն c մը ընդհանրապէս գոյութիւն չունի), անոր համար բառին վրայ -a մ'աւելցուեցաւ: Յետոյ մոնղոլերէնէն առնուած են մանչ. kóča, տունգ. kuca.

koǰ եւ koč բառերը յիշեցնող թրքերէն երրորդ բառ մը kuzu "գառն" անշուշտ միայն պատահական կերպով նման կը հնչէ:

Կը մնայ այն խնդիրը թէ ինչո՛ւ Թրքերը հայ. յ ձայնը ներկայացուցած են ǰ ձայնով եւ ոչ j: Vilh. Thomsenի ǰով տառադարձած Օրխոնեան արձանագրութեանց նշանը կը ցուցընէր՝ ինչպէս որ տարակուսի տեղի չկայ (հմմտ. ZDMG LVII 552), ոնդականացեալ -յ- մը (մերձաւորապէս այնպէս՝ ինչպէս է յակուտերէն ոնդականաւոր ǰ ձայնը): Բնականաբար կրնայ ենթադրուիլ թէ թրք. ǰ նաեւ ուրիշ աղերսիւ թրք. jէ կը խոտորէր, թերեւս նեղ կամ լայն ձայն մըն էր. (այն ատեն անշուշտ աւելի լայն ձայն մը. վասն զի j ձայնը բառասկզբան՝ բաց բաղաձայն կ'ըլլայ թրքերէն գաւառականներուն մէջ, զոր օր. յակուտերէնի մէջ s կ'ըլլայ:) Մեր այս դիպաց մէջ ալ կրնայ ոնդական ǰ եւ ոչ-ոնդական j ձայներուն իրարմէ այս երկրորդական զանազանութիւնը պատճառ եղած ըլլալ՝ յիշեալ ձայնին ընտրելու: Սակայն եւ այնպէս ուրիշ հնարաւորութիւն մըն ալ կայ. հայկական յ ձայնը հնդեւր. tէ ծագում առած է. միջնանդամ էին

ի եւ ծ. որդ թերեւս փոխառութեան ժամանակը ծ ձայնը դեռ յ չէր եղած, այլ փափկահնչիւն ծ մըն էր տակաւին. եւ կրնայ ըլլալ որ այս փափկահնչիւն ծ ձայնն էր՝ որ Թուրքաց կողմանէ կ'արտայայտուէր ունդականացեալ i̯ ձայնով մը։ Բնականապէս սխալ կ'ենթադրէ թէ Թուրքերը նոյն միջոցին ճշդիւ համապատասխանող ձայն մը չունէին. ի հարկէ պէտք ենք նախաթուրքերէնի համար ծ մ'ենթադրել (ուսկից օսմ. j, գ. օր. օրխ. adak "ոտք" օսմ. ajak). բայց վերջապէս այս նախաթուրքերէն կամ զգուշութեամբ բացատրելով՝ համաթուրքերէն ծ ձայնը կրնայ ի վերջոյ կրտսերագոյն ըլլալ՝ քան հայերէնէ փոխառեալ բառերը. նոյնը կրնայ հնագոյն dz մըն ալ յառաջ եկած ըլլալ. (կամ կրնայ նաեւ շատ հին ըլլալ, բայց հայկական փափկահնչիւն ծէն շատ տարբեր հնչած ըլլալ լսողօրէն։)

Եթէ հայեցուածք մ'արձակենք Պ. Ենսէնի հատերէն ընթերցումներուն վրայ՝ նախ տակնուվրայութիւն յառաջ կը բերէ այս խնդրոյս մէջ։ Ենսէն (IF Anz. XIV 50) կ'ընդունի թէ հնդեւր. t ձայնը "հայր" եւ "մայր" բառերուն մէջ տակաւին tով կը նշանակուէր. նոյնպէս՝ ազգին անուան մէջ (hata = հայ). այսու ամենայնիւ "խոյ" պէտք է որ x կամ xa գրուած ըլլայ (էջ 51), որ այն ատեն կարդացուելու էր իբր xoi̯i. Բայց ասկէ ամենեւին չի հետեւիր թէ խոյ բառին յ ձայնը հնդեւր. t մը չէր, այլ մերձաւորապէս հնդեւր. i̯ մը։ Շատ անհաւանական է որ այս բառին մէջ հնդեւր. i̯ մ'ըլլար, նոյն իսկ եթէ ստուգաբանութիւնն ի բաց առնուի, նախ ձեւագիտական պատճառներէ առեալ (*ghoi̯i- մը ճիշդ հնդեւրոպականի կերպարանք մը չունի), երկրորդ՝ ձայնական պատճառներու համար, վասն զի հնդեւր. i̯ մը՝ որ ձայնաւորաց մէջտեղ կը գտնուէր, հայերէնի մէջ

միշտ կը կորսուի (§ 43)։ Ասոր համար Եննէնի ընթերցումները կրնամ միայն այն կերպով իմ տեսութեանցս հետ հաշտեցընել՝ որ արձանագրութեանց ժամանակաշրջանին՝ հնդեւր. եւ համար՝ փափկահնչիւն ծ մը կը դնեմ կամ ծի եւ ǰ (ȷ) ձայներուն միջեւ ուրիշ միջին աստիճան մը. այս ձայնը ստէպ գործածուած "մայր" "հայր" բառերուն եւ hata անուան մէջ իբրեւ ատամնական կը գրուէր՝ պատմութեան համաձայն. (Ի հարկէ t նշանը կրնայ հաւասարապէս նշանակած ըլլալ թէ ծ, թէ d եւ t կամ tʿ). Իսկ բաւականէն աւելի հազուադէպ "խոյ" բառին մէջ՝ պատմական աւանդութիւնը նուազ կենդանի էր, եւ ըստ այսմ այն թեթեւ ձայնը կրնար ձայնաւոր համարուիլ ու չգրուած մնալ. (ըստ Եննէնի՝ էջ 48, պէտք մը չկար որ ձայնաւորները գրուած ըլլային, նաեւ հոն՝ ուր խումբ կը կազմէին. յամենայն դէպս ասիկա ինծի շատ զարմանալի է. բայց ես միտք չունիմ հոս Եննէնի տեսութիւնները քննելու, այլ կ'ուզեմ զանոնք իմ ստացած արդիւնքներուս հետ համեմատել)։

Բայց Թրքերէնի մէջ koǰ բառին քով դոյութիւն ունի երկարագոյն ձեւ մըն ալ՝ օսմ. kojun։ u ձայնաւորը կրնայ ներդաշնակութեամբ յառաջ եկած ըլլալ iէ. ըստ այսմ նախաւոր ձեւն ըլլալու էր *koǰin։ Բառն այս ձեւով մտաւ մոնղոլերէնի մէջ՝ xonin (որմէ՝ ըստ նմանակազմութեան, morin, mori "ձի" եւն բառերու, կազմուած է երկրորդական ձեւ մը՝ xoni). Ուստի Թրքերէն ǰ անդականացեալ ձայնը մոնղոլերէն nով բացատրուած է։ Այս բառը մոնղոլերէնէն ալ մտած է մանջուերէնի (honin) եւ տունգուզերէնի մէջ (konin, koṅin)։ Ես կ'ընդունիմ թէ Թրքերէն երկու ձեւերս *koǰin եւ koǰ իրարու հետ այնպիսի աղերս ունին՝ ինչպիսի են մոնղ. morin եւ mori ձեւերը կամ Թրք. (օրխ.) -pan, -pän վերջաւորող դեր-

բայն՝ -ք դերբային հետ։ Ուստի koǰ թրքական վերջնաձայնի օրինաց զօրութեամբ յառաջ եկած է *koǰiէ, իսկ ասի երկրորդական ձեւ մըն է koǰinի՝ որ միւս ձեւոց դրութեան նմանակազմութեան համաձայն կազմուած էր։ Ուստի եւ *koǰin հայերէնէ առնուած ձեւն է, եւ այս ձեւը յայտնապէս հին հայցականն է, որ վերջնաձայնի օրինաց ազդեցութենէն յառաջ՝ պէտք էր այնպէս հնչել։ Հին հայցականի ձեւէն ծագում առած է պատմական ուղղականի ձեւը, ինչպէս որ ի Թերթին KZ XXXVIII 215—220 ապացուցած ըլլալ կը կարծեմ։ Հին հայցականը թերեւս վերջնաձայն օրէնքներէն յառաջ՝ արդէն իբր ուղղական կը բանէր. (-ց վերջաւորող ուղղականի ձեւերը՝ ըստ Ենսէնի IF Anz. XIV 56, հատեան արձանագրութեանց մէջ գոյութիւն չունին. սակայն հայերէնի մէջ -ց ամենեւին ինկած կորսուած չէ, այլ +ի փոխուած է. ուստի հին հայցականները թերեւս հատեան արձանագրութեանց մէջ ալ կը բանին իբրեւ ուղղականներ, որոնց մէջ -ռ վերջնաձայնը չի գրուիր)։

Ուստի օսմ. kojun բառը մեզի ցոյց կու տայ թէ հնդեւր. նրբերուն ձայնաշրջութիւնը հայերէնի մէջ հնագոյն է՝ քան թէ վերջնաձայնի կորուստը։ Եւ ասով կը հաստատուի այն արդիւնքը՝ որ արդէն ստացուած էր հայերէնի քննութենէն. (Հմմտ. ուսումնասիրութեանս առաջին մասը)։

[Կաւկասեան լեզուաց մէջ գտնուող “խոյ մալեալ„ կամ “ոչխար„ նշանակող բառը — ուտ. kui, կասիկումիւք. ku ըստ Շիֆների — կամ հայերէնէն կամ թրքերէնէն փոխառեալ է եւ բնականաբար չի կրնար ետրուսք. huvi “ընտանի կենդանի մը„ բառին հետ կապ ունենալ, ինչպէս որ կը կարծէ Alf Torp Etruscan Notes (Videnskabs-Selskabets Skrifter. Hist.-filosof. Klasse 1905 Nr. 1. Christiania) էջ 8]։

§ 62. Թուրքերէն kaz «սագ» բառն ալ կրնայ Հայերէնէ փոխ առնուած ըլլալ։ Այս բառը յամենայն դէպս հնդեւրոպականի ձեւ ունի, եւ գրեթէ չկայ ուրիշ հնդեւր. լեզու մը՝ բաց ի Հայերէնէ, ուսկից այս բառը կարենար առնուած ըլլալ։ Գոնէ սլաւերէն չի կրնար ըլլալ, վասն զի սլաւերէնի մէջ sի առջեւի ռնգականի մը կորուստը շատ ուշ է։ Շատ կասկածելի է նաեւ այն ենթադրութիւնը թէ ռնգականն ինքն իրմէ Թուրքերէնի մէջ կորսուած ըլլայ, որուն համար դրական ապացոյցներ չունինք։ Ի հարկէ չենք կրնար ուղղակի ապացուցանել թէ ռ անկորուստ կը մնայ sի առջեւ։ Եթէ Թուրք. omuz «ուս» բառը (օսմ., բայց նաեւ առ Pavet de Courteilleի. եւ Radloff Ատրպատականի գաւառաբարբառէն ալ կոչում մը կ'ընէ) իբրեւ հարազատ Թուրքերէն բառ՝ միեւնոյն ըլլար հնդեւր. *ōmso-ի հետ (յուն. ὠμός, հայ ուս), այն ատեն այս բառը միայն -ms- կ'ապացուցանէ եւ ո՛չ թէ -ns-. (ս կրնայ՝ վերջաձայնին իյնալէն վերջը՝ զարգացած միջարկեալ ձայնաւոր մ'ըլլալ)։ Գոնէ միշտ հաւանականագոյն կարծիքն այն է թէ kaz բառին մէջ՝ ռնգականին կորուստը նախաւոր լեզուին վերագրելու էր, եւ այն ատեն ատոր հետ լաւ կը համաձայնի այն կէտը՝ որ sի առջեւ գտնուող ռնգականին կորուստը հայերէնին մէջ շատ հին է (§ 46)։ Ձայնաւորը Թուրքերէնի մէջ նախնաբար երկար էր (յակ. xās.) եւ անշուշտ նախաձայնը սկզբնաբար ց էր (ZDMG LVII 551). վերջաւոր z ձայնը կրնայ յայտնապէս sէ յառաջ եկած ըլլալ, հմմտ. -z յոգնակի վերջաւորութիւնը (§ 59)։ Radloff մտադիր կ'ընէ իւր քերականութեան մէջ (էջ 187) թէ օսմաներէնի մէջ միայն z եւ ոչ s գոյութիւն ունի իբրեւ անուանական վերջաձայն (եւ օսմաներէնն ատուգիւ այս կէտին մէջ չի խոտորիր նախաթուրքերէնի վիճակէն). Ռատլոֆի կանոնէն

հազիւ թէ բացատրութիւն մ'ըլլայ։ göküs բառին s ձայնը երկրորդաբար յառաջ եկած է չէ. զարտուղութիւնները՝ որոնք Malloufի բառգրքին մէջ գտած եմ, կը կազմեն միայն սա յաջորդ բառերը՝ այսպէս. säs “ձայն, աղմուկ”, sus “լռութիւն, լուռ”, süs “զարդ (արանք), պաճուճանք”, sis “մէգ”, dos vurmak “գլխուն զարնել” (եւ dos doγru = düz doγru “շիփ շիտակ”), tas (taslak, dazlak) “կունդ”. Եւ այս ամէնն ոչինչ նշանակութիւն ունի։ Զարմանալի չէ որ բայարմատներուն վերջաձայնը տարբեր պատկեր մը ներկայացընէ՝ քան թէ անուանական վերջաձայնը. առաջինը միայն հրամայականին մէջ միանգամայն բառի վերջաձայն է։ Ուստի եւ թրքական kaz “սագ” բառը հին *gās ձեւ մը մատնանիշ կ'ընէ։ Եւ “սագ” նշանակող հնդեւր. բառը հայերէնի մէջ իրօք, այսպէս կրնար հնչած ըլլալ. արդէն Հիւբշման KZ XXIII 26 ընդունած է թէ հայ. սագ *gas ձեւէն շրջած է, եւ Joh. Schmidt KZ XXV 127 Հիւբշմանի կը համաձայնի։ Եւ՝ այս տառատեղափոխութեան մէջ՝ ձագ բառին (= ալբ. zog “թռչուն”) ազգեցութիւնը կը տեսնեմ։ Թէպէտ Օստհոֆ Parerga էջ 247 կ'ուզէ զսագ կշռել հհնդկ. çakuná-s “թռչուն” բառին հետ, բայց գ ձայնն ասոր կը հակառակի։

§ 63. Հայերէնէ փոխառեալ բառ մըն է դարձեալ Թրքերէն գաւառականներու մեծագոյն մասին մէջ տարածուած բառ մը՝ որ “աղջիկ” կը նշանակէ. օսմ. kyz, յակուտերէն kȳs. (ուստի նախնաբար երկար ձայնաւորով)։ Ասիկա հայ. կոյս բառն է, յոգն. սեռ. կուսից։ § 38ի համաձայն հայկական բառիս երկբարբառը յառաջ եկած է նախ եւ յառաջ öuէ, այս ալ əuի ձեւէն անցնելով՝ ծագում կ'առնու ouէ (հնդեւր. ou կամ eu)։ Թրքերէն ȳ ձայնաւորը կատարելապէս կը մեկնուի əu ենթադրեալ միջին աստիճանէն։ Թրքերէն բա-

ուին սկզբնաձայնը նախապէս ց էր (ZDMG LVII 551). ուրեմն Թուրքերն ոչ թէ միայն հայկական գ՝ այլ նաեւ հայերէն կ ձայնը ցով ներկայացուցած են. վերը՝ § 5ին մէջ, ըստ Գ ի ն ք ի՝ հայերէնի զուտ նրբերուն տուած մեկնութիւնէն յայտնի կ'ըլլայ թէ ասոր մէջ զարմանալու բան մը չկայ, եւ ասկէ չի կրնար հետեւցուիլ թէ այս բառը ձայնաշրջութենէ յառաջ փոխ առնուած ըլլայ, ինչ որ արդէն koj̑ բառին ձեւով (§ 61) բոլորովին անկարելի է։ Երգաձայնական z ձայնը կը մեկնուի այնպէս՝ ինչպէս kaz բառին մէջ՝ z ձայնը։

Չեմ կրցած կոյս բառին ընդունելի ստուգաբանութիւն մը գտնել։ Սակայն ս ձայնը կրնայ միայն հնդեւր. k̑ē ծագում առած ըլլալ։ Բայց ասկէ՝ նաեւ Թրք. äšäk (§ 60) բառէն ակներեւ է՝ թէ հայերէնն արդէն փոխառութեան ժամանակին իսկ լիովին զարգացած satəm-լեզու մըն էր։ Ասով կը փակուի ենթադրութեան մը ճամբան՝ որ այլուստ դիւրաւ կրնար մուտք գտնել։ Թրք. oküz "եզ" բառն անպատճառ հնդեւր. լեզուէ մը փոխառութիւն է. հմմտ. հհնդկ. ukṣā, գոթ. auhsa, կըմր. ych։ Աւեստ. uxšan համաձայն՝ նախալեզուի ձեւը դնելու է մերձաւորապէս *uqsō (արմատ *uqsen-)։ Եթէ այս բառն հայերէնի մէջ գոյութիւն ունեցած ըլլար, այն ատեն q ձայնը պէտք էր uէ վերջը k̑i փոխուիլ, իսկ բառը պատմական ժամանակին մէջ պէտք էր մերձաւորապէս *uçn հնչել։ Թէ այսպիսի բառ մը հայերէնի մէջ իրապէս գոյութիւն ունեցած է, կ'երեւայ թէ կ'ապացուցուի կաւկասեան լեզուներէն, աւար. oc̔ "եզ" — զանազանիչ նշանը որ c տառէն վերջը կայ, Schiefnerի քով քիչ մը տարբեր ձեւ ունի. արտասանութեան մասին դիտել կու տայ՝ "c̔ աւելի նուրբ կ'արտասանուի՝ քան թէ ռուսերէն ц գիրը, իսկ Անցուկացիք ş ձայնով կը փոխարինեն". Հրահանգիչ է ձայնական բացատրութիւնը՝ որ կը

տրուի գրքոյկին մէջ՝ Первоначальный учебникъ русскаго языка для Аваръ (Изданіе православнаго миссіонерскаго общества), Казань 1898. այս տեղ յիշեալ ձայնին համար կ՚ըսուի. произносится какъ русское ц, но съ большимъ раскрытіемъ гортани, եւ նոյնպէս Շիֆների ցին նկատմամբ կ՚ըսուի թէ կոկորդն աւելի լայն բանալով կ՚արտաբերուի՝ քան թէ ռուս. c ձայնը. չեմ գիտեր թէ ի՞նչ իրաւամբ v. Erckert (Die Sprachen des kaukasischen Stammes էջ 109) ocj կը գրէ, իբր թէ ձայնը փափկահնչիւն ըլլար — կամիկումիւքերէն (լտկ.) nic, հիւրկան. unc, ուտ. us, կիւրին. jac՛ (c՛ աւելի մերձաւոր է cի՝ քան թէ աւարերէնի մէջ, ըստ Շիֆների), արխազ. a-c" "եզն", c"-ky "եզ մը" (Շիֆնէր միեւնոյն ծանուցիչ նշանը կը գործածէ այստեղ եւ աւարերէնի եւ կիւրիներէնի մէջ, բայց որոշ կ՚ըսէ թէ այս այստեղ վերջահնչիւն u կամ w մը բացատրել կ՚ուզէ. v. Erckert կը գրէ acv)։ Արդեօք հայկական ցուլ բառն անդրադոյն կազմութիւն մըն է *ucnի։ Հրապուրիչ կ՚ըլլար՝ թրքերէն բառն ուղղակի հայերէնէ ածանցած դնել. այն ատեն պէտք էր որ հնդեւր. -ō վերջաւորող ուղղական ձեւ մը հին եղած ըլլայ. վերջաձայնին իյնալէն ետքը՝ kի եւ sի միջեւ միջարկեալ ձայնաւոր մը զարգացած ըլլալու է։ Նախաւոր ձեւին kն պէտք էր քմական եղած ըլլալ, եւ որովհետեւ քմական k մը թրքերէնի մէջ միայն լեզուածայրի ձայնաւորներուն քով գոյութիւն ունի, անոր համար u ձայնաւորը ներկայացուած է ö ձայնաւորով։ Բայց ասոր՝ կ՚երեւայ թէ այս բառն ընդունուած ըլլալու է՝ լեզուի յետակողմամբ հնչուող ձայնաւորովը, որուն կը պատասխանէր, բայց այն ատեն բնականաբար բաղաձայնին քմական նկարագիրը մէկդի թողլով. վասն զի յակ. oγus "եզ" բառը նախաթրքերէն *okuz մըն է։ Այս

բառը (վերջաձայն օրինաց ազդեցութենէն ետքը) Թրքերէնէ մտած է մոնղոլերէնի մէջ՝, üker. բաց աոկէ՝ բուրեաթերէն uker, uxer, uxur, եւ ասկից ալ տունգ. ụkụr (ụ կը նշանակէ փակ u)։ Բայց եթէ § 57ին մէջ ui քով գտնուող gէ ծագած k̑ ձայնին վրայ իմ կատարած քննութիւններս ուղիղ են, այն ատեն Թրք. öküz բառը չի կրնար հայերէնէ ծագած մեկնուիլ՝ առանց դէպ ի շատ հնագոյն ժամանակ մը վեր ելլելու, աւելի հնագոյն՝ քան հայերէնէ միւս փոխառեալ բառերուն համար ենթադրուած ժամանակի շրջանը։ Այս պատճառաւ öküz բառը գոնէ հիմակուհիմայ ի բաց կը թողում։

§ 64. «Գիւղ» նշանակող բառին նախաթրքական ձեւն էր *agyl: Այս ձեւն օսմաներէնի մէջ ըստ բաւականի անփոփոխ մնացած է (aγyl, aγl «փարախ»). Համմ. դարձեալ կիրգիզ. aul, կազանի թաթար. auyl, տարանչի eγil («գոմ»), կոյբալ. āl, յակ. yal («դրացի»)։ Ցակուտերէն «դրացի» նշանակութեան մասին համմ. ալբաներէն ասացուածն Հեղինակիս գրութեան մէջ Alb. Texte էջ 112 բ. *me kεté djalε fšat nukε bimε dot* «չենք ուզեր այս տղուն հետ մէկ գիւղի մէջ բնակիլ» (բառ ինքեան «գիւղ մ'ըննել», այսինքն՝ «դրացիներ ըլլալ»)։ Այս բառը նաեւ Թրքաց դրացիներուն ալ անցած է, ռուս. aul «գիւղ» (Կաւկասեան ժողովրդոց մէջ), չերեմիսերէն՝ aul «գիւղ, աւան», մոնղոլ. ail «դրացի, դրացնութիւն, աւան» (եւ ասկից՝ ailčin «հիւր». ailčilaxu «հիւր ըլլալ», համմ. լիտ. vëszně «հիւրուհի» vëszëti «հիւր ըլլալ», եւ հոլ. vьsь «գիւղ» [սլովեն. vas «գիւղ» եւ ասկից vasovati «այցելութեան գալ», vasovavec «այց ելլող»])։ Թրքերէն ցի դիմաց մոնղոլերէն i մը կը գտնուի այլուր ալ (միայն փոխառեա՞լ բառերուն մէջ). մոնգ. sain «բարի, լաւ» օսմ. saγ «ողջ, առողջ». մոնգ. uila-xu «լալ» օրխ. jugla-։

Այս Թրքական բառին հիմն է հայ. գեւղ, սեռ. տրկ. գեղջ, նախաւոր l-արմատ մը, որուն ուղղականին մասին արդէն § 40 ին մէջ խօսուեցաւ։ Անշուշտ ղ ձայնը ձեւացուցիչ մըն է այնպէս՝ ինչպէս է յաջորդ բառիս մէջ՝ եւղ սեռ. եւեղ (§ 27) կամ երկեւղ եւ երկնչիմ, կատ. երկեայ։ Բառասկզբան՝ a մը կորսուած է, հմմտ. այս մասին Նախատառ ձայնաւորի մը կորուստը բառերուս մէջ՝ ոեղի (եւղ ձեւէ), ղրծանեմ՝ ողրէմի քով (§ 50), ատր յուն. ἄορ (§ 43), կերէ եւ ե-կեր, ոսկոր եւ ո-ստանիմ (կը նշանակէ ի մէջ այլոց "ստվորիմ")։ Սովոր հասարակ ածականի վերջաւորութեամբ (լուսա-ւոր եւն) ածանցած է գոյականի օ-արմատէ մը, որ հիմայ միայն յ-ով բաղադրուած կը գտնուի (յ-ոյս, սեռ. յ-ուսոյ)։ Կազմութեան յօդաւորութեան մէջ -ո- ըլլալն փոխանակ սովորական -ա-ի՝ անկէ կը մեկնուի՝ որ առաջին անդամը չէր կրնար այլ եւս իբր ինքնակաց զգացուիլ. վասն զի -ա- վերջաձայն օրէնքի մ'արդիւնքն է (KZ XXXVI 100). անցողակի կը յիշեցընեմ թէ ո-ստանէմի հետ խնամութիւն ունի նաեւ ամ-ստանէն (Bugge Lykische Studien, I, 56)։ Անշուշտ Նախատառ ձայնաւորի մ'անկման նոյնպէս օրինակ մըն է ներ կամ ներ փոխանակ *էների, ծագած հնդեւր. *eincter-է, որ į ձայնով սկսող ձեւերուն հետ (հսլ. jętry լատ. janitrīces եւն) այն աղերսն ունի՝ զոր յուն. οἴφω ունի հհնդկ. yábhāmiի հետ։ Կրնայ հնդեւր. ei մը փնտռուիլ նաեւ Հոմերեան εἰνατέρεςի մէջ, ուր ει տաղաչափական պատճառաւ երկարած չէ ε ձայնաւորէն, ինչպէս կը մեկնէ Schulze Quaestiones epicae 158։ [Solmsen Untersuchungen zur griechischen Laut- und Verslehre էջ 4, արձանագրական ձեւ մը ἐνατρί յառաջ կը բերէ. բայց այս ձեւն անշուշտ միայն սխալ հասկցուած հոմերեան յիշեկք մըն է այնպէս՝ ինչպէս է նաեւ Տզեռզէսի այս տառանաւորը՝ τηλόθεν ἡμετέρης

καὶ ἡμετέρων ἐνατήρων]։ § 63ի համաձայն՝ ցուլ բառը Թերեւս *uqsulo- (կամ *uqsōlo-) մըն է։ Սոյր բառին նկատմամբ՝ տես § 52։

Կասկած չկայ թէ գեղ բառն ագանքմէ ածանցած է, որ աղերս ունի յուն. λαύω բառին հետ, ուսկից αὖλις ածանցած է. ըստ Շուլցէի՝ Quaestiones epicae էջ 72, αὐλή կը նշանակէ նախ՝ «գաւիթ, բակ», ապա՝ «ագարակ» (գիւղատուն), զոր նոյն գիտունը կ'ուզէ αὖλιςէն բաժնել, հմմտ. § 66։

Ուստի եւ հայերէնի նախաւոր ձեւն էր *ագեղ. ձայնաւորաց ներդաշնակութեան համար՝ Թրքերէնի մէջ *agylի փոխուեցաւ. ե ձայնաւորին y եւ ոչ a ըլլալը՝ նշան է թէ ե հայերէնի մէջ բաւական գոց էր։

§ 65. Թրքերէն *agyl բառին տուած մեկնութեանս դէմ կրնար առարկուիլ թէ ղ̯է ծագում առած գ ձայնը բաւական հին չէ, որպէս զի յերեւան կարենար գալ փոխառեալ բառի մը մէջ՝ որ kojun (§ 61) բառին հետ զուգընթաց էր։ Այն՝ ինծմէ առաջարկուած կանոնը (KZ XXXVIII 196) թէ ձայնաւորաց միջեւ գտնուող ղ̯ ձայնը՝ պատմական ժամանակեան հայերէնի բառամիջին յերեւան կու գայ իբր գ, իսկ բառավերջին՝ ղ կամ –, կրնար այնպէս մեկնուիլ իբր թէ գ ձայնը ղ̯է ծագում առած ըլլայ միայն հնդեւր. վերջաձայնին կորսուելէն ետքը (կով, կովէ. ուրեւ– ուրեգայն)։ Բայց սխալ կ'ըլլար կարծել թէ հայկական ղ վերջատառն ուղղակի շարունակութիւն մ'ըլլայ հնդեւր. ղ̯ ձայնին, ճիշդ ինչպէս սխալ կ'ըլլար ընդունիլ թէ կըմրերէնի այսօրուան w միջատառն (սկզբնատառ gwի դիմաց) ուղղակի շարունակութիւն մ'ըլլայ հնդեւր. ղ̯ի. ընդհակառակն gwէ յառաջ եկած է w, ինչպէս յիշատակարանները ցոյց կու տան (հին կըմր. petguar «չորս», այժմ pedwar)։ Նմանապէս հայերէնի մէջ ղ̯ ձայնը՝

ձայնաւորներուն միջեւ ամենուրեք ցը եղած է. վերջաձայնի օրինաց ազդեցութենէն ետքը՝ ցը բառավերջին եղած է γ, բառամիջին նախ անփոփոխ մնացած եւ յետոյ գ եղած։ Թերեւս ցը առաջինին վկայ է վրաց. γvino “գինի„ բառն՝ հայ. գինի բառէն։ Ուստի Թուրքաց ընդունած գեւ-ղ բառին նախաձեւը ճիշդ *agel չէր, այլ *agu̯el. բայց Թուրքերը կրնան զցը անմիջապէս պարզ ցով փոխանակած ըլլալ։

Թէ հայերէնի ղ կամ ւ վերջաձայնին իրապէս ցըէ յառաջ եկած է՝ հաւանական է նաեւ այն պատճառաւ՝ որ զարգացման այս ընթացքը կ'երեւայ թէ թուրքերէն բառով մ'ուղղակի կ'արտայայտուի։ Օսմ. aryγ “հեղեղ, վտակ, առու(ակ)„ բառը թուրքական լեզուաց մէջ շատ տարածուած բառ մըն է. նախաթուրքերէն ձեւը պէտք է *aryk եղած ըլլալ, ինչպէս որ Radloffի յառաջ բերած ձեւերէն յայտնի կ'ըլլայ։ Ես կը բաղձայի այս բառը հայ. առու (է- կամ ո- արմատ) համանիշ բառին հետ նոյնացընել, որուն կը վերաբերին նաեւ առոգանեմ, ոռոգանեմ։ Թուրքերէն բառը *aṙogu̯o- կամ *aṙogu̯i- ձեւէ ծագած կը մեկնուի։ o ձայնաւորը պէտք էր u ըլլալ, վասն զի նախաթուրքերէնն ոչ-առաջին վանկի մէջ o մը չի ճանչնար։ Յետոյ u ձայնաւորն ալ պէտք էր թուրքերէնի կրտսերագոյն ձայնաւորաց ներդաշնակութեան օրինացն համար՝ y ըլլալ։ Վերջաձայն օրինաց ազդեցութենէն ետքը՝ *aṙogu̯ հայերէնի մէջ եղաւ *aṙou. -ou ետքէն եղաւ -ւ. զ. օր. բառերուս մէջ՝ ա—ր փա—ն (§§ 14—15)։ Իրերն այսպէս մեկնելով՝ կով բառն ի հարկէ պէտք է իբր ոչ-կանոնաւոր զարգացած նկատել։ Սակայն թուրքերէնի kն անսովոր է. արդեօք թուրքական հողի վրայ կատարուած վերջաւորութեան փոխանակութիւն մ'եղած է։

§ 66. Օսմ. օրխ. jol “ճամբայ„ յակուտ. suol չուվաշ. śul, śol, ածանցմամբ՝ օսմ. jol-la-mak

«ղըկել» կը յիշեցընէ զարմանալի կերպով Հայ. ող կամ ողն, ածանցմամբքս՝ ող-աշկ-եմ եւ յողէմ (որ Հոլ. sъlati բառին հետ աղերս չունի, ինչպէս Մէյէ MSL VIII կ'ուզէ). Ձեւերու խառնուրդ մըն է՝ յողողաշկեմ (-աշկեմ կը վերաբերի աշխանեմի)։ Կ'երեւայ թէ նախաթրքերէն բառերուն մէջ ընդունելու է երբեմն j- նախակից ձայնաւոր մը, որ հնագոյն էր՝ քան այն j- նախակից ձայնաւորը՝ որ թրքական այլեւայլ գաւառաբարբառներու մէջ անթիւ քանակութեամբ կը գտնուի (Հմմտ. ZDMG LVII 555)։

Հայ. ող աղերս ունի նաեւ Հոլ. ulica «ճանապարհ» բառին հետ, բայց անշուշտ նաեւ յուն. αὐλός «սրինգ» բառին հետ ալ (ասի գործ չունի Հհնդկ. suşira-s «ծակ». կամ գոթ. raus — Noreen Urgermansk judlära էջ 87 — բառերուն հետ), լիտ. aũlas «հողաթափի վիզ, կօշկափող» (բոլորովին տարբեր ãvalas է «ոտքի ապանելիք՝» aũti է «հողաթափ հագնիլ»), պր. aulinis «հողաթափի վիզ՝ սռնապան՝» aulis է «սրունք» (այսպէս է նաեւ ռուս. голенище «հողաթափի սռնաման՝» голень է «սրունք»), Հոլ. ulьjь «փեթակ», լիտ. avilỹs «փեթակ»։ Von Rozwadowski իւր Semazyologia գործին մէջ (Eos IX, էջ 96 արտատպութեան) ասոնց կարգէն կ'ընէ նաեւ զյուն. αὐλή. այն ատեն ասոր նշանակութիւնը Հայ. ողն, ու. ulica պիտի յիշեցընէ. Հմմտ. § 64։ Այս տեղւոյ կը վերաբերի դարձեալ նորվեգ. aul(e), jōl «վայրի խմի» (angelica silvestris) հին սկանդ. hvann-jóli «ազնիւ խմի» (angelica archangelica) անկոյն սնամէջ ցօղունը». տե՛ս Lidén Studien zur aind. u. vgl. Sprachg. էջ 83)։ Նմանապէս առանց վարանելու այս տեղ կը զետեղեմ լատ. alvus եւ alveus։ Վասն զի բոլորովին ապահով կը համարիմ այն ենթադրութիւնը թէ ո՛չ միայն Հնդեւր. vl̥ vr̥ կրնար Հընդ-

ծւր. lu ruþ շըջիլ, այլ նաեւ հնդեւր. vl vr կրնար հնդեւր. lv rvþ փոխուիլ. Հմմտ. Կրեչմէր KZ XXXI 448 (անոր օրինակներուն վրայ կը յաւելում՝ յուն. γαυλός հրզ. kiol "մեծադոյն նաւակ մը". հին սկանդ. kjóll "նաւ" = հին սկանդ. kjölr "նաւու ողնափայտ". հին սկանդ. meyrr "փափուկ" = հրզ. maro. — հին սկանդ. maurr "մրջիւն" = իր. moirb. առարկութիւններ կը գտնուին առ Լիդէնի Blandade språkhist. bidrag, Gőteborg, hőgsk. årsskr. XIV, 1 էջ 14)։ Լատ. alvus բառը նշանակագիտօրէն ու ձեւագիտօրէն alveusի հետ այն աղերսն ունի, զոր ունի հին սլ. črěvo "արգանդ, փոր" črěvijь "հողաթափ" բառին հետ. Հմմտ. նաեւ հոլլանդերէն kous "գանկապան, արգանդ" լատ. calceusէ). "փոր" նշանակութիւնն երկու դիպաց մէջ ալ երկրորդական է. ըստ այսմ Zupitzaի հետ KZ XXXVII 399 կարելի է զčrěvijь կշռել իր. cuaran "հողաթափ" բառին հետ, եւ հոս -vr-ի դրափոխութեան անդրադարձոյն դէպք մը տեսնել. Ընդհակառակն բոլորովին մերժելու է Մէյէի այն ենթադրութիւնը թէ črěvo աղերս ունենայ գոթ. hairþraի հետ. տ. Etudes sur l'étymologie et le vocabulaire du vieux slave էջ 167)։

Հայերէն ու-ղ բառն երկբարբառ մը չունի, այլ u կամ ū (Թրքերէնի համաձայն՝ ū սպասելու է)։ Բայց այս պատճառաւ ստուգաբանութեան՝ մասին կասկած ունենալու պէտք չկայ։ Նաեւ հայերէն բառն ալ "խողովակաձեւի" նշանակութենէն սկսելով՝ զարգացած հասած է նշանակութեանց՝ "ճամբայ տներու միջեւ, փողոց քաղքի, գիւղի մէջ", եւ յետոյ ընդհանրապէս "ճանապարհ" [Հմմտ. փողոց եւ փող]. բայց ատոր՝ զարգացած է այնպէս՝ ինչպէս լատիներէնի մէջ՝ նաեւ "փոր" նշանակութիւնը։ Մի միայն ասկէ կը մեկնուի յ-ղի, յ-ղանամ, Հմմտ. ալբ.

mbarse «յղի» յաւելով եկած barkē «փոր» (BB XX 238 KZ XXXVI 323)։ Եւ որովհետեւ հայերէնի մէջ -ղ (անշուշտ հնդեւր. -lo-) ածական վերջաւորութիւն մը գոյութիւն ունի (գ. օր. Հիւ-Բեղ § 55. որմէ բազմաթիւ -ղէն վերջաւորող անդրագոյն կազմութիւններ՝ Հիւ-Բեղէն եւն, միւս օրինակները տես KZ XXXVIII 226), հաւանական կը համարիմ թէ ուղէղ բառն ալ (զոր Բուգգէ Beiträge էջ 39 կ'ուզէ կշռել հնդկ. sarala- «ուղիղ» բառին հետ, որ ճշդիւ չի համաձայնիր) այս տեղւոյ կը վերաբերի, եւ ըստ ինքեան «գլանաձեւ» կը նշանակէ։

§ 67. Հայ. խոտ սեռ. խոտոյ բառը շատ կը յիշեցընէ զԹրք. (օսմ. յակուտ.) ot «խոտ» (նախաւոր o սուղ ձայնաւորով)։ Համմտ. նաեւ օսմ. kuru ot = «չոր խոտ, խոտ»։ Ասկէ են ածանցումներն՝ otar-mak «արածել, ճարակել, թունաւորել» (համմտ. նշանակութեան կողմանէ ռուս. о-травить «թունաւորել» եւ травить «ճարակեցընել», трава «խոտ»)։ Կ'երեւայ թէ այս բառը նաեւ մոնղոլերէնի մէջ մտած է. ota-či «բժիշկ»։ Սակայն Թրք. ot բառը նախահայկ. *xoto-ձեւէն չի մեկնուիր, այլ միայն *hoto-է։ Սակայն հայերէնի մէջ չափով մը տատանում մը կայ խ եւ հ ձայներուն միջեւ, համմտ. Հեղձ-ունեմ = խեղդ § 50, խոյ եւ հոյ § 61, նախդիրներու՝ նախ եւ նահ-, Հիւբշման I, 200. ուրիշներ՝ առ Բուգգէի KZ XXXII 41։ Խոտ բառը՝ որ կարեւոր ածականներու հետ (գ. օր. անդխփան, չոր) նաեւ «մոլախոտ» ալ կը նշանակէ, կրնար ժողովրդական ստուգաբանութեամբ խոտել բառին հետ կապակցութեան բերուած ըլլալ։ Ըստ այսմ եթէ խոտ *hotē ծագում առած է, այն ատեն զայն յաջորդ բառերուն հետ կը կշռեմ. հսլ. sadъ «φυτόν, planta, բոյս» սլովէն. sad «միրգ» ռուս. садъ «պարտէզ»։ Սլաւական բառն է հնդեւր. *sōdo-,

արդէն բաց բաղաձայն էր. աւելի տարակուսական է այն կէտը թէ այս բաց բաղաձայնի արտասանութիւնն ընդունելո՞ւ է արդեօք հայերէնէ եղած փոխառութեանց ժամանակին համար. յամենայն դէպս ճի համար միայն այն ատեն բացուած արտասանութիւն ընդունելու է, եթէ նոյն միջոցին ձայնաւոր ձայնից միջեւ՝ նաեւ ձ եւ ց ալ բացուած ըլլային. (Հմմտ. ասոր նկատմամբ § 61)։ Եթէ Թրքերէն ճ ձայնը բաց բաղաձայն չէր, այն ատեն Թրք. լեզուին մէջ ս-անման ձայն մը գոյութիւն չունէր, եւ ըստ այսմ Թրքերը կրնային հայ. ծ ձայնը ճով տառադարձուցած ըլլալ. (Եթէ հայերէն բառին վերը տրուած լուծումը մերժուի եւ ս ձայնը հոս ճհէ ծագած մեկնուի, որ ինծի հաւանական չ'երեւար, այն ատեն կրնար մտածուիլ թէ նոյն ժամանակը հայերէնի մէջ դեռ ճ կ'արտասանուէր)։ [Lidén Armenische Studien էջ 8 զուգորդ կը կշռէ այս բառերուս հետ՝ Հ. անգղ. tīber "սպանդ„ Հրգ. zëbar "սպանդ„ ուսկից փոխառեալ է Հ. Ֆրանս. toivre "արջառ„ Ֆինն. teuras "զենլիք„]։

Թէ Հայկազեան եւ թէ Ջախջախեանի բառարաններուն մէջ կ'ընդունուի թէ ղուորակ բառը փուորի հետ աղերս ունի. եւ սակ անկարելի չեմ համարիր. Հմմտ. գ-ննեմ, ղ-մբրեմ՝ § 54. Հիւբշման I, 303 դիտել կու տայ թէ ղուորակ փոխառեալ բառ մը չէ։

§ 69. Հին ու շատ տարածուած Թրքերէն բառն մըն է օսմ. kapu "դուռ„ օրխ. kapyg, որ հայ. կափուցանեմ բառը կը յիշեցնէ։ Եթէ նմանութիւնը բոլորովին պատահական չէ, այն ատեն անշուշտ պէտք է որ վերջանանց ց ձայնը բնիկ Թրքերէն ըլլայ։ Շատ տարածուած Թրքերէն բայարմատ մըն է՝ օսմ. kärt- "տաշել, փորել, կարել, քանդակել„ յակ. kärt- "բրել, կտրել,„, ալթայական գաւառաբարբառին մէջ kärt- (նաեւ "ծամել,

կրծել„ նշանակութեամբ). Հմմտ. այն մասին Հայ. Քերակ.՝ § 28: Յամենայն դէպս հնդեւրոպական է՝ օսմ. däri „մորթ„ կիրգիզ. teri, կազանթաթ. tire, ալթայերէն tärä, յակ. tirī, չուվաշ. tir, tirĕ. Վերջաւորութիւնը կը յիշեցնէ հայերէնի շատ արդասաբեր վերջաւորութիւնն -ի (ծագած -ii̯o-է եւ -ii̯ā-է): Մինչդեռ արմատը *der- մինչեւ ցայժմ հայերէնի մէջ ցանցառ միայն կ'երեւայ (Հմմտ. § 27): Սակայն յանդուգն ենթադրութիւն չէ՝ թէ կրնար թրքերէնի մէջ պատահաբար պահուած ըլլալ հայ լեզուի մէկ ստացուածքը, որ այլուստ կորսուած է: Բաւական շատ տարածուած օսմ. բառն dam „տանիք„ չի կրնար միեւնոյն ըլլալ տուն սեռ. տան հայ բառին հետ. բայց կրնար տոռը խնամի՝ այժմ կորսուած, կազմութեան մը վերաբերիլ. -am- պէտք ըլլայ հնդեւր. -m̥m-: Յայտնի փոխառեալ բառն՝ օսմ. apsak „populus“, չուվաշ. ëwës „կաղամախի„, հիմայ միայն գերմաներէնի եւ սլաւ լեզուի մէջ պահուած է, բայց կրնար երբեմն նաեւ հայերէնի մէջ ալ դոյութիւն ունեցած ըլլալ. (Նախահայ. -pʿs- փոխանակ -pʿ-ի. որ պատմական ժամանակին համար կը սպասուէր): Եթէ ոչ աշխարհագրական՝ գոնէ պատմական պատճառներու համար՝ լաւ կ'ըլլար խորշիլ այն կարծիքէն, թէ թրքերէնը նաեւ սլաւերէնէ հին փոխառեալ բառեր ունի (Հմմտ. ZDMG LVII 561):

Ինչպէս կ'երեւայ՝ օսմ. gäm շատ քիչ տարածուած բառ մըն է, որ կը նշանակէ „սանձ, գանդանաւանդ, երասանակ„: Անշուշտ güväm „սպառազէն, ձիազէն„ բառին հետ միեւնոյն չի կրնար ըլլալ, եւ ոչ ալ gäjim gäjmi հետ „ձիազէն, սպառազէն„ օրխ. kädim „զգեստ(աւորում), հանդերձ„: Բայց եւ այնպէս նաեւ ձայնի նմանութիւնը հայ. ճեմ, ճիմ բառին հետ (§ 34) պատահական պէտք ըլլայ: Ի հարկէ ց ձայնը՝ հայերէն

նուրբին գիմացը՝ կանոնաւոր էր (§ 63)։ Այն խնդիրը թէ արդեօք kiǰ խումբը փոխառութեանց ժամանակին արդէն č եղած չէ՞ր, տարակուսական կը մնայ՝ koč̌karի մասին եղած քննութիւնները նկատի առնելով (§ 61). եթէ այն խումբը տակաւին իբր kiǰ մնացած ըլլար, այն ատեն պէտք անշուշտ պարզ քմական ց մը յառաջ պիտի գար Թրքերէնի մէջ։ Բայց Թրքերէն բառին քիչ տարածուած ըլլալը կը վարանեցնէ զմարդ։ Աւելի տարակուսական կ'ըլլար՝ օր. givmäk gävmäk "կրծել, որոճել" բառն նախահայ. *kiǰō է ծագած մեկնել եւ հայ. žovati "ծամել" բառով համեմատել։ [Lidén, Armenische Studien էջ 68 čžovati կը կցէ կի-բառին հետ. հմմտ. յուն. μαστίχη "կիւ", μαστάζω "ծամել" բային քով]։

§ 70. Ցամաքային դէպս օր. torun "թոռ" բառը փոխ առնուած է հայ. Թոռն բառէն (տառադարձութիւնը տես § 27)։ Բայց այս բառը կրնար նոր հայերէնէ ալ անցած ըլլալ, վասն զի Թրքերէն գաւառականներուն մէջ շատ քիչ տարածուած է։ Սակայն շատ ալ նոր չէ․ որովհետեւ արդի հայերէնի ձեւը Թոռ է, եւ վերջաւոր ն-ի անկումն արդէն Միջին հայերէնի մէջ տեղի ունեցած է (Karst Hist. Gramm. էջ 101)։ *Torun* բառը կը գտնուի նաեւ Pavet de Courteilleի երկին մէջ. իսկ Radloff օրինակ կը բերէ օսմաներէնէ եւ Խրիմի գաւառաբարբառէն։ Ասոր նման է նաեւ այն՝ որ հայ. խաչ նոյնպէս օսմաներէնի ու Խրիմի գաւառականին մէջ կը գործածուի (xač, hač), եւ ի հարկէ այս բառը միայն արդի հայերէնէ կրնայ փոխառուած ըլլալ։ Արդի հայերէնէ փոխառուած ուրիշ բառ մըն է օր. panǯar "ճակնդեղ" հայ. բանջար. (նմանապէս օր. pinti "կեղտոտ՝" հայ. փնթի "աղտոտ")։

§ 71. Ինչպէս տեսանք, հայերէնէ փոխ առնուած Թրքերէն բառերուն (որոնց ամբողջական

հաւաքման մը չեմ կրնար առժամս ձեռնարկել) ստուար մէկ մասը մնացած է նաեւ մոնղոլերէնի մէջ, ասկայն միայն Թրքերէն լեզուի վերջնական օրինաց ազդեցութեանն ներքը։ Թրքերէնի եւ մոնղոլերէնի միջեւ եղած պէսպէս համաձայնութիւններն նաեւ այդպէս յառաջ եկած են անշուշտ անկէ՝ որ մոնղոլերէնը Թրքերէնէ փոխառեալ բառեր ընդունած է։ Թրքերէնէ փոխառեալ բառերուն կարգէն կը համարիմ նաեւ մոնղ. tengeri, tegri "աստուած" "երկինք", հմմտ. օրխ. tängri "երկինք", օսմ. tanry "աստուած"։ Իսկ ասի դարձեալ փոխառեալ բառ մըն է՝ ծագում առած բաբելոնեան-ասուրական քաղաքակրթութեան շրջանէն. հմմտ. ասուր. dingir "աստուած"։ Թրքերէնի ձայնաւորաց փոփոխականութիւնն ինծի անմեկնելի կ'ըլլար, եթէ բառը նախ մոնղոլերէնէ ծագում առած ըլլար. արդ հակառակն եթէ ասուրերէնէ կը ծագի յիշեալ բառը, այն ատեն կրնար այս այլակերպութիւնք ասուրական արտասանութեան մասնականութիւններէն մեկնուիլ։ Ինծի բոլորովին անհաւանական է թէ dingir-ի եւ Թրք. tängri բառին միջեւ եղած համաձայնութիւնք պատահական ըլլայ կամ ասուր.-Թրք. կարծուած նախնական ազգակցութեան արդիւնքը։ Ուրեմն մենք հոս վկայութիւն մ'ունինք թէ Թրքերը՝ հեռաւոր նախաժամանակի մը մէջ ալ բաբելոնեան-ասուրական քաղաքակրթութեան շրջանակէն շատ հեռու չէին բնակեր։

Նաեւ Հայք քաղաքակրթութեան շրջանակէն ազդեցութիւն կրած են, հմմտ. Պ. Ենսէնի դրածն ի IF Anz. XIV 61 հայ. քօխ բառին մասին (քօխան, քօխանալ (գ. եւ նխ.), քօխանորդ, քօխա-գ. օր. քօխա-քերեմ, քօքօխեմ) ասուր. pūxu "փոխարինութիւն". եւ Հիւբշման I 307՝ հայ. կնիք բառին նկատմամբ, ծագած ասուր. kunukku է "կնիք"։ — Mikkola (Finnisch-ugrische Forschungen

II 77 հմմտ. I 113 եւ հետեւ.) կ'ուզէ սլաւական kъnjiga «գիրք» բառն ալ տալ. kunukkuէ ծագած մեկնել։ Բայց յամենայն դէպս սխալ է Միկկոլայի վերականգնութիւնը նախասլաւական ձեւերուն իբր *kъnjiŋga եւ *kъnjeŋga. չեխ. kniha յոգն. սեռ. kněh բառն ըստ ձայնական օրինաց չէր կրնար ę ունեցած ըլլալ՝ որ նախաւոր խիստ բաղաձայններուն առջեւ միայն á, a կրնար տալ. պարզ շեղում մըն է kněh, որ ըստ կանոնի՝ նախասլաւ. ě ձայնէն պէտք էր ծագում ընդունիլ. նաեւ լեհ. księga բառն բան մը չ'ապացուցաներ. Նախաւոր ńը երկձայնաւորի եղած է եւ ռնգականացումը յաջորդող ձայնաւորին թողուցած է, որով սա իր որակութիւնը փոխած է։ Այս պատճառաւ Մունկաչի անշուշտ իրաւունք ունի ընդդէմ Միկկոլայի, երբ մաճ. könyv եւ մորդու. koňov թրքերէնէ ծագած կը ստուգաբանէ. ըստ Munkácsiի (Kelete szemle II 312) նաեւ սլաւ. kъnjiga թրքերէնէ փոխառեալ բառ մըն է, որ ինծի ալ բոլորովին անընդունելի չ'երեւար։ Բայց Միկկոլայ կրնար միշտ իրաւունք ունենալ սլաւ. kъnjiga բառն տալու. kunukkuին հետ համեմատելովն, մինչդեռ Շրադէրին (Reallexikon էջ 739) նոյն բառին գերմաներէնէ առած մեկնութիւնն անշուշտ սխալ է։ Ձայնաւորները թերեւս այնպէս փոխուած են՝ ինչպէս որ հայկ. կնիք բառին մէջ, ինչ որ անշուշտ անծանօթ լեզուի մը միջնորդութեանը կրնայ վերագրուիլ։ — Բաբելոնեան-ասորական քաղաքակրթութեան շրջանին հետ եղած այս հասարակաց յարաբերութիւնները կրնան վկայութիւն մ'ըլլալ թէ Հայք եւ Թուրքերը նախաժամանակի մէջ դրացի էին։

§ 72. Setälä ի թերթին Journal de la société finno-ougrienne XVII 4, 31 այն կարծիքն արտայայտած է թէ Փիններէնի մէջ՝ հայկական կամ թրակեան-փռիւգական լեզուէ մը փոխ առ-

նուած բառեր կը գտնուին։ Ցառաջ բերած օրինակներէն միայն ֆինն. orpo «որբ» բառը հայերէնի կը պատշաճի (որբ սեռ. որբոյ)։ Vilh. Thomsen աւելին կը հաղորդէ ինծի բերանացի. բայց չեմ համարձակիր վճիռ մը կտրելու։ Բոլորովին ձախողած մըն է Gleyeի գրութիւնը (Keleti szemle II 157—159) որ հայերէնի մէջ ֆիններէնէ փոխառեալ բառեր կը գտնէ. օրինակները բոլորովին նշանակութիւն չունեցող բաներ են. անոնք միայն այն ատեն կրնային նշանակութիւն ունենալ, եթէ Gleyeի բնաբանը ճիշդ հակառակը դարձուէր, բայց այս ալ հազիւ մէկ դէպքի մէջ միայն կարելի է. նաեւ ֆինն. vesi սեռ. veden (արմատ vete-) բառն ալ անշուշտ չի կրնար մեկնուիլ *gu̯eto- կամ *gu̯etā ձեւէն, որ հայ. գետ բառին նախաձեւն է. եւ դժուարաւ կրնանք առնուած ըսել այն նախաւոր ժամանակէն՝ երբ հնդեւր. u̯ ձայնը հայերէնի մէջ տակաւին gu̯ եղած չէր։ — Setäläի դէմ կը հակաճառի Munkácsi ի Keleti szemle IV 183։ —

§ 73. Մունկաչի (Kelete szemle I 156 եւ հետեւ.) կ'ընդունի թէ թրքերէնի մէջ արիական լեզուէ հին փոխառեալ բառեր կան։ Իւր օրինակներուն մեծագոյն մասը՝ գտնէ իրբեւ հին փոխառեալ բառեր, ինծի անհաւատալի կ'երեւան։ Ամենէն նշանաւոր օրինակն է օսմ. jük «կապոց, բեռ» բառը, որ թրքական բարբառներուն մէջ շատ տարածուած է (նաեւ չուվաշ. šȯk, šok) եւ ռուսերէնի մէջ ալ մտած իբր вьюкъ «բեռ» (գրաստու). ըստ Մունկաչիի այս բառին հիմն է հհնդկ. yugá-, նպ. ǰuγ (= հայ. լուծ)։ Ձայնական հանգամանքները շատ կը յիշեցնեն öküz բառին պայմանները՝ § 63. բայց öküz հազիւ թէ կարենայ արիական լեզուէ ծագում առնուլ, ուր -ks- չկայ, այլ -kš -xš։ Նաեւ թերեւս Թրքերն հին ժամանակն այնչափ դէպ ի արեւելեան կողմը

չէին բնակիր, որպէս զի Արիացւոց հետ շփում ունենային։

§ 74. Հին հայ-թրքական յարաբերութեանց ժամանակը կարելի չէ ճշդիւ որոշել։ Եթէ Գ. Ե ն ս է ն ի հատական տեսութիւնը հաստատուի, այն ատեն առ ժամանակախօսական կռուան մը կ՚ըլլայ։ Թրքերէնի մէջ գտնուող հայերէնէ փոխառեալ բառերն այնպիսի հնամի երեւոյթ մ՚ունին, ինչպիսի են Ենսէնի կարդացած հատեան ձեւերը։ Իսկ հատեան արձանագրութիւնքն նախաքրիստոնեան առաջին հազարամեակին առաջին կէսէն են։ Նաեւ Հայոց պատմութեան մէջ ծանօթ իրողութիւնները հաւանական կ՚ընծայեցընեն ինծի այն կէտը՝ թէ Թրքերէնի մէջ գտնուող հայերէնէ փոխառեալ բառերը յամենայն դէպս պէտք են հնագոյն ըլլալ 500 տարիէն՝ Ն. Ք.։

Եթէ ուզուի յուն. ἔλαιον եւ οἶνος իբր հայերէնէ փոխառեալ բառեր մեկնել, ինչպէս որ իրաք մեկնուած է կամ կը մեկնուի տակաւին, այն ժամանակ այս փոխառութիւնք շատ աւելի յառաջ եղած պիտի ըլլայ, այսինքն՝ մինչեւ նախաքրիստոնեան երկրորդ հազարամեակը վեր ելլելու է։ Ես հոս աւելի սիրով նախնական ազգակցութիւն կ՚ընդունիմ։

Գ.

## ՀԱՅԵՐԷՆԻ ՅՈԳՆԱԿԻ ԿԱԶՄՈՒԹԻՒՆՆԵՐԸ

§ 75. Ծանօթ է որ հայերէնի դոյականներուն յոգնակին՝ ըստ կանոնի՝ -ք գրով կը կազմուի։ Այս -ք տառին ծագումը գտնելու համար՝ Gleye (Keleti szemle II. վերոյիշեալ յօդուածին մէջ) շատ հեռուները կ'երթայ. կը կարծէ թէ լապպերէնի ու մաճառերէնի -k փոխառեալ յոգնակի վերջաւորութիւնն ըլլայ։ Շատ չի հեռանար Schuchardt, WZKM, XVI, 304. ըստ Շուխարդտի՝ հայ. ք քարթվելերենէ ծագում կ'առնու։ Սակայն ես չեմ կրնար համբաւաւոր լեզուաքննին գիտնոյս հետ համաձայնիլ, վասն զի հայ. -ք վրացերէն չէ, այլ հայերէն (տ. Հեղինակիս գրածն ի Թերթին KZ, XXXVIII, 209—227)։

§ 76. Սակայն այս յոգնակի կազմութեան քով գոյութիւն ունին ուրիշ յոգնակի կազմութիւններ ալ, որոնք եզակի հաւաքականաց ձեւն ունին։ Այս յոգնակի կազմութիւնները Հին հայերէնի մէջ կղզիացած են, բայց Միջին եւ Արդի հայերէնի մէջ՝ տիրող։ Միջին հայերէնի մէջ կը գտնուին՝ ի միջի այլոց, յոգնակի կազմող վերջաւորութիւններս՝ -եր, -նի, -ստի, -դի (արտասանուած -di). դարձեալ -ան վերջաւորող ձեւեր, եւ վերջապէս ստուգաբանօրէն բոլորովին յայտնի -ստան վերջաւորութիւնը։ Իրանական փոխառեալ բառ մըն է -ստան, որ հին հայերէնի մէջ գոյութիւն ունի զ. օր. բառերուս մէջ՝ Հայաստան, Ծառաստան եւն։ Ասկէ՝ Կիլիկեան հայերէնի եւ քանի մը նորագոյն գաւառականներու մէջ՝ դիւրահասկանալի եղանակաւ՝ հաւաքական (= յոգնակի) վերջաւորութիւն մը յառաջ եկած է, հմմտ.

Karst, Hist. Gramm. էջ 197։ Արդի հայերէն գրաւոր լեզուաց մէջ սովորական յոգնակի կազմութիւններն են՝ -եր (միավանկ բառերուն քով), իսկ -ներ (բազմավանկ բառերուն)։ -Ներ ամփոփեալ ձեւը յառաջ եկած է միջին հայերէնի -նի եւ -եր վերջաւորութեանց կուտակմամբը (Կարստ, էջ 188 եւ հետեւ.)։

Յոգնակւոյն տեղ եզակի հաւաքականներու գործածելը արդէն հին հայերէնի մէջ իսկ խորունկ արմատներ ունի։ Մօրք բառին իբրեւ յոգնակի կը բանի եզակի հաւաքականը՝ մօրքէկ, սեռ. մօրք-կան, որուն վերջաւորութիւնը կը յիշեցնէ հին-սկանդ. *systkin mæðgin feðgin* (Հեղին. KZ, XXXVIII, 218. հմմտ. Joh. Schmidt, Pluralbild. էջ 16)։ Նաեւ գոյականի մը սկզբնական պարզ ձեւը կրնայ հաւաքական ըլլալ եւ ապէ ալ իբրեւ յոգնակի գործածուիլ, այսպէս՝ ծառ, ("ծառեր, մօզք՝ Ծն. Ա. 11. հմմտ. Այտընեան, քննական քերականութիւն արդի հայերէնի լեզուի, էջ 477)։ Միւս հնդեւր. լեզուաց մէջ ալ նման է, հմմտ. կըմր. *adar* "թռչուններ", *gwydd* "ծառեր" (հին եզակի ձեւ), որոնց համար եզակի է *ederyn*, *gwydden*. հմմտ. ռուս. жемчугъ "մարգարիտներ", жемчужина "մարգարիտ" եւն. Դանիերէնի մէջ ալ հին պարզ եզակի ձեւերուն յոգնական կիրարկութեան օրինակները՝ տես P. K. Thorsenի, Festskrift til Vilh. Thomsen էջ 328 եւ հետեւ.։ Joh. Schmidt չէզոքներու յոգնակի կազմութեանց մասին իր գրած գրքին մէջ յառաջ բերած է յոգնակի իմաստով գործածուող հաւաքականներու օրինակները՝ որ գերման ու սլաւ լեզուաց մէջ կը գտնուին. ուսկից յայտնապէս կը տեսնուի թէ այսպիսի հաւաքականներ յընթացս ժամանակին շատ անգամ յոգնակի հոլովում ընդունած են։ Նոյնը հանդիպած է նաեւ հայերէնի մէջ. հմմտ. կանայ-ք կանան-ց. վերը. § 47։

Հին հայերէնի այս ամէն դէպքերուն մէջ մինչեւ հիմայ դեռ մէկուն միտքն եկած չէ հոս հայերէնին վրայ օտար ազդեցութիւն մը գուշակել։ Եւ նաեւ Հին Հայերէնի ուսկաւաւոր միջին եւ Նոր Հայերէնին պէս կազմուած օրինակներուն համար ալ՝ նոյնպէս մէկուն միտքը պիտի չգար այս ենթադրութիւնն ընելու, եթէ միայն միջին եւ Նոր Հայերէնին մէջ այս վերջաւորութեանց չափազանց առատութեամբ գործածուիլն օտարոտի չերեւար։ Սակայն այս չափազանց առատութիւնն ալ ամենեւին պէտք չէր անսովոր երեւալ, վասն զի ճիշդ միեւնոյն բանը կելտերէնի մէջ ալ կայ։ Իրերէնը գրեթէ միեւնոյն աստիճանին վրայ կը գտնուի Հին Հայերէնի հետ. Հին իրլ. én-laith (այսինքն՝ "Թռչնոց պետութիւն") յոգն. է én "Թռչուն". բառին, ríg-rad, gním-rad, dét-gein, յոգնակիներն են՝ rí "Թագաւոր", gním "գործ", dét "ատամն" բառերուն. բայց եւ այնպէս ընդհանուր տիրողն է ժառանգեալ հնդեւր. յոգնական կազմութիւնը։ Ընդհակառակն կըմրերէնի եւ բրետոներէնի մէջ հաւաքական յոգնակիներ շատ առատ ու կանոնաւոր են. վերը օրինակները յառաջ բերի, որ կը ցուցընեն թէ ինչպէս հիմնական ձեւը իբր հաւաքական կը բանի, մինչդեռ ածանց մ'եզական նշանակութիւն կ'ունենայ. սակայն յաճախ վերջաւորութեամբ մը կազմուած են հաւաքականները. կըմր. llestri, cewri յոգն. llestr "անօթ", cawr "հսկայ" բառերուն. merched, llydnod յոգն. են merch "աղջիկ" եւ llwdn "վայրի անասուն" բառերուն, եւն։ Միայն ստուգաբանական ուսումնասիրութեամբ կարելի է այս հաւաքական կազմութիւնները զանազանել Հին հնդեւրոպական յոգնակի կազմութեան մնացորդներէն (ychen, brodyr յոգն. իսկ ych "եզն", brawd "եղբայր", եղակի)։ Այլեւայլ հաւաքական կազմութիւնները (ինչպէս նաեւ միջին Հայերէնի մէջ, Karst էջ 191) մասամբ

նշանակութեան տեսակներու համեմատ բաժնուած են. այսպէս՝ -od կըմրերէնի մէջ անասնոյ անուանց համար կը գործածուի, տես քերականութիւնները Rowlandի (§ 116) եւ Spurrellի (§ 116). Բրետոներէնի մէջ անասնոց անուններն՝ -et յոգնակի վերջաւորութիւնն ունին: Բրետ. ki «շուն» բառին քով իբր յոգնակի կը բանի chas (բուն գաղղիերէնէ փոխառեալ բառ. այսինքն՝ «որս»), բրետ. den «մարդ» բառին յոգնակին է tud (այս է՝ ժողովուրդ): Բայց փոխառեալ յոգնակի վերջաւորութիւն մ՚ունին բառերս՝ բրետ. kloc'h, յոգն. kleier, ialc'h «դրամի քսակ», յոգն. ilc'hier եւն, եւն. (Հմմտ. գաղ. cloche, clocher, լատ. arma, armārium). Հմմտ. այս նկատմամբ միջին հայերէնի փոխառեալ -ոփանը:

§ 77. Արդ որովհետեւ հաւաքականաց իբրեւ յոգնական գործածութիւնը գոյութիւն ունի ամէն հնդեւրոպական լեզուաց մէջ (ուր մասամբ նոյն իսկ վերջաւոր կազմութեան համաձայնութիւնը կրնայ ապացուցուիլ) եւ ըստ դիպաց երբեմն չափազանց առատութեամբ ալ կը զարգանայ, ու նոյն իսկ նախահնդեւրոպական չէզոքներուն յոգնակի կազմութիւնն ալ հաւաքականներու արդիւնք է, անոր համար անիմաստ բան մըն է հաւաքական յոգնակիները իբրեւ հնդեւր. լեզուաց օտար երեւոյթ մը նշանակել: Իրօք ալ հնդեւրոպագէտներն շատ հեռու են այսպէս բան մը իբրեւ սկզբունք հաստատելէ: Մանաւանդ թէ անկեղծութեամբ աշխատած են՝ պատմական անկանոն հնդեւր. յոգնակի կազմութիւնը ծագած մեկնել հին կանոնաւոր հոլովմանէ մը, որուն մէջ -s իբր յոգնակի նշան կը բանէր, մինչդեռ հոլովաց փոփոխութիւնքը եզակւոյն հետ նոյն էին: Եւ ասոր նկատմամբ յայտնուած այլեւայլ ենթադրութիւնները բոլորովին հաւանական են. շատ դիւրաւ կ՚ըմբռնուի օր. աղագաւ որ յոգն. գործիական

հոլովին *-bhis, վերջաւորութիւնն կերպարանափոխութիւն մ'ըլլայ նախաւոր՝ թուի նկատմամբ անտարբեր՝ *-bhi ձեւի մը. այսպիսի անտարբեր ձեւ մը կրնար նոյն իսկ յուն. -φι վերջաւորութեան մէջ տակաւին անկորուստ մնացած ըլլալ. եւ ասի անոր համար կրնայ անտարբեր մնացած ըլլալ, վասն զի յունարէնի հոլովական դրութեան մէջ ընդունուած չէր, այլ կես մակբայակերպ կը բանէր։ Սոյնպէս կ'երեւայ թէ պայծառ է յոգն. հայցականին վերջաւորութիւնը՝ *-ns (որուն տեղ նաեւ *-ms ալ կրնայ դրուիլ)։ Յոգն. հայցականի ձեւը նախապէս միեւնոյն եղած պիտի ըլլայ յոգն. ուղղականին հետ։ Ստուգիւ -m վերջաւորող ձեւը եզակիի մէջ նախապէս թէ՛ ուղղական եւ թէ՛ հայցական էր (հմմտ. Uhlenbeck, IF, XII 170). բայց երբ այս ձեւը հայցականի պաշտօն ընդունած՝ եւ o-արմատներէն տարածուած էր ամէն կարգի արմատներու վրայ, այն ատեն -ms վերջաւորութիւնը կրնար տեսակ մը համեմատական կազմութեամբ դիւրաւ զարգանալ։ Ուստի կրնայ շատ լաւ մտածուիլ թէ հնդեւր. անկանոն յոգնակւոյ կազմութիւնը զարգացած ըլլայ մոնղոլերէնի նման դրութենէ մը, ուր յոգնական ածանցական վերջաւորութեամբ մը կազմուած էր, բայց հոլովումն՝ երկու թուին մէջ ալ՝ նոյնակերպ էր։ — Անոր համար ով որ բաղձանք ունի՝ կարող է հնդեւր. յոգնական -sը նոյնացընել վերջաւորութեանց հետ՝ մանչ. -sa, մոնղ. -s, թրք. -z՝ § 59. եւ ասի այնչափ աւելի՝ որչափ որ յոգնակի միւս վերջաւորութիւնը՝ մանչ. -ta, մոնղ. -d, թրք. -t կրնար միեւնոյն ըլլալ հնդեւր. -dի հետ՝ չէզոք դերանուանց մէջ. կալմիւքերէն -d ձեւերը յաճախ ուղղակի հնդեւր. -d ձեւերով կրնան թարգմանուիլ. busu-d „aliud“ (այլ), տես բառահաւաքումը Jülgի քով. Die Märchen des Siddhi-Kür, Leipzig 1866. tede-ni (-ni հայց.

վերջաւորութիւն) "այս" կը գտնուի բնագրին մէջ, էջ 39, 3. միեւնոյն նշանակութեամբ՝ ընդարձակեալ բառերս՝ tede-gēr, ede-gēr՝ էջ 42, 1. tede "այս" (յոգն.) կրնար բոլորովին նոյն ըլլալ հնդեւր. *todi հետ: Նաեւ տարօրինակ կերպով շարժական -ռ վերջաւորը Մանջ.-մոնղ.-թուրք լեզուաց մէջ՝ կրնար միեւնոյն ըլլալ օ-արմատներու հնդեւր. -mi հետ (*vergom յուն. ἔργον), որ նոյնպէս շարժական է (ածանցմանց եւ բարդութեանց մէջ չ'երեւնար): —

Բայց հնդեւր. հին յոգնակի հոլովումը հաւաքական կազմութենէ զանազանողը ճիշդ անկանոն հոլովումն է, եւ ոչ թէ նշանակութիւնը: Յոգնակւոյ եւ հաւաքականի գաղափարները տեսականօրէն դիւրաւ իրարմէ կը զանազանուին, բայց գործնականին մէջ երբեք իրարմէ որոշ չեն բաժնուիր: Նաեւ հնդեւր. -s- յոգնակին թէ՛ հաւաքական ու թէ բուն յոգնակի իմաստով կրնայ գործածուիլ: Բայց s- յոգնակի կազմութիւնն իրեն յատուկ անկանոն հոլովման հետ՝ տակաւին երկրորդ արտաքին ծանուցիչ մ'ալ ունի՝ ածականաց, դերանուանց եւ բայաձեւերուն (հոլովական) համաձայնութիւնը: Այս համաձայնութեամբ հին յոգնակի կազմութիւնը որոշակի կը բաժնուի նորածագ հաւաքական կազմութիւններէն, եւ այս վերջինք սովորաբար իբրեւ յոգնակի կազմութիւններ չեն կրնար մնալ՝ եթէ միեւնոյն ատեն անկանոն յոգնակի հոլովումը չընդունին: Հաւաքական կազմութիւնները կրնան՝ առանց անկանոն հոլովում մ'առնելով իրենց հաւաքական նկարագիր կորսնցընելու, որոշ յոգնակի ձեւեր ըլլալ՝ միայն այն լեզուաց մէջ, ուր ածականաց համաձայնութիւնը նուրբ թելէ մը կը կախուի, ինչպէս հայերէնի մէջ, կամ ուր հոլովի փոփոխութիւնը բոլորովին դադրած է, զ. օր. կըմրերէնի եւ Բրետոներէնի

մէջ։ Վասն զի բային համաձայնութիւնը դիւրաւ կրնայ կատարուիլ՝ առանց գոյականին հոլովման վրայ ազդեցութիւն ունենալու. կը յիշատակեմ միայն յաջորդս՝ ἡ πληθὺς ἐπὶ νῆας Ἀχαιῶν ἀπονέοντο Il. ο 305 կամ ὣς φασαν ἡ πληθύς Il. β. 278։

Ի հարկէ, ածականաց համաձայնութիւնը նախաւոր յատկութիւն մը չէ, եւ հնդեւր. լեզուաց մէջ պահուած են այլեւայլ մնացորդներ հնագոյն վիճակի մը։ Նախ՝ բարդութիւնները. յուն. ἀκρόπολις ἀκροπόλεις (հին իրերէնի մէջ բարդութեան օգնութեամբ նախակից ածականները զերծ մնացած են համաձայնութենէն հմմտ. Հեղինակիս գրածն ի թերթին KZ, XXXV, 441)։ Նոյնպէս անհոլով թուական ածականները, լատ. quot, tot եւն. (Joh. Schmidt, Pluralbild. էջ 292). նաեւ գոյականներու համաձայնութիւնը միշտ կատարուած չէ յոգնական այն գաղափարին հետ՝ որ թուական ածականներուն մէջ կայ. հհնդկ. *saptá nāma* (Joh. Schmidt, անդ էջ 280)։ Վերջապէս Joh. Schmidt (էջ 276 եւ հետեւ.) ցուցած էր որ ուղ. հայց. եզ. չէզոքը կրնայ յոգնակիի մը քով մնալ (հմմտ. Oldenberg, IF, Anz. XV, 26)։ Հոլովմանց մէջ եղած համաձայնութեան այն պակասութիւնը՝ որ կայ գ. օր. *triṣú rōcanē* (Pluralb. էջ 303) կամ եզակի գործիական *návyasā vácas* դիպաց մէջ՝ Joh. Schmidt (անդ՝ էջ 305) հնդկերէնի մէկ նորաձեւութիւնը կը համարի. բայց ինծի կ'երեւայ թէ շատ հնագոյն վիճակի մը մնացորդն է։ Զիարդ եւ իցէ, կարելի չէ տարակուսիլ որ հայերէնի մէջ տեսնուած համաձայնութեան պակասութիւնը շատ աւելի հնագոյն հանգամանքներէ յառաջ կու գայ, եւ ըստ մասին՝ հնդկերէնին մէջ եղած դէպքերուն հետ զուգընթաց է։

Այս տեսակէտէն կը մեկնուի թուական ածականին կազմութիւնը (հմմտ. կանոնները Մէյէի

քով Esquisse էջ 105)։ Զհոլովող թուականէ մը վերջը գոյականն եզակի կը մնայ. հինգ աւր (հմմտ. վերը՝ saptá nāma սեռ. հինգ աւուր։ Ասոր հակառակը հոլովական թուականներուն մէջ համաձայնութեան հարկը կ'ազդէ. երեք աւուրք։ Գոյականը յոգնակի կ'ըլլայ դարձեալ՝ եթէ թուական ածական մը յաջորդէ. աւուրք հինգ սեռ. աւուրց հինգ։ Այս պարագան անով կը մեկնուի որ թուականն այս դրից մէջ ի սկզբան առդ աւելի բացայայտչի՝ քան թէ վերադիրի զօրութիւն ունէր, եւ բացայայտչի համաձայնութիւնը ամէնէն մեծ հնութեան մէջ կը տեսնուի (Բրուգման Kurze vgl. Gramm. էջ 642)։ Թուական ածականաց օրինակին համեմատ նաեւ իմ եւ իւր դերանունք անհոլով կրնան մնալ. աւուրք իւր, յետ ամաց իւր։ Ածական մը կրնայ գոյականին առջեւ անհոլով մնալ. քաղաքամ աշխարհաւ, ի սուրբ մարմինս, անհնարին մահուամբք. (Մալխասեանց՝ Գրաբարի համաձայնութիւնը Թիֆլիս 1892 էջ 93—94)։ Յոգն. ուղ. հայց. հոլովներուն մէջ այս դէպքը կը հանդիպի ամէն ածականի (հմմտ. հնդկերէնի անհամաձայնութիւնը չէզ. յոգն. ուղ. հայց. հոլովներուն մէջ), ընդհակառակը միւս հոլովներուն մէջ նոյնը տեղի կ'ունենայ միայն այն բազմաթիւ (բազմավանկ) ածականներուն մէջ, որոնք ընդհանրապէս հոլովելի չեն կամ սովորաբար չեն հոլովիր. (այստեղ համեմատելու է թերեւս մասամբ հին իրերէնի վիճակը. i- եւ u-արմատներու քով՝ բաղադրութեան յօդակապին մէջ ձայնաւորի մը պակսիլը շատ բնական կ'ըլլար, վասն զի նախաւոր i կամ u մը կը կորսուի ոչ-վերջին վանկին մէջ)։ Ստացական դերանունները՝ նաեւ յետադաս ալ ըլլալով՝ կրնան յոգն. ուղ. եւ հայց. հոլովներուն մէջ անփոփոխ մնալ. իմ ձեռն կամ ձեռն իմ, զիմ ձեռս կամ զձեռս իմ. այս պարագան անով կը մեկնուի՝ որ այս բառերն

ի սկզբան անդ ընդհանրապէս անփոփոխ էին, վասն զի առանք սեռական էին։ Սակայն շատ հետաքրքրական են սա դէպքերը զ. օր. յուսա-րէնս տառն, յաստուածածին տառն (Եզնիկ Դ։ 1.) գոյականը յոգն. հայցական (= ներգոյկ.) կը մնայ, իսկ առացական գերանունը եզակի ներ-գոյական (հմմտ. հնդկ. trisu rōcanē ևն.)։ Մէյէ (Esquisse էջ 103) կը կարծէ թէ հայերէնի այս անհամաձայնութիւնը կրնայ մեկնուիլ այն ենթադրութեամբ, թէ գոյականներուն յոգնակին նախնաբար վերջաւորութիւն մ'ունեցած չէր. հնդեւր. -s վերջաձայնը հետակորոյս կորսուած ըլլայ. բայց վերջէն "բնորոշ ով մը" աւելցած ըլլայ, միայն հոն, "ուր պայծառու-թիւնը զայն կը պահանջէր"։ Սակայն Մէյէ չ'ըսեր թէ ինչ պիտի ըլլայ այս յաւելեալ տարրը՝ որ մի-միայն բաղաձայնէ մը բաղկացած է՝ առանց ձայնա-ւորի. եւ ասուդիւ միայն դիպուածով մը չէ որ Մէյէ իւր կարծիքը միայն կ'ակնարկէ, բայց մինչեւ վերջը չի մտածեր, վասն զի ընդհանրապէս այս կարծիքը մինչեւ վերջը մտածել կարելի չէ. եւ բաց ասկէ՝ եթէ նոյն իսկ ուղիղ ալ ըլլայ, ան-համաձայնական հոլովներու միայն մէկ չնչին մասը կը մեկնուի։ Ով որ իրողութիւններով կ'առաջ-նորդուի, չի կրնար տարակուսիլ թէ հայերէնի անհամաձայնութիւնը նախահնդեւր. համաձայնա-կան դրութեան թերութեանց արդիւնքն է, որոնք այս տեղ միւս հնդեւր. լեզուաց նման անհե-տացած չեն, այլ աւելի՛ տարածուած։ Առնք պատմական ժամանակին մէջ աւելի ալ կը տա-րածուին։ Արդի հայերէնի մէջ տիրող դրութիւնն այն է՝ որ ածականները միշտ գոյականէն յառաջ կը դրուին ու միշտ ալ անհոլով են. Թուա-կաններէն (եւ թիւ ցուցընող ուրիշ առացուածք-ներէ) ետքը գոյականն եզակի կը մնայ. Ըրկու—Ընտարաւորա—Ընթան, շատ օրինակ, նոր պարսկերէն ալ

բա-ալան ‡ան-ալ-ըն-ամբ բա- ա-նք, -ր-ն‡ . . . ։ Արդի Հայերէնին կանոններն արդէն միջին Հայերէնի մէջ էապէս զարգացած լմնցած էին։ (Կարստ, էջ 392 եւ 396)։

Այսպէս արդի Հայերէնը ամենայաջող եղանակաւ զերծած ազատած է նախահնդեւրոպական համաձայնութեան անլուծանելի խառնակութենէն, որ դեռ այս օրս՝ երկար հազարամեակներէ վերջն ալ՝ գրեթէ ամէն հնդեւրոպական լեզուի վրայ կը տիրէ, եւ վերադարձած է տրամաբանական այն պարզութեան, որուն համար մենք այլեւս Թրքաց եւ Մոնղոլներուն պէտք ենք նախանձիլ. (մոնղոլերէնի կազմութեան եւ յոգնակի հոլովման մասին տես I. J. Schmidtի քերականութիւնը § 56, § 43 եւ § 42)։ Զարգացման այլեւայլ հնարաւորութեանց մէջ ճիշդ այս ճամբան բռնել կարելի է որ բոլորովին անկախ եղած չ'ըլլար դրացի ոչ-հնդեւրոպական լեզուաց ազդեցութենէն. բայց այսու ամենայնիւ այս դրացիութիւնն զարգացման մէջ օտար բան մը մտցուցած չէ. արդի Հայերէնի համաձայնութիւնը արդիւնքն է հին Հայերէնին, հին Հայերէնինն ալ՝ նախահնդեւրոպականին։ Եւ իրն այսպէս է նաեւ միաբանութեան միւս կէտերուն մէջ, որ կը տեսնուին արդի Հայերէն ու Թուրք-մոնղոլական համաձայնութեանց միջեւ. օրինակի համար՝ արդի Հայերէնի մէջ յետադաս նախադրութեանց կիրարկութիւնն արդիւնքն է հին Հայերէնի մէջ տեսնուած նախադաս նախադրութեանց աղքատութեան, եւ արդի Հայերէնի համաձայնութենէն սկզբամբ տարբեր չէ ղ. օր. սա նախադասութիւնը՝ ել բնքն ղ-ր‡-ն ճ-ն-դ-ր‡ յ-ելքն- (Եզնիկ Դ. 1)։ Ինչպէս ըսած եմ ի Թերթին KZ XXIX 242, արդի Հայերէնի -ած եւ -ուած վերջաւորող դերբայներուն գործածութիւնը՝ ակնյայտնի կերպով կը համաձայնի Թրքերէն -duk եւն (մոնղոլ. -uksan) վերջաւորող բայանուանց

գործածութեան հետ. բայց իրականին ծագած է ուղղակի հին հայերէնի վերաբերող այն յատկութենէն, որ նախաւոր գոյականները կրնային ածական ըլլալ: Արդի հայերէնի մէջ կայ կանոնաւոր կրաւորական կազմութիւն մը եւ տեսակ մը գործակցական կազմութիւն մը՝ ածանցեալ բայարմատներով (-ու- կրաւորականի նշան է, -ցն-՝ գործակցականին, զոր օր. գործա-ցն-էմ եւ գործէմ). այստեղ ալ տանց զուտ հայկական ծագումն այնպէս պայծառ է՝ ինչպէս նաեւ դիպացս զուգընթացութիւնը թրքերէնի եւ մոնղոլերէնի հետ: — Կարստ. Hist. Gramm. էջ 407 կը համարի թէ համաձայնական այս միաբանութիւնը թրքերէնի հետ՝ իբր առանձնայատկութիւն մ՚ըլլայ արեւմտեան հայ գրաւոր բարբառին. բայց արեւելեան հայերէնն ալ այս կողմանէ հազիւ թէ շեղի արեւմտեան հայերէնէն. Մալխասեանցի (էջ 11) արեւելեան հայերէնով գրած Համաձայնութենէն նախադասութիւն մը՝ զ. օր. Հայաստանում գոյութիւն ունեցող բարբառներից մէկը, ուղղակի յարացուցական օրինակ մըն է յիշատակուած միաբանութեանը:

§ 78. Միջին եւ արդի հայերէնի յոգնակիի գրութեան համար գետինը պատրաստուած էր արդէն հին հայերէնի վերադրական ածականին անհամաձայնութեամբն իրենց գոյականին հետ, եւ որ բնիկ հնդեւրոպական սկզբնաւորութենէ ծագելով կազմուած էր (§ 77): Նոյնպէս հին հայերէնի մէջ կային բազմաթիւ հաւաքականներ, որոնց համընթացութիւնը՝ միւս հնդեւր. լեզուաց հետ՝ աչքի կը զարնէ (§ 76): Այս հաւաքականներուն մէջ գոյութիւն ունին արդէն այնպիսի օրինակներ, որոնք միջին եւ արդի հայերէնի մէջ ընդհանրացած ձեւակերտները կը ցուցընեն, եւ այս ձեւակերտներն ալ իսկոյն ցոյց կու տան իրենց ազգակցութիւնն հայերէնի ուրիշ եւ հնդեւրոպական ձեւակերտաց գրութեան հետ:

Միջին հայերէնի -նի վերջաւորութիւնը ծագում առած է հին հայ. -անի վերջաւորութենէն։ Հին հայերէնի օրինակները հրատարակած է Karst, Hist. Gramm. էջ 185. ողորմանի՝ ողորմ բառէն, եւն։ Ի հարկէ ասիկա անդրադարձային կազմութիւն մըն է -ան հաւաքական ձեւակերտին ածանցականութեամբ հայերէնի մէջ արտաքոյ կարգի արգասաբեր -ի ձեւակերտին՝ որ ըստ մասին -ĭi̯o-է յառաջ եկած է եւ ըստ մասին ալ՝ -ĭi̯ā- է։ Այս -ĭi̯o- եւ -ĭi̯ā- ձեւերուն միջեւ եղած տարբերութիւնը յերեւան կու գայ ի մասնաւորի յոգնակիի մէջ. որդի (-որդէ §18) սեռ. եզ. որդւոյ սեռ. յոգն. որդւոց (-ĭi̯o-), սակայն տեղի (եղ ձեւէն § 27) սեռ. եզ. տեղւոյ, սեռ. յոգն. տեղեաց։ Յոգնակիի հետ կը համաձայնի եզ. գործիականը. որդւով, բայց տեղեաւ։ ասի յառաջ կու գայ ընդհանուր կանոնէ մը (KZ, XXXVIII, 211). եզ. գործիականը համաձայնած է յոգն. գործիականին, վերջինս ալ՝ միւս յոգնակի հոլովներուն։ Այս պատճառաւ տարակոյս չկայ թէ չենք կրնար ծանրակշռութիւն դնել գործիականի ձեւին այն բառերուն՝ որոնք յոգնակիի մէջ գոյութիւն չունին. հոս կրնայ միայն ապացուցել որ միւս եզակի հոլովներուն համաձայնած ըլլայ։ Ասոր համար չենք կրնար գուշակել թէ արդեօք -անի վերջաւորող հաւաքականները նախապէս -ĭi̯o- արմատնե՞ր էին թէ -ĭi̯ā-։ Բայց որովհետեւ միւս հնդեւր. լեզուաց մէջ -ĭi̯ā- սովորական հաւաքականի ձեւակերտ մըն է, անոր համար պէտք ենք երկու կարելիութեանց մէջ վերջնոյս կողմը որոշել։ Մտադիր կ՚ընեմ դարձեալ որ -անի վերջաւորութեան կուտակումը գոյութիւն ունի նաեւ ոչ-հաւաքական գործածութեան մէջ ալ. կենդանի, հայրենի (-ĭi̯ā- արմատներ)։ Նշանակութեան կողմանէ հաւաքականաց հետ սերտ խնամութիւն ունին -ենի վերջաւորող (ե ձայնաւորով ծագած եա երկբարբառէ) ծառի անունները, գ. օր. ձիթենի՝ ձիթ

§ 79. Նմանապէս պայծառ է միջին հայերէնի -տի յոգնակի վերջաւորութիւնը (այն ատենուան կիլիկեան հայերէնի արտասանութեան համաձայն՝ -di գրելու է)։ Ասի կը համապատասխանէ հին հայերէն -տի եւ -ոտի ձեւերուն (Կարստ, էջ 193), իսկ ասոնք ալ՝ -ուտ եւ -ոտ վերջաւորող ածականներէն առնուած են։ Մանուկ բառին հաւաքականն մանկտի՝ առնուած է մանկ-ուտէն եւ -ïi̯ā- արմատ մըն է։ Ի հարկէ -ուտ եւ -ոտ նոյնանիշ վերջաւորութիւնները յաճախ իրարու տեղ փոխանակուած են. ծանոտի բառին քով, որ հաւաքական է ծանի (ծան- արմատ), կայ ծանօթ, եւ հակադարձաբար՝ ոսկրոտի բառին քով՝ որ հաւաքական է ոսկրի, գոյութիւն ունի ոսկրուտ ածական մը։ Յառաջ կը բերեմ իբր օրինակ -ոտ վերջաւորող ածականներուն՝ ձորոտ (ձոր սեռ. -ոյ), դեղոտ "թունաւոր" (դեղ սեռ. -ոյ), երկչոտ (որ -իչ կամ -ուչ վերջաւորող ածական կամ դերբայ մը կ'ենթադրէ), ղաղոտ = ղաղ, խնամոտ (խնամ, սեռ. -ոյ), կասկածոտ (կասկած, սեռ. -ոյ կամ -ի), հիւանդոտ (հիւանդ), մոխրոտ (մոխիր, սեռ. մոխրոյ), մրճոտ (մուր, հմմտ. մրճոտեմ, մրոտեմ) նախանձոտ (նախանձ սեռ. -ու), որկոտ (= որուկ) ջանոտ (ջան սեռ. -ի. -ոյ, -ու), ջերոտ (ջեր, սեռ. -ոյ, -ի), վատաշոտ = վատաշ, տափոտ (տափէփ+, սեռ. տափփէց), ցանկոտ (ցանկամ), քածաւոտ (քած եւ վար)։ Անգրագոյն կազմութիւններ են՝ հնոտի (հին), սնոտի (սին), ապարոտի (ապար), ցնցոտի (նաեւ ցնցոտան, ցնցոտաւոր եւ ցնցոտ), չքոտի (չքանամ՝ չիք բառէն). Նմանապէս բայեր՝ օր. աղ. խոցոտեմ (խոցեմ), ծեցոտեմ (ծեց), թողոտեմ (թող "հոկորդ, պարանոց")։ Օրինակներ -ուտ վերջաւորող ածականներու՝. աղաղուտ (աղաղ, սեռ. -ոյ), երկեղուտ (երկեղ, սեռ. -ի), ծփուտ (ծուփ, սեռ. ծփոյ, ծփի), խաւարուտ (խաւար բառէն, i-/ā- արմատ. նաեւ խաւարչուտ, որ -ուչ վերջաւորող ածական մը կ'ենթադրէ — գ. օր. վայելուչ —)։

ձեւին քով (առանց անձանցած է՝ հնդեւր. -ti վերջաւորութեամբ՝ ներկայի արմատէն, իսկ կատարեալի արմատէ մը՝ հաստատ. անդրադրոյն կազմութիւն է՝ հաստատէ = հաստատ). հաստատ (հաստ). փարատ։

Նոյն իսկ կրնայ հարցուիլ թէ արդեօք նաեւ պարտ գոյութիւն չունի՞. պարարտ՝ պարար եւ պարարեմի քով (հմմտ. § 81ին վերջը)։ Սարատ բառին մասին տ. § 51։ Հմմտ. տակաւին գողտ՝ գող բառին քով։

Հայկական -տ վերջաւորութիւնը արդիւնք է որեւէ հնդեւր. ձեւի մ՚որ -d- ունէր։ Բրուգման, Grdr. II. 382 եւ հետեւ. յուն. φυγάς ի եւն հետ կը միացընէ հայրանունականներուն, զ. օր. Ἀκτορίδης (նաեւ -ώδης վերջաւորող ածականներն ալ, որոնք -ειδής ի հետ՝ միայն ժողովրդական ստուգաբանութեամբ՝ յարակից ըլլան, այս պատճառաւ Բուգգէ KZ XXXII, 80 հայ. -ոտի հետ կը նոյնացընէ յուն. -ώδης)։ Հայերէնի մէջ արմատակազմութիւնը մասամբ անորոշ է. ինչ ինչ բառեր ի-արմատներ են (աղէտ) կամ ի- եւ ի-։ ա-հոլովման միջեւ կը տատանին (ածիտ). ուրիշները միայն ի-։ ա-արմատներ են (այսինքն՝ հնդեւր. ā-արմատներ) զ. օր. հովիտ. նաեւ ո-արմատներ ալ գոյութիւն ունին (հաստատ)։ Որեւէ արգելք մը չկայ թէ նախնաբար մեծաւ մասամբ ā արմատներ էին. ասիկա բոլորովին կը համաձայնի յունարէնի հետ. իսկ եթէ ատոր հետ նաեւ ո-արմատներ ալ կային, այն ատեն կրնայ լատ. calidus եւն. յիշուիլ։

§ 80. Միջին հայերէնի -ուկ վերջաւորող յոգնակիները մեծաւ մասամբ (բայց ոչ միայն) յերեւան կու գան զոյգ առարկաներու անուանմանց մէջ. ոտուկ, յենուկ, տոտուկ, ոտուկ, ծնկուկ։ Այս պատճառաւ կարծիք եղած է թէ հոս -ուկ (ծագած -ïǰā-է) վերջաւորութիւնը հնագոյն -ու (հնդեւր. -ō) երկակի վերջաւորութեան մը վրայ աւելցած ըլլայ. այն ատեն այս

ձեւը պէտք էր որ վերջաձայնի օրէնքներէն հնագոյն եղած ըլլար։ Բայց ասի շատ կասկածելի է, վասն զի -ոյ- ձեւին երկակի կիրառութեան համար հին հայերէնն ու ոչ իսկ միակ օրինակ մ'ունի։ Ասոր համար անպայման նախամեծար կը համարիմ -ոյ- վերջաւորող բազմաթիւ ածականներուն հետ կապել։ Ասոնց՝ -րոյ- բառին մասին յայտնած իմ տեսութեանս համաձայն (§ 32) ըստ մեծի մասին հիմն ունին -ōpā- վերջաւորութիւն մը՝ որ -ōp-է զարգացած էր. (զարգացումը նոյնպէս է՝ ինչպէս -d- ձեւակերտին մէջ, § 79). Հմմտ. իմ դուշակութիւնս -ոյ-ի իգական վերջաւորութեան մասին՝ § 38։ -ōpā- անշուշտ կը ծածկուի նաեւ մեղու բառին մէջ (հմմտ. յուն. χώνωψ)։ -ipā- ձեւակերտ մը կը թաղնուի արծի- բառին մէջ. ասկէ ածանցած է արծւոյ երկրորդական ձեւն՝ որ անդրադագոյն կազմութիւն մըն է -iǰā- ձեւակերտով. (ՀՀնդկ. ṛjipyá- "թռչերով տարածուող„ աւեստ. ərəzifya- "բազէ„, մակեդ. αἰγίποψ, ἀργιόπους, Hatzidakis IF, XI, 315)։ Ընդհանրապէս -ipā- ձեւակերտ մը պէտք է անշուշտ փնտռել ամէն -ի- վերջաւորող բառերու մէջ. (ոզնի-, հովի-, եւն.)։ Բայց -ու- վերջաւորող անուանց ուրիշ մէկ մասն ոչ թէ -ōp-ի արդիւնքն է, այլ -uúo-ի, որ մեծաւ մասամբ -uuā-ի զարգացած է. այսպէս՝ օր. աղ. հաւրու, սեռ. եզ. հաւրուի, սեռ. յոգն. հաւրուաց, հմմտ. յուն. πάτρως լատ. patruus (հմմտ. մաւրու, ուրջու). այսպէս նաեւ տուն բառէն ածանցած ածականը տնու՝ տանուտէր բառին մէջ, հմմտ. յուն. δμώς, որ ըստ ինքեան "տան վերաբերող„ կը նշանակէ. (Մէյէ MSL, VIII, 236 տնուո- ձեւին մէջ սեռական մը կը տեսնէ, որ ինծի շատ համոզիչ չ'երեւար). Հոս -ն- փոխանակ սպասուած -մ-ի՝ արդիւնքն է տուն, սեռ. տան բառին ազդեցութեան։

Հին հայերէնի -ոյ- վերջաւորող հաւաքական կազմութեան միմիակ օրինակն է՝ ըստ Կարստի,

էջ 191, շնորհ։ Ասիկա նշանակութեան կողմանէ լաւ կը համաձայնի -ոռ վերջացող ածականներուն հետ (ինչպէս՝ արոռ)։ Եթէ յանդգէն առնել ուզուի նաեւ միջին հայերէն փնոռէ բառն իբր առանձնապէս հին օրինակ մը նկատել, այն ատեն փառոռ ածականը մտաբերելու է։ Միջին հայ. մորոխ (եզ. մեր) կը յիշեցընէ գործող անուններու՝ -ոնաձոռ (ոնն, ոձէմ. -ոձոռ ըստ ինքեան ածանցած է ոձ "բերբերը դոյականէ մը), ն-գէրոռ (հմմտ. գէր) եւն. — էրոռէ (էր) կրնար՝ ճիշդ հակադրական նշանակութեան պատճառաւ՝ կազմուած ըլլալ մորոխ ձեւին համեմատ։ -ոռէ եւ որէ վերջաւորութեանց կուտակում մը կայ սա ձեւերուն մէջ՝ միջին հայ. խոռոռոշէ (խոյր), արդի առեւմտ. հայ. խրոռոշէ. արդի հայերէնի մէջ կը գտնուի նաեւ փէրոռոշէ՝ փէր (եւ շընոռոշէ. բնականապէս այս ամէն բառերուն մէջ ո ձայնը պէտք է ձի պէս արտասանել)։ Քոյր եւ տէր ըստ իմիք մերձաւոր աղերս ունին ազգականութիւն ցուցընող բառերուս հետ՝ հայր, մայր, եղբայր, որոնցմէ՝ վերը -որ վերջաւորող ածանցումներ յառաջ բերին։ Դրոխ կրնայ փնոռէ բառին համաձայն յարդարուած ըլլալ։ Դրոխն եւ շեղն բառերուն միջեւ եղած կերպական նմանութիւնը կրնայ շեղոռէ ձեւը յառաջ բերած ըլլալ, իսկ այս ձեւն ալ կրնայ միւս՝ մարմնոյ կրկին մասերը ցուցընող բառերուն կազմութեան նախօրինակն եղած ըլլալ։

§ 81. Միջին եւ արդի հայերէնի -էր վերջաւորող յոգնակիները կը համապատասխանեն հին հայերէնի սա յաջորդ ձեւերուն -եար եւ -էր, սեռ. -էրոյ (կ ա ր ս տ. էջ 177)։ -եար ձեւին է ձայնը ծագում առած կրնայ ըլլալ է-է։ Այսր համար մեծապէս մտադրութեան արժանի կէտ մըն է որ հին հայերէնի -եար ձեւով օրինակները մեծաւմասամբ է-արմատներէ ածանցած են. քանեար, վանեար, վարժեար ածանցած են քան, վան, վարժ

խ-արմատներէն։ Որեւէ բառին եզակի ձեւ մը գոյութիւն չունի. բայց ասի անշուշտ հարցական դերանուան արմատէն ածանցած ըլլալու է. եւ այն *որ-այն աղերսն ունենալու է ոի հետ, ինչ աղերս որ իր ունէր ի՞ հարցական անուան հետ. արդ թէեւ իր խ-արմատ չէ, բայց գոնէ խ-ու-արմատ մըն է։ — Այս ենթադրեալ *որ "ոմն" բառը միեւնոյն չէ որ յարաբերական դերանուան հետ. վասն զի վերջինս նախաւոր մասնիկ մըն է, տ. § 30։ Ուր որ այս բառը կը հոլովի՝ հոլովի ձեւը կրնայ բուն նախադասութեան մէջ բառին կիրառութենէն կախում ունենալ. սակայն եւ այնպէս կրնայ նաեւ՝ յունարէնէ ծանօթ եղանակաւ՝ համաձայնիլ այն բառին հոլովի ձեւին, որուն հետ աղերս ունի. որում խնդրէ է +էն փոոր։ Ասի դերանուան կրկնութեան մ'առիթ տուած է. փռնքն մերջ ի ծշմարփոոբխոն ղոոր որ+ . . . ող էն անհոոան+։ Ասկից կը մեկնուի արդի հայերէնի որն որ, որ մարդն որ (Այտընեան Բ. 51. երկրորդ որն անփոփոխ կը մնայ, չի հոլովիր)։ Ամենեւին չեմ ժխտեր թէ այստեղ եւ դերանուանս կրկնութեան ժամանակ այնպիսի դիպաց մէջ՝ ինչպէս ծողովէցէն որ շոփ խո որ ոոկոո, արդէն շատ մերձաւոր կ'երեւար "ոմն" նշանակութիւնը։ Կրնայ յիշատակուիլ նաեւ այն՝ թէ հին իրերէն inti "այն" բառէն (յարաբերական նախադասութեան մ'առջեւ) զարգացած է արդի իրերէն գոյական մը՝ té, tí "անձ մը", հմմտ. Հեղին. Aspirationen i Irsk էջ 132, ինչպէս որ նաեւ իր. ní "իր մը" միեւնոյն է ní չէզոքին հետ. nech "ոք" դերանուան որ յարաբերական նախադասութեան մ'առջեւ կը գտնուի յաճախ։ Բայց էր բառին պատճառաւ (որուն մասին այլուր տ. Բուգգէ KZ XXXII, 8) չի հաստատուիր այն տեսութիւնը՝ թէ *որ "անձ մը" այսպիսի աւացուածներէ հանուած ըլլայ [հմմտ. հիմայ Հեղին. Les pronoms démonstratifs de l'ancien arménien էջ 22]։

Ի հարկէ -եակ վերջաւորութիւնը կը գտնուի նաեւ շատ մը նուազականներու մէջ՝ որոնք կը վերջաւորին -իկ, սեռ. -կան (ն-արմատներ)։ Սակայն թերեւս պատահական չէ որ ասոնք՝ ի- կամ ի-: ա-արմատներու նուազականներ են. խոզնեակ, հաւաքական խոզիկի, սեռ. խոզկան, խոզ սեռ. խոզի. թոռնեակ՝ թոռնիկ (թոռն, ի-արմատ). նաւկնեակ նաւիկ (նաւ, ի-: ա-արմատ կամ ո-արմատ. ասոր արմատայ-կազմութեան համեմատ՝ ապահովապէս պարսկերէն է), քաղաքնեակ՝ քաղաքիկ (քաղաք, ի-: ա-արմատ)։

Պարզ վերջաւորութիւնն -ար՝ յերեւան կ'ելլէ ոչխար (վերը՝ § 61) բառին մէջ, որ նախնաբար անշուշտ հաւաքական էր։ Բայց հաւաքական վերջաւորութիւնք բնականապէս տարբեր չէ միւս -ար վերջաւորութենէն, որ ապահովապէս կրնայ ընդունուիլ սա բառերուն համար՝ արդ-ար՝ հնդկ. ṛtá-, մթար՝ մութ բառէն, ծոլար՝ ծոլէծէ, դալար յուն. θάλλω, եղջար = եղջիւր, անշուշտ նաեւ բառիս մէջ՝ դոտանար = դոտան, մեծմար՝ § 38, թերեւս գոմար՝ գոմ բառին քով (ձայնաւորաց մասին համմտ. § 47ին վերջը. փոխառութեան մը հնարաւորութեան մասին համմտ. Հիւբշման I, 130.) նաեւ կրնայ փնտռուիլ ինչ ինչ բառերու մէջ՝ որոնք տակաւին չեն մեկնուած, զ. օր. խաւար։ Կան դարձեալ -ար վերջաւորութենէն բազմաթիւ անդրադոյն կազմութիւններ։ Թէ մեծարեմ (ուսկից նախամեծար) ինչ չափով աղերս ունի -ար վերջաւորութեան հետ, կրնայ տարակուսական ըլլալ. մեծ բառէն ածանցած է (յուն. μεγαίρω)։ Ընդհակառակն պարզ անդրադոյն կազմութիւններ են՝ ճառափարիմ (ճառափ, իսկ -իմ յուն. -ιμος յաճախադէպ վերջաւորութեան մասին տես Բուգգէ KZ, XXXII, 79), փոխարէն (փոխ § 71), նոյնպէս շատ մը բառեր, որոնք -ար վերջաւորութեան հաւաքական նշանակութիւն մը կ'ենթադրեն. յոնարէն (Հիւբշմանի IF, Anz. VIII, 47 այն

ենթադրութիւնը՝ թէ -արէն պարսկերէն ըլլայ — Նպրսկ. ā-yīn “սովորութիւն„ — մերժելու է, նոյն իսկ փոխառէն բառին պատճառաւ.) մարգարէ (-է ծագած է անշուշտ -eayē եւ այս ալ *-i̯āti- է), այսինքն բուն “մին ի մոգուց„ հմմտ. մոգ (է տառին առջեւ անցած ոչ-նախաւոր ր գիրը կը մեկնուի ժողովրդական-ստուգաբանական նմանողութեամբ բառերու՝ ճշ-մար-իտ, ճշ-գր-իտ § 54, § 79): Երկու հաւաքական վերջաւորութիւնք կուտակուած են բառիս մէջ՝ կաչ-ար-այ, հմմտ. կաչ § 78ին վերջը): -ան վերջաւորութեամբը՝ որուն նոյնութիւնը յուն. -ώνι հետ՝ վերը § 78 ցուցուած է, տեղւոյ անուանց մէջ, աւելցուելով -ար- ձեւակերպին վրայ՝ կը կազմուին -արան վերջաւորող տեղւոյ անունները (հմմտ. Հիւբշման, IF, VIII, 47). փորձ-ար-ան, առատ+եղ-արան եւն եւն:

Վերջաւորութիւնն -ար պէտք է բաժնել -ā- (-ā-արմատներու վերջաւորութիւն) + -ro-: Արդ -o- արմատներուն վերջաւորութեան վրայ՝ աւելնալով -ro- ձեւակերպին՝ յառաջ եկած են -որ եւ -էր վերջաւորութիւնները, որոնք նմանապէս հաւաքական նշանակութիւն ունին: Այսպէս Միջին Հայերէնի մէջ՝ տեղօրայ-ք, տեղէրայ-ք, յոգն. բառիս՝ տեղ, սեռ. տեղւոյ: Նուազ պայծառ է հաւաքական նշանակութիւնը հին հայ. բառերուս՝ [illegible], ոխերիմ՝ ոխ բառէն (ո- կամ ի-արմատ) եւ մտերիմ՝ միտ բառէն կազմուած: Այս -էր վերջաւորութիւնն առանց ընդլայնման յերեւան կու գայ հին հայ. հաւաքականիս մէջ՝ հայեր՝ հաւաքական հայ բառին (ո-արմատ): Անկէ ածանցած է հայերէն. հմմտ. տաղմատերէն, եբրայեցերէն (որ եբրայեցի ձեւին հետ միասին յառաջ կու գայ -sko-արմատէ մը, որ հայ. յոգն. սեռ. -ց վերջաւորութեան մէջ մնացած է, հմմտ. KZ, XXXVIII, 237): Բաւական պատճառ չկայ ընդունելու թէ -երէն ծագում առած ըլլայ -եարէնէ:

Դարձեալ -եր վերջաւորութիւնը կը գտնուի բառից մէջ՝ ողանդեր, որ կապ ունի բառերուս հետ՝ ողանդեմ, ողանդէնք, ողանդէ-ք եւ ողանդ (ո- կամ է-արմատ) (-դ անշուշտ ածանցող մըն է. Համմ. յուն. πλανάω?)։ Բայց որովհետեւ -եար պէտք էր թէ սեռականի (-երոյ) եւ թէ ամէն ածանցմանց մէջ -երի հետ նոյնանալ, ասոր համար երկու վերջաւորութիւնքն արդէն հին հայերէնի մէջ իրարու խառնուած են։ Փոխանակ -եարի կը գտնուի -եր բառերուս մէջ՝ ծաներ (ծանեարի քով) եւ հարկեր՝ հարկ բառէն (է-:ա-արմատ), նոյնպէս խառորում մըն է՝ վանորայ՝ վաներայ-ք ձեւի քով։ Ձեաներ բառին մէջ նախաւոր -եր այնպէս հաւանական է՝ ինչպէս -եար (ձեան ն-արմատ մըն է)։ Միջին հայերէնի մէջ եա եղած է ե (Կարստ, էջ 69). ասով երկու վերջաւորութիւններն ալ կատարելապէս իրարու խառնակուած են։

Հայերէնի մէջ յաճախադէպ է չընդարձակուած -որ վերջաւորութիւն մը. բայց հաւաքական նշանակութիւն չունի. ծեռոր՝ ծեռ-անեմ, ծոլոր՝ ծոյլ բառի քով (§ 30) խոտոր՝ խոտեմ է, հատոր՝ հատանեմ է, յորդոր, ուսկից յորդորեմ անշուշտ յորդ բառէն, (Համմ. Բուգգէ, KZ, XXXII, 22), պղտոր (§ 50). ցնոր որ թերեւս առընչութիւն ունի գոթ. skeinan-ի հետ, փոկոր § 28)։ Գլորեմ անդրադարձ կազմութիւն մըն է գլեմի քով։

Վերջապէս կան նաեւ -իր եւ -ուր վերջաւորութիւններ, որոնք բայանուան նշանակութիւն ունին, այսպէս՝ խնդիր՝ խնդրեմ, խնդ բառին քով՝ սեռ. խնդի (վերը § 47. Համմ. նաեւ KZ, XXXVIII, 388). Ըմբիր՝ § 19, ուսկից ըմբրեմ, խոտիր (անշուշտ բառերուս քով՝ խոտոր, խոտեմ, տես՝ վերը. հնդեւր. փոխանակութիւն ō:o), կտուր (կոտոր, բառին քով § 28. հնդեւր. փոխանակութիւն ō:o), փետուր (փետեմ է § 9,

§ 51), Թափուր՝ Թափեմ, անշուշտ նաեւ անուր, որմէ հանուր, ընդհանուր, դուցէ թէ աղերս ունի լատ. բառերուս հետ՝ ānus "ոտքի օղակ՝ բոժոժ, սրբան", ānulus "օղակ" (Բուգգէ KZ, XXXII, 3)։ Հնդեւր. -ti- վերջաւորութեամբ ընդարձա-կուածներ են (ուր բայ մ'իբր միջին անդամ ենթա-դրելու է) յաջորդ կազմութիւններս՝ խորհուրդ, ժողովուրդ (հմմտ. KZ, XXXVIII, 219, ուր սակայն ես այս տիպին ծագման ուղղակի սկիզբն ըմբռնած չէի տակաւին). ուրիշ օրինակ մըն է կոցուրդ սեռ. կոցրդի կամ կոցրդոյ։ Ի հարկէ հոս երկրորդ տեսակ հոլովումն իբր o-արմատ՝ զարմանալի է. բայց նոյն-պէս կը գտնուի նաեւ ուրիշ բառերու մէջ ալ, ուր -ti վերջաւորութիւնը դնելու ենք. (հմմտ. Եղունգ § 50)։ Կոցուրդ բառին քով կայ կոցորդ սեռ. յոգն. կոցորդից (ընդլայնում -որ վերջաւորու-թեան)։ Այս՝ ինչպէս նաեւ կոցուն, կոցոց եւն՝ կազմուած են կոծ բառէն. իսկ այս բառն ալ մի-եւնոյն է հնդկ. a-gām, յուն. ἔβην բառերուն հետ. արդէն Delbrück գուշակած էր թէ *$g^u\bar{a}$-արմատը կը նշանակէր "ոտքը դնել", տ. Vergleichende Syntax, II, 77. ուստի βέβαιος նշա-նակութեան կողմանէ կը համաձայնի կոցուն բառին հետ, եւ արդէն Մէյէ նոյնը կոծի հետ կշռած է (MSL, VIII, 279)։ Ուստի *$g^u\bar{a}$-արմատը հայերէնի մէջ $g^u$em- (եկն) արմատով մէկ յարացուցի հետ չէ միացած. բայց ասկէ տակաւին չի հետեւիր թէ անոնց մէջ ստուգաբանական աղերս մը գոյութիւն չունի։ Դարձեալ -ուր կամ -էր վերջաւորող ածանցման անդրադոյն կազմութիւն մըն է [կոփրո-փուն եւ] Պղրուէմ անուանականին արմատականը, եւ այն՝ կամ անդրադոյն կազմութիւն մըն է միջնորդու-թեամբ -ուրի եւ կամ միջնորդութեամբ -րի (ինչպէս դուրուր՝ դուրուէ, ծունուր՝ ծունուէ, հմմտ. ծունուրփակ)։ Յամենայն դէպս արմատը բովանդակուած է Պ-ի մէջ. եթէ սակայն *mōq-է յառաջ կու գայ,

այն առեն հնարաւոր կ՚ըլլայ կապ մը դնել հոլ. բառերուս հետ՝ mokrъ "խոնաւ", moknąti "ամկանալ, թրջել", močiti "թրջել, խոնաւցընել", սակայն միայն այն ենթադրութեամբ՝ որ սլաւական o ձայնը հնդեւր. o մըն է եւ ոչ հնդեւր. a մը:

Հնդեւր. ամէն լեզուներէն քաջածանօթ է -ro- ձեւակերտը. սակայն հաւաքականներու կամ վերացեալ գոյականներու կազմութեան համար միայն հայերէնի մէջ գործածուած է. [Հմմտ. սակայն ռուս. дѣтвора "մանուկներ", пятеро "հինգ միասին", дубрава "կաղնեստան" եւն. լատ. nātūra, ūsūra, cultūra, իռ. buar "կովեր", iascar "ձկներ"]:

§ 82. 'Պատմական քերականութիւն Կիլիկեան-Հայերէնի" դարագլուխ կազմող գործին բազմարդիւն հեղինակը՝ Դոկտ. Յովսէփ Կարստ, ճառախօսութեան մը մէջ՝ զոր արտասանած է Համբուրգի Ժ.Գ. Արեւելագիտական համաժողովին առեն (հմմտ. IF, Anz. XIII, 292 եւ հետեւ. Հանդէս 1903, էջ 10—14), այն տեսութիւնը յայտնած է թէ միջին-հայերէնի յոգնակիներուն վերջաւորութիւնները՝ -եր, -նի, -ուի եւ -տի (արտասանել -di) փոխ առնուած ըլլան կովկասեան լեզուներէն, ուր (այլեւայլ բարբառներու մէջ) կը գտնուին բոլորովին նոյն յոգնակի վերջաւորութիւնները: Բայց որովհետեւ՝ ինչպէս իրաւամբ կը շեշտէ Կարստ, պատմական ժամանակին մէջ տեղի ունեցած փոխառութեան մը մասին չի կրնար խօսք ըլլալ, ուստի ըստ իր կարծեաց՝ յոգնակի այս խնդրական երեւոյթներուն սկիզբը նախապատմական ժամանակէն ըլլալու է՝ արիական-հայ գաղթականութենէն յառաջ: Այս յոգնակերտները թէպէտ եւ հայերէնի մէջ մտան, բայց հին հայերէն բարձր ու մատենագրական լեզուին մէջ չկրցան լիուլի քաղաքացիական իրաւունք ստանալ: Հազիւ միջին դարուն վերջերը՝ նոր կիլիկեան-հայերէն ռամկօրէն

լեզուով գտան նաեւ ընդհանուր մուտք մատենագրական լեզուին մէջ։

Սակայն այս տեսութեան հակառակ կ'ելլեն անյաղթելի դժուարութիւններ. 1. Հայերէնի հաւաքական-յոգնակի վերջաւորութիւններն այնպիսի անձուկ աղերս մ'ունին բովանդակ հայկական ու հնդեւրոպական ձեւակերտի դրութեան հետ, որ փոխառութեան մը մասին բացարձակապէս խօսք չի կրնար ըլլալ։ 2. Եթէ հին հայերէնի մատենագրական լեզուն իրապէս աւելի հնագոյն դրոշմ մ'ունեցած ալ ըլլայ՝ քան նոյն ժամանակ խօսուած լեզուն, սակայն ամենաշատը հարիւր տարուան մը տարբերութեան վրայ կրնայ խնդիր ըլլալ, բայց ոչ ամբողջ հազարամեայ միջոցի մը վրայ (որ Կարստի տեսութեան համար հարկաւոր էր)։ 3. Եթէ յոգնակի վերջաւորութիւններն այն ամենահին ժամանակուան մէջ փոխ առնուած ըլլային՝ այն ատեն անոնք անհրաժեշտ պէտք էին կամաց կամաց յոգնական հոլովում ընդունիլ. հազիւ յընթացս պատմական հին հայերէնի շրջանին պատրաստուած են միջին հայերէնի յոգնակւոյ դրութեան համաձայնական պայմանները. իսկ լրիւ զարգացած են միայն միջին հայերէնի շրջանին մէջ։ 4. Կարելի չէ նոյն խնդրոյ ներքեւ եղող յոգնակի կազմութիւններն նկատել իբր նախաբար գաւառաբարբառական երեւոյթ մը. վասն զի այս պարագային քանի մը հայկական բարբառները՝ զարգացման կողմանէ հազար տարիէն ալ աւելի յառաջացած ըլլալու էին միւսներէն. բայց հիմ չունինք այսպիսի խորունկ գաւառաբարբառական տարբերութիւններ ընդունիլ հին հայերէնի համար. մանաւանդ թէ միջին եւ արդի հայերէններին փորձական քննութիւնն ուրիշ ձայնական հիմ մը ցոյց չի տար՝ բայց եթէ մեզի ծանօթ հին հայերէնը. (Հիւբշման IF, Anz. XII, 51). այն ատեն աւելի անկարելի է այսպիսի ահագին տարբերութիւններ

ընդունիլ հոլովման մէջ։ 5. Փոխառութիւնն այն պատճառաւ ալ անկարելի է, որ կաւկասեան լեզուներն ընդհանրապէս հայերէնի վրայ ազդեցութիւն ունեցած չեն։ Հիւբշման, Armenische Grammatik, I, 397 կ'ուզէ կաւկասեան լեզուէ փոխառութիւն համարիլ միայն մէկ հին հայերէն բառ, այսինքն՝ քոծ, եւ սակայն շատ ու շատ բանի հաւանած է արդէն. վասն զի քոծ՝ իբր հարազատ հնդեւրոպական բառ ձայն առ ձայն կը համաձայնի մեզ. swach "տկար" բառին հետ. (Նշանակութեան մասին հմմտ. հին սկանդ. blauðr 'θῆλυς' = հին անգլ. bleáþ "տկար", իսկ լատ. mulier առ mollis, Sommer, IF, XI, 54)։ Նոյնահնչիւն կաւկասեան բառերը հայերէնէն առած ըլլալու են, ինչպէս ուրիշ տասնեակ կամ մանաւանդ հարիւրաւոր կաւկասեան բառերը։ Եթէ ի նկատի առնուի որ Հայք թէպէտ եւ բազմաթիւ բառեր փոխ առած են Պարսիցմէ՝ որոնք քաղաքակրթական ու քաղաքական տեսակէտով աւելի բարձր էին, բայց հոլովական տարր մ'իսկ ընդունած չեն անոնցմէ (եւ ոչ իսկ բաղդատական վերջաւորութիւնը. վասն զի թէպէտ պարսկերէն է, բայց հայ գետնի վրայ իբրեւ բաղդատական վերջաւորութիւն սկսած է գործածուիլ) եւ չափազանց սակաւաթիւ ածանցման տարրներ. (գրեթէ ամէն վերջաւորութիւնները՝ որոնք իբր պարսկերէն նշանակուած են, բնիկ հայերէն են), որով բոլորովին անըմբռնելի է, որ օտար հոլովման դրութիւն մ'ընդունած ըլլան Հայք կաւկասեան ժողովուրդներէն, որոնք Հայոցմէ քաղաքակրթականօրէն ու քաղաքականօրէն վար էին, եւ որոնցմէ հազիւ թէ միակ բառ փոխ առած ըլլան, մինչդեռ ընդհակառակն Հայք իրենց սեպհական լեզուագանձը մեծաքանակ տուած են կաւկասեան ժողովրդոց։

Կարստ իւր տեսութեան համար յառաջ բերած առանձինն փաստերը պէտք են այս պարա-

դայից մէջ անազդեցիկ մնալ. սակայն կարելի է զատոնք առանց ցաւի բոլորովին թողուլ, վասն զի ընդհանրապէս չունին ապացուցի զօրութիւն: Անոնք են՝ 1. Կարծուած զուգընթացութիւն մ'այլեւայլ յոգնակի վերջաւորութեանց աշխարհագրական բաժանման մը թէ կովկասեան եւ թէ հայ հողի վրայ. -r- ձեւերը արեւելեան բաժնին մէջ սահմանափակուած ըլլան, եւ -ni- յոգնակին՝ արեւմտեան բաժնին (բայց -եր եւ -ներ — ծագած -նք + -երէ — թէ արեւելեան եւ թէ արեւմտեան հայերէնի մէջ յերեւան կու գան միեւնոյն կանոններով. -եր միավանկ՝ իսկ -ներ բազմավանկ բառերէն վերջը): 2. Ձայնաւորական ներդաշնակութեան տիրելը, ինչպէս կը կարծէ, երկու կողման ալ յոգնական հոլովման մէջ: Ձայնաւորական ներդաշնակութիւնն երկու կողմն ալ աւելի տեղ տեղ ցանուցիր տեսնուած երեւոյթ մըն է (— Կարստ՝ հայերէնի համար կոչում կ'ընէ Ագուլիսի գաւառաբարբառը —), եւ խօսք չի կրնար ըլլալ այս ձայնական սովորութեան փոխառութեան մը մասին՝ որ մերձաւորապէս 3000 տարի յառաջ տեղի ունեցած ըլլայ. ընդհանրապէս անընդունելի է այն կարծիքը թէ Հայոց այլուստ անծանօթ ներդաշնակութեան օտար սկզբունք մը՝ օտար օրինակի մը համեմատ՝ կենդանի մնացած ըլլայ փոխառեալ՝ բայց անդրադոյն աճած վերջաւորութեանց մէջ: 3. Յոգնակի վերջաւորութեան ընտրութեան համար՝ վանկաթուի նշանակութիւնը թէ՛ հայերէնի եւ թէ՛ քանի մը կովկասեան լեզուաց մէջ (օրինակի աղագաւ Ուտեաց լեզուին մէջ վանկաթիւն որոշիչ է -ur եւ -ux յոգնակի վերջաւորութեանց միջեւ ընտրութիւն ընելու համար): — Անհիմն է այն ենթադրութիւնը թէ արդէն ուղղակի դրացի ըլլալն անկարելի կ'ընէ ընդունիլ որ հոս պարզ պատահական համաձայնութիւն մը միայն կրնայ գտնուիլ: Դանիական -er եւ գերմաներէն -er

յոգնակի վերջաւորութեանց մէջ եղած համաձայնութիւնը բոլորովին պատահական է. Թէպէտ եւ երկու լեզուներն ալ ոչ միայն անմիջնորդական դրացիներ են, այլ նոյն իսկ մերձաւոր ազգականներ (իսկ աշխարհագրականօրէն ոչ շատ հեռու բրետոներէնի -er յոգնակի վերջաւորութիւնն ալ թէ դանիական եւ թէ գերմանական յոգնակի վերջաւորութենէն տարբեր է)։ Կաւկասեան քանի մը լեզուաց մէջ իգականը նախադաս ďով կը նշանակուի. հիւրկան. ignava "արական", dignava "իրուհի" Schiefner § 27. համմ. իւր Kasikumükische Studien § 8)։ Ճիշդ նման կը հնչէ հայ. ո—որդ բառին դ—որդ ձանօթ իգականը։ Արդ այս անգը միայն պատահական համաձայնութեան մը մասին խօսք կրնայ ըլլալ։ Բայց պէտք չկայ որ յոգնակի կազմութեանց մէջ տեսնուած համաձայնութիւնը բոլորովին ալ պատահական ըլլայ։ Կաւկասեան -i վերջաւորող յոգնակի կազմութիւնները (-i, -ni, -mi, -ri, -vi, -ti հիւրկաններէնի մէջ, -ri, -di, -ṭi կասիկումիւկերէնի մէջ; -bi, -abi, -zabi աւարերէնի մէջ, -i, -ši, -ni, -ḥi թուշերէնի մէջ) կրնան արդիւնքն ըլլալ այն բանին, որ կաւկասի ժողովուրդներ հնագոյն ժամանակի մը մէջ՝ հնդեւրոպական -ïjā հաւաքական վերջաւորութիւնը փոխ առած են հայերէնէ։ Ընդհակառակն -r- յոգնակիին մէջ տեսնուած համաձայնութիւնը պէտք է որ պատահական ըլլայ, եթէ ետրուսկերէնը կաւկասեան բարբառ մ'ըլլայ, ինչպէս Vilh. Thomsen կը կարծէ (համմ. ետրուսկ. յոգն. clenar, clan "որդի" բառինկեա)։ Ձեմ գիտեր թէ ո՛րդեօք այս պարագային մէջ կաւկասեան -r- յոգնակին կրնա՞յ թուրք-մոնղոլ-մանջուերէն -r- յոգնակիին հետ համեմատուիլ։

## ՎԵՐՋՈՒՐԱՆ ՀԱՅԵՐԷՆ ԹՈՒՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ

«Հայերէնէ փոխառեալ բառեր Թրքերէնի մէջ» հատածին դէմ կը հակաճառէ Dr. Bernhard Munkácsi ի թերթին Keleti Szemle V 352—357 նուազ յօրինուածական եւ իրական շատ քիչ տեղեկութիւն տուող յօդուածի մը մէջ։ Այս յօդուածին պատասխանեց Պրոֆ. Պետերսըն ի թերթին KZ XL 181—206։ Նախ՝ կը քննէ Հայոց ու Թրքաց յարաբերութիւնները՝ ժամանակագրական, ազգագրական եւ աշխարհագրական հանգամանքներով, եւ ապա շարք մը դիտողութիւններ կ'ընէ իւրաքանչիւր բառի վրայ։ Թրք. däri բառին նկատմամբ (§ 69) հայկ. տե-սռ. տե–էց «շղարշ» բառը յառաջ կը բերէ։ § 71ին մէջ չնէ+ եւ սլաւ. kъnjiga բառերուն միջեւ եղած յարաբերութեանց մասին ընդարձակ տեղեկութիւն մը կու տայ եւ հաւանական կը կարծէ թէ չնէ+ բառին ն ձայնը երբեմն փափկահնչուն եղած է։ Մունկաչիի ամէն առարկութեանց պատասխանած միջոցին՝ կը քննէ Թրքերէնի ձայնական դրութեան եւ բառակազմութեան այլեւայլ կէտերը. Թրք. tavar բառին մէջ (§ 68) յերեւան կու գայ ձայնաւորի նմանաձայնութիւն մը՝ որ կը հաստատուի նաեւ օսմ. aγaǯ «ծառ» եւ օրխ. ygač բառերով. Թէպէտ Մունկաչի՝ Թրքերէն s վերջաւորող գոյականներուն համար՝ իբրաւամբ մատնանիշ կ'ընէ օսմ. pus «մէգ, մշուշ» չագաթ. äs «միտք», սակայն առինք § 62ին համար ամենեւին նշանակութիւն չունի (օսմ. tas «կունդ» բառին հետ հմմտ.

թրքերէնէ փոխառեալ մաճառերէն tar "կուժդ-բառը, որ z ցոյց կու տայ). Թրք. äš-äk (§ 60) բառին բազմաթիւ զուգընթացութիւններ ցոյց կը տրուին յետադաս ձեւակերտի կազմութեան համար. չաղատ. arna "ական, կորի" եւ օսմ. aryγ զուգընթաց է բառիս հետ՝ օսմ. turna "կռունկ" եւ մոնգ. (փոխառեալ բառ) toγoriγun. երկու բառիս մէջ ալ -rn- յառաջ կու գայ -rgn-է, ուստի եւ arna կ'ենթադրէ *arygyn ձեւ մը՝ ծագում առած *aruginէ, որ aryγի հետ աղերս ունի այնպէս՝ ինչպէս օսմ. kojun մոնգ. xonin ունի օրխ. koį "ոչխար" բառին հետ: Տարակոյս չկայ թէ թրք. բառերուս մէջ՝ kaz "սագ", kyz "աղջիկ, կոյս" ուրիշ նախաւոր սկզբնաձայն մը դոյութիւն ունեցած է՝ քան թէ kan "արիւն", kar "ձիւն" բառերուն մէջ. բայց ըստ մոնգոլերէնի՝ kan եւ kar բառերուն մէջ k- գոյութիւն ունի. ուստի kaz եւ kyz բառերուն համար ընդունելու է g- մը: Հայ. կոյս բառը նախապէս իբր փաղաքշական անուն՝ "փոքրիկ հովուուհի" կը մեկնուի. հմմտ. յուն. փաղաքշական անունս՝ Βουχίων եւ βουχόλος "հովիւ", իր. buachaill բրետ. bugel "մանչ". այն ատեն կոյս կարելի է *g$^{u}$ouq$^{u}$i-s նախաձեւի մը վերածել. վերջաւորութեան մասին հմմտ. Ἶφις, փաղաքշական անուն Ἰφιγένεια Ἰφιάνασσα եւն քով: Վերջապէս Պեդերսըն կ'ապացուցանէ որ Մունկաչիի՝ յականէ յանուանէ չաղատ. kočkar բառին մասին ըրած քննութիւնը բոլորովին սխալ է: Իբրեւ հայերէնէ փոխառեալ բառ՝ ի վերջոյ յառաջ կը բերէ թրք. täl բառը՝ որ հայ. Թել բառն է (ծագած *tenslo-է, հմմտ. հնդկ. tantu-š "թել" իր. tét, կըմր. tant "լար, թել". Թերեւս Թել կերպապէս լատ. tēlum բառին հետ միեւնոյն ըլլայ):

# ԱՅԲՈՒԲԵՆԱԿԱՆ ՑԱՆԿ

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԵԱՆՍ ՄԷՋ ՍՏՈՒԳԱԲԱՆՈՒԱԾ ԵՒ ՑԻՇՈՒԱԾ ԲԱՌԵՐՈՒ, ՄԱՍՆԻԿՆԵՐՈՒ ԵՒ ԳՐԵՐՈՒ

---

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

—

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր, Իրաւունք Հայոց: 1890: Էջ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գ., Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց. (պատկերազրդ.:) 1890: Էջ 50: Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յ., Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: Էջ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Դ. Տան, Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Էջ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: Էջ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Ա. Տրվլէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Էջ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Ն., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ռ. Անոփեան: 1892: Երես՝ 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Ժ+51: Ֆր. 1.—

Թ. Գ ա լ է մ ք ե ա ր ե ա ն Հ. Գ. Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: Էջ 232: Ֆր. 2.50

Ժ. Կ ո ն ի բ ի ր Փ ր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Է+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գ ո վ ր ի կ ե ա ն Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զըն-կատիպ.) 1893: Էջ Ժ+533: Ֆր. 4.50

ԺԲ. Խ ա չ ա թ ե ա ն Գ ր., Զենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ 78: Ֆր. 1.—

ԺԳ. Տ է ր-Մ ո վ ս ի ս ե ա ն Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տխտկ՝. 55 պտկ.:) 1894: Էջ 93: Ֆր. 2.—

ԺԴ. Գ ա ր ի է ր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԺԱ+43: Ֆր. 1.—

ԺԵ. Տ ա շ ե ա ն Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: Էջ 9+145: Ֆր. 2.—

ԺԶ. Տ ա շ ե ա ն Հ. Յ. Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտր. Ա.: Ա—Զ: Ա. Նեմեսիոս: Բ. Պրոկղ Դիադոխոս: Գ. Խոսրովիկ: Դ. Գիրք Հերձուածոց կամ Եպիփան: Ե. Պրոկղ: Զ. Սեկունդոս իմաստասէր: 1895: Էջ ԺԲ+294: Ֆր. 3.60

ԺԷ. Տ ա շ ե ա ն Հ. Յ. Վ., Հայկական աշխատսիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: Էջ 202: Ֆր. 2.50

ԺԸ. Տ ի գ ր ե ա ն Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Ֆր. 2.—

ԺԹ. Գ ո վ ր ի կ ե ա ն Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքա-

ղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352:
Ֆր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., "Վարդապետութիւն առաքելոց" անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադէի: 1896: Էջ Թ+442: Ֆր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Մասն Առաջին՝ Պատմական տեղեկութիւնք Սասնոյ վրայ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Ֆր. 1.—

ԻԲ Կարրիէր Ա., Աքգարու գրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897. Էջ ԺԶ+107: Ֆր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք Նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, Էջ Ը+272: Ֆր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք Նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը—273—522: Ֆր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք թարգմանչին՝ 1. Ցանկ 1895—1897 Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Ֆր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօղուած) գրելու արուեստը: Նորուս հեղինակներուն ուղղեալ քանի մը կարեւոր ակնարկութիւններ: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+123: Ֆր. 1.25

ԻԷ. Խաչաթեան Գր., Մ. Խորենացու Նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Էջ 56: Ֆր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչու-

թեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փ. Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Մ. Խորենացու ղքիւարների ուսումնասիրութիւն: 1898: Էջ 175: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Էջ Է+26 Փր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ ԺԲ+369 Փր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ միճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161 Փր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հտր. 1780—1825: 1899: Էջ Է+558 Փր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւղոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Էջ Է+124 Փր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: (1 աշխարհագրկն տախտակով:) 1899: Էջ 48: Փր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: Էջ ԺԱ+198: Փր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ.. Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է—Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ Նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Էջ ԺԲ+388: Փր. 4.50

ԼԸ. Գր. Տէր-Պօղոսեան, Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Էջ Ը+110: Փր. 1.50

ԼԹ. Վեբեր Դր. Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բառնաբաս Վ. Պիլէզիկճեան: 1901: Էջ Ե+77: Փր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ Նոցին քաղուածք որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Ֆր. 4.50

ԽԱ. Խալաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72: Փր. 1.—

ԽԲ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հտր Ա.: 1903: Էջ Ը+204: Ֆր. 3.—

ԽԳ. Մարկվարտ Դր. Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: Էջ 44: Ֆր. .75

ԽԴ. Գէլցէր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան (1 աշխրհգրկն. տխտկով): Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1903: Էջ Է+83: Ֆր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք, Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: (1 աշխրհգրկն տխտկով) 1904, Էջ Ը+119: Ֆր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ քննասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Փր. 3.50

ԽԷ. Պեդերսըն Հ., Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1904: Էջ Ը+87: Փր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Աճառեան Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ Նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+110: Ֆր. 1.5

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յՕղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Գ. Հտր 1825–1904: Էջ Ժ+663: Փր. 7.—

Ծ. Շտրէք Մ., Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Է+222: Փր. 3.—